ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1958 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ—*Հայաստանի կոմունիստական պարտիայի XIX համագումարը* . . . . . . . . 3
*Գյուղատնտեսության հզոր վերելքի համար* . . . . 13
Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ—*Սովետական լայն դեմոկրատիայի նշանաբանով* . 19
Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ—*Սովետական Զինված Ուժերի 40 տարին* . . 27
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ—*Արհմիությունների աշխատանքը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին* . . . . . . 37
Ն. ՍԵՄՅՈՆՈՎ—*Նոր էտապ քիմիական գիտության և ինդուստրիայի զարգացման գործում* . . . . . . 45
Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ—*Նոր տիպի համագործակցություն* . . . 55
Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ—*Այդպես էլ սպասելի էր* . . . . 63
Վ. ՂԱԶԱՐՅԱՆ, Հ. ԳԱԼՍՏՅԱՆ—*Ռեսպուբլիկայի կոմունալ և բնակարանային տնտեսության վերելքը* . . . . . 70
Վ. ՍՄԲԱՏՅԱՆ—*Պարտիայի շրջանային կոմիտեի պլենումը* . . 80
Հ. ՊՈՂՈՍՅԱՆ — *Կիրառել կոմունիստների քննադատական դիտողությունները* . . . . . . . 88

ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ—*Հեգելի փիլիսոփայության մասին* . . . 96

ՌԵՎՈԼՅՈՒՑԻՈՆ ԱՆՑՅԱԼԻՑ

Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ—*Հակոբ Կամարի* . . . . . 107

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԻՆՔՆԱԿՐԹՈՒԹՅԱՄԲ ԶԲԱՂՎՈՂՆԵՐԻՆ

Մ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ—*Ինչպես աշխատել գրքի վրա* . . . 115

ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԸ ԳՐՔԻ ՄԱՍԻՆ

Տ. ՀԱԿՈԲՅԱՆ—*Հետաքրքրական ուսումնասիրություն*; Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ—*Խրախուսելի երևույթ* . . . . 120
*Համառոտ անոտացիա* . . . . . . . 125
*Պատասխան ընթերցողների հարցերին* . . . . . 127

СОДЕРЖАНИЕ


Передовая—XIX съезд Коммунистической партии Армении . . . . . . . 3
За мощный подъем сельского хозяйства . . . 13
Ш. Арушанян—Под знаком советской широкой демократии . . . . . . . . 19
А. Арутюнян—40 лет Советских Вооруженных Сил . 27
А. Айвазян—Повысить работу профсоюзов на уровень новых задач . . . . . . . 37
Н. Семенов—Новый этап в развитии химической науки и индустрии . . . . . . . 45
А. Абраамян—Сотрудничество нового типа . . . 55
Дж. Киракосян—Так и следовало ожидать . . 63
В. Казарян, Г. Галстян—Подъем коммунального и жилищного хозяйства республики . . . . 70
В. Смбатян—Пленум районного комитета партии . . 80
А. Погосян—Применять критические замечания коммунистов . . . . . . . . . 88

**КОНСУЛЬТАЦИЯ**

Г. Брутян—О философии Гегеля . . . . 96

**ИЗ РЕВОЛЮЦИОННОГО ПРОШЛОГО**

А. Геворкян—Акоп Камари . . . . . 107

**В ПОМОЩЬ САМООБРАЗОВАНИЮ**

М. Мелкумян—Как работать над книгой . . . 115

**ЧИТАТЕЛИ О КНИГЕ**

Т. Акопян — Интересное исследование. Н. Оганесян, А. Алексанян—Явление, заслуживающее поощрения . 120
Краткая аннотация . . . . . . . 125
Ответы на вопросы читателей . . . . . 127


# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ XIX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*Այս տարվա հունվարի վերջին տեղի ունեցավ Հայաստանի Կոմունիստական պարտիայի հերթական XIX համագումարը, որը կարևոր իրադարձություն էր ոչ միայն ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների, այլև բոլոր աշխատավորների կյանքում։*

*ՀԿՊ Կենտկոմի ծավալուն հաշվետվության մեջ, ավելի քան երեք տասնյակ պատգամավորների ելույթներում, համագումարի ընդունած բանաձևում ի մի բերվեցին Հայաստանի բոլշևիկների երկամյա պայքարի ու աշխատանքների արդյունքները։*

*Հիրավի, վերջին երկու տարում լուրջ քայլեր են արված մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի զարգացման գործում։ Առանձնապես նշանակալից են ռեսպուբլիկայի աշխատավորների ձեռք բերած նվաճումները արդյունաբերության զարգացման բնագավառում։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը 1956 թվականին կատարվել է 103,7 տոկոսով, 1957 թվականին՝ 102,2 տոկոսով։ Արդյունաբերության արտադրանքը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ աճել է 20 տոկոսով։ Պետական առաջադրանքները կատարել և գերակատարել են Երևանի մեքենաշինարարները, Կիրովականի քիմիագործները, Լենինականի տեքստիլագործները, Արթիկի տուֆագործները և ուրիշներ։ 1955 թվականի համեմատությամբ զգալի չափով աճել է արդյունաբերական արտադրության մի շարք կարևոր տեսակների արտադրությունը։ Ավտոդողերի թողարկումն ավելացել է 71 տոկոսով, էլեկտրաշարժիչներինը՝ 73 տոկոսով, ուժային տրանսֆորմատորներինը՝ 50 տոկոսով, ավտոմոբիլային պահեստամասերինը՝ 80 տոկոսով, մոլիբդենի կոնցենտրատինը՝ 39 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 30 տոկոսով, կենդանական յուղինը՝ 25 տոկոսով, պահածոներինը՝ 32 տոկոսով և այլն։*

*Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները պլանից ավելի երկրին տվել են 134 միլիոն ռուբլու արտադրանք։ Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման շնորհիվ յուրացվել է մոտ 100 տեսակ նոր, ավելի կատարյալ մեքենաների, սարքերի, ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը։ 1956 և 1957 թթ. ընթացքում ռեսպուբլիկայում ստեղծվել և արագորեն զարգանում են ժամանակակից գործիքաշինությունը և ավտոմատացման միջոցները։ Վերջին երկու տարում շահագործման է հանձնվել ավելի քան 30 նոր արդյունաբերական ձեռնարկություն, այդ թվում էլեկտրաապարատների, սարքաշինական, կոմբինացված կերի գործարանները, տեքստիլ, «Կարմիր ջուհակ», ոսկերչական, գլխարկների ֆաբրիկաները։ Հայաստանում կազմակերպվել է «Ավտոմատիկա» գործարանը՝ քիմիական ար-*

դյունաբերության և գունավոր մետալուրգիայի պրոցեսների ավտոմատացման սարքեր արտադրելու համար, «Պրոմպրիբոր» գործարանը՝ ընդհանուր արտադրական նշանակություն ունեցող սարքեր արտադրելու համար։ Ստեղծվել են մաթեմատիկական հաշվիչ մեքենաների և «Ավտոմատիկա»-ի գիտա-հետազոտական ինստիտուտներ, մի շարք ինքնուրույն կոնստրուկտորական բյուրոներ։

Ինչպես հայտնի է, Հայաստանի Կոմպարտիայի XVIII համագումարը խնդիր դրեց՝ ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա զարգացումը տանել ոչ էներգատար ճյուղերի, մասնավորապես ճշգրիտ մեխանիկայի ստեղծման և ընդլայնման ուղղությամբ։ Եվ, իրոք, անցած ժամանակաշրջանում այդ ճյուղերի զարգացման շնորհիվ մեքենաշինության արտադրանքը աճել է ավելի քան 40 տոկոսով, իսկ գործիքաշինությունը՝ 5 անգամ։ Մոտակա տարիներին մեքենաշինությունն ու գործիքաշինությունը կդառնան ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյուղերից մեկը։

ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան (1957 թ.) պլենումի որոշման համապատասխան ամբողջ երկրում, այդ թվում և մեր ռեսպուբլիկայում, կատարվեց արդյունաբերության ու շինարարության ղեկավարման վերակառուցում և ստեղծվեց ժողովրդական տնտեսության խորհուրդ։

Համագումարի պատգամավորները գոհունակությամբ նշում էին, որ այդ վերակառուցումը բարձրացրեց միութենական ռեսպուբլիկաների պարտիական ու սովետական օրգանների դերը և պատասխանատվությունը ժողովրդական տնտեսության ղեկավարման ասպարեզում, հնարավորություն տվեց հայտաբերելու և գործողության մեջ դնելու եղած ռեզերվները։ Համագումարը նշեց, որ պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի մոտիկից զբաղվել տնտեսական հարցերով, ակտիվորեն ներգործել արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի վրա, ավելի մեծ նախաձեռնություն հանդես բերել, ավելի օպերատիվ լուծել տնտեսական ու տեխնիկական հարցերը։

Համագումարը միաժամանակ շեշտեց, որ հաշվետու ժամանակաշրջանում արդյունաբերության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների հետ մեկտեղ կան նաև զգալի թերություններ։ Շատ ձեռնարկություններ սիստեմատիկաբար չեն կատարում արտադրական պլանները։ 1956 թվականին արտադրական պլանը չկատարեցին 163 ձեռնարկություն, իսկ 1957 թվականին՝ 139 ձեռնարկություն, որոնք երկրին նախատեսվածից պակաս տվեցին 93 միլիոն ռուբլու արտադրանք։ Սա բացատրվում է, մի կողմից, արտադրության և բանվորների աշխատանքի կազմակերպման լուրջ թերություններով, ղեկավարման ցածր մակարդակով, մյուս կողմից՝ նրանով, որ շինարարական կազմակերպությունները խախտում են նոր կարողությունները շահագործման հանձնելու ժամկետները։ Պլանների թերակատարման պատճառներից են նաև պլանավորման թերությունները, ձեռնարկություններին հումքը, վառելիքը և մյուս նյութերը ժամանակին չմատակարարելը և այլն։ Մի շարք ձեռնարկություններ չեն կատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները։ Արդյունաբերության մեջ դեռևս թույլ են տրվում անարտադրողական ծախսեր։

Համագումարը մեծ ուշադրություն դարձրեց շինարարական կազմակերպությունների աշխատանքին։ Նշվեց, որ ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները հաշվետու ժամանակաշրջանում որոշակի աշխատանք են



կատարել շինարարության մեքենայացման և ինդուստրացման, երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաների արմատավորման, նախագծման ու կառուցման մեջ ավելորդությունները վերացնելու ուղղությամբ։ Որոշ չափով բարելավվել է շինարարական աշխատանքների կազմակերպումը։

Չնայած վերջին երկու տարում շինարարական կազմակերպություններն ընդհանուր առմամբ կատարել են վարձակալական աշխատանքների պլանները, բայց Շինարարության մինիստրությունը 1957 թվականին մեծ չափով թերակատարեց շինարարական աշխատանքների պլանը։ Երկու տարում ընդհանուր առմամբ ռեսպուբլիկայում մոտ 80 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն պակաս է հանձնվել օգտագործման։

Համագումարը նշեց, որ վերջին երկու տարում զգալիորեն բարելավվել է տրանսպորտի աշխատանքը։ 1957 թվականին շահագործման հանձնվեց Երևան-Ախտա երկաթուղագիծը, իսկ 1958 թվականին կավարտվի Ախտա-Սևան ուղեմասի շինարարությունը։ 1956—1957 թվականներին կառուցվել և շահագործման են հանձնվել Երևանի, Ղափանի և Մեղրիի կայարանների նոր շենքերը, մի շարք կայարաններ բարեկարգվել են, և սկսվել է Ալավերդու նոր կայարանի շինարարությունը։

Որոշ չափով բարելավվել է նաև ընդհանուր օգտագործման ավտոմոբիլային տրանսպորտի աշխատանքը։ Համագումարը խնդիր դրեց տրանսպորտի աշխատողների առաջ՝ ապահովել գնացքների և ավտոմեքենաների անվտանգ և անխափան երթևեկությունը, վերացնել վթարները, բարելավել ուղևորների կուլտուրական սպասարկումը, արմատախիլ անել կարգապահության խախտումները ավտոտրանսպորտում։

Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարը ի մի բերելով հաշվետու ժամանակաշրջանում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառում ձեռք բերած հաջողությունները, միաժամանակ հանգամանորեն քննեց նրա հետագա զարգացման հեռանկարները։ Ընթացիկ տարում նախատեսված է արդյունաբերական արտադրանքը, 1957 թվականի համեմատությամբ, ավելացնել 8,6 տոկոսով, այդ թվում ժողտնտխորհի գծով՝ 9,3 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 5 տոկոսով, համադրելի ապրանքային արտադրանքի ինքնարժեքը իջեցնել 1,9 տոկոսով։ 1958 թվականին արագ տեմպերով զարգանալու է քիմիական արդյունաբերությունը, կազմակերպվելու է քիմիական արտադրանքի նոր տեսակների արտադրություն։

Ընթացիկ տարում ընդարձակվելու է գունավոր մետաղների արտադրությունը։ Պղինձ-մոլիբդենի հանքաքարի հանույթն ավելացվելու է 30 տոկոսով, մոլիբդենի արտադրանքը՝ 24 տոկոսով։

1958 թվականին առավել բարձր տեմպերով է զարգանալու մեքենաշինությունը և գործիքաշինությունը։ Դրանց արտադրանքը նախորդ տարվա համեմատությամբ ավելացվելու է 20,7 տոկոսով։ Լենինականում, Կիրովականում, Ալավերդում, Սևանում կազմակերպվելու է նոր նյութերի արտադրություն։

Բուռն թափով զարգանալու է նաև թեթև և սննդի արդյունաբերությունը։ Կապիտալ ներդրումների ընդհանուր ծավալը 1958 թվականին կկազմի մեկ միլիարդ 75 միլիոն ռուբլի, որը 25 տոկոսով ավելի է 1957 թվականի հատկացումներից։

Կապիտալ հատկացումների հաշվին ռեսպուբլիկայում կառուցվելու են

արդյունաբերության տարբեր ճյուղերի գծով նոր գործարաններ, էլեկտրահա-
ղորդման նոր գծեր, արտադրական նոր ցեխեր։ Նախորդ տարվա համեմատու-
թյամբ 18 միլիոն ռուբլով ավելացվում են բնակարանային շինարարության
հատկացումները։ Կառուցվելու են նաև նոր դպրոցներ, հիվանդանոցներ, կո-
մունալ և կուլտուր-կենցաղային նոր օբյեկտներ, ջրմուղներ և այլն։

Մշակվում է Սևան-Աղստաֆա երկաթգծի նախագիծը, ավարտվում են
Աղստաֆա-Երևան գազամուղի նախագծային աշխատանքները։ Գազամուղի
կառուցումը սկսվելու է այս տարվանից։

Համագումարը մեծ ուշադրություն դարձրեց ռեսպուբլիկայի գյուղատնտե-
սության զարգացման խնդիրների վրա։ Նշվեց, որ վերջին տարիներին, ելնե-
լով գյուղատնտեսության արտադրության շեշտակի վերելքն ապահովելու հա-
մար պարտիայի կողմից մշակված ծրագրից, ռեսպուբլիկայի պարտիական
կազմակերպությունները է՛լ ավելի մեծ ուշադրություն դարձրեցին գյուղա-
տնտեսության ղեկավարման գործին։

ՀԿՊ Կենտկոմը ռեսպուբլիկայի սովետական և գյուղատնտեսական օր-
գանների հետ միասին քննության առավ գյուղատնտեսության զարգացման
կարևորագույն խնդիրները, մշակեց կոնկրետ միջոցառումներ և քաղաքական
ու կազմակերպական մեծ աշխատանք ծավալեց գյուղատնտեսության արտա-
դրության վերելքն ապահովելու համար։ Այդ միջոցառումները օգնեցին՝ վե-
րացնելու գյուղատնտեսական արտադրության մի շարք ճյուղերի խիստ ետ-
մնալը, բարձրացնելու գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը
և անասնաբուծության մթերատվությունը։ Այդ երևում է հետևյալ տվյալնե-
րից. 1955 թվականի համեմատությամբ, 1957 թվականին հացահատիկի ար-
տադրությունն ավելացավ 15 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 20,5 տոկո-
սով, խաղողինը՝ 8,2 տոկոսով, մսինը՝ 9 տոկոսով, կաթինը՝ 19 տոկոսով,
բրդինը՝ 15,3 տոկոսով. 1957 թվականին ռեսպուբլիկայում ստացվեց հացա-
հատիկային կուլտուրաների ամենաբարձր բերքը։ Խաղողի այգիների տարա-
ծությունը ընդարձակվեց և 1957 թվականին հասավ 21 հազար հեկտարի, իսկ
պտղատու այգիներինը՝ 22 հազար հեկտարի. նկատելիորեն աճեց խաղողի
և պտղատու այգիների բերքատվությունը։

Մտնելով Մեծ Հոկտեմբերի 40-րդ տարեդարձի պատվին ծավալված հա-
մաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, կոլտնտեսականները,
ՄՏԿ-ների և սովետական տնտեսությունների բանվորները, գյուղատնտեսու-
թյան մասնագետները 1957 թվականին ժամկետից շուտ կատարեցին պետու-
թյանը հացահատիկ, միս, կաթ, բուրդ, շաքարի ճակնդեղ, բանջարեղեն հանձ-
նելու տարեկան պլանները։ 1957 թվականին, 1955 թվականի համեմատու-
թյամբ, մթերվեց և գնվեց 21 տոկոսով ավելի շաքարի ճակնդեղ, 55 տոկոսով
ավելի բանջարեղեն, 58,6 տոկոսով ավելի խաղող, 35 տոկոսով ավելի կաթ,
30,5 տոկոսով ավելի բուրդ։ Կոլտնտեսություններում մեկ կովի կաթնատվու-
թյունը 1957 թվականին կազմեց 1342 կիլոգրամ, որը 92 կիլոգրամով գերա-
զանցում է 1960 թվականի համար նախատեսված մակարդակը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները ջերմորեն արձա-
գանքելով պարտիայի կոչին, հայրենանվեր աշխատանք են կատարում մո-
տակա տարիներին բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտա-
դրությամբ ԱՄՆ-ին հասնելու համար։ Նրանք պարտավորվել են մինչև 1960
թվականը հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց մսի ար-



տադրությունը հասցնել 82 ցենտների, կաթինը՝ 350 ցենտների։ Շատ կոլտն-
տեսություններ 1957 թվականին գերակատարել են հիշյալ ցուցանիշները։

Չնայած ձեռք բերած այս հաջողություններին, ռեսպուբլիկայի գյուղա-
տնտեսության մեջ դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ։ Մի շարք
շրջաններ (Ազիզբեկով, Նոյեմբերյան, Աշտարակ, Կիրովական, Ղափան,
Կոտայք, Եղեգնաձոր) տարիներ շարունակ ստանում են հացահատիկային
կուլտուրաների ցածր բերք։ Խոշոր թերություններ կան ծխախոտագործության
և բամբակագործության բնագավառում։ Բավական է նշել, որ այդ երկու կուլ-
տուրաների գծով չեն կատարվել բերքատվության և մթերման պլանները։

Մեծ թերություններ կան խաղողագործության բնագավառում։ Մի քանի
այգեգործական շրջաններում (Աշտարակ, Կոտայք, Եղեգնաձոր) վերջին տա-
րիներս միանգամայն անբավարար են զբաղվում խաղողագործության զար-
գացմամբ։ Համագումարը պարտավորեցրեց համապատասխան մարմիններին
մոտակա տարիներին ընդարձակել պտղաբուծության բազան և բարձրացնել
խաղողի բերքատվությունը։

Համագումարն առաջնահերթ համարեց լուծելու մեր առավել դժվարին և
անհետաձգելի խնդիրներից մեկը՝ անասնաբուծության զարգացման խնդիրը։
Ինչպես նախատեսված է ՍՄԿՊ XX համագումարի դիրեկտիվներով, 1960
թվականին, 1955 թվականի համեմատությամբ, Հայկական ՍՍՌ-ում մսի ար-
տադրությունը պետք է ավելացնել 2,1 անգամ, կաթինը՝ 2,2 անգամ, բրդինը՝
1,8 անգամ։ Համագումարի դիրեկտիվները կատարելու համար մեր անասնա-
բուծության զարգացման ներկա տեմպերը միանգամայն անբավարար են։ Ինչ-
պես արդարացիորեն նշված է ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սո-
վետի վերջերս հրապարակված դիմումի մեջ, Հայկական ՍՍՌ-ում վերջին երեք
տարիների ընթացքում կովերի գլխաքանակի աճը մնացել է համարյա 1954
թվականի մակարդակին, իսկ մսի արտադրությունը և պետությանը հանձնումը
1956 թվականի համեմատությամբ նույնիսկ իջել է։

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց նաև սովետական տնտեսու-
թյունների զարգացման հարցերին։ Վերջին ժամանակաշրջանում ընդարձակ-
վել է սովետական տնտեսությունների ցանցը, ավելացել են ցանքատարածու-
թյունները և անասունների գլխաքանակը։ Սակայն շատ սովետական տնտե-
սություններ դեռևս չեն դարձել բարձր ապրանքային տնտեսություններ։

Գյուղատնտեսության տարբեր ճյուղերում գոյություն ունեցող թերու-
թյունների գլխավոր պատճառն այն է, որ Գյուղատնտեսության մինիստրու-
թյան և մի շարք շրջանային կազմակերպությունների կողմից գյուղատնտե-
սության ղեկավարումը չի գտնվում պատշաճ բարձրության վրա և չի համա-
պատասխանում պարտիայի ժամանակակից պահանջներին։

Համագումարը խնդիր դրեց՝ արմատապես բարելավել գյուղատնտեսու-
թյան ղեկավարումը և ապահովել առաջադրված խնդիրների անթերի կա-
տարումը։

Համագումարում առաջ քաշվեցին նաև ռեսպուբլիկայի գյուղատնտեսու-
թյան զարգացման հեռանկարային մի շարք խնդիրներ։ Ռեսպուբլիկայի կոլ-
տնտեսություններն ու սովետական տնտեսությունները մշակել են գյուղա-
տնտեսության զարգացման պլաններ 5—7 տարվա համար։ Նախատեսված է
մինչև 1965 թվականը մսի և կաթի արտադրությունն ավելացնել 2—2,5 ան-
գամ, բանջարեղենինը՝ 1,5—2 անգամ, խաղողինը և մրգինը՝ 3—4 անգամ։

Այս խնդիրների իրականացման գործում վճռականը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության զգալի բարձրացումն է։ Այդ գործում մեծ դեր է պատկանում նաև ոռոգման ցանցի ընդարձակմանը, որի համար էլ նախատեսվում է առաջիկա 5—7 տարում ռեսպուբլիկայի ջրովի հողատարածությունները ավելացնել 45—50 հազար հեկտարով։

Այս լուրջ և բարդ խնդիրների լուծումը պահանջում է զգալիորեն բարելավել գյուղատնտեսության ղեկավարությունը, բարձրացնել տեղական պարտիական և սովետական աշխատողների պատասխանատվությունը։

Համագումարը ռեսպուբլիկայի պարտիական, սովետական օրգանների ու գյուղատնտեսության բոլոր աշխատողների առջև խնդիր դրեց՝ գյուղատնտեսական գիտության նվաճումների և աշխատանքի առաջավոր մեթոդների լայն կիրառման միջոցով հասնել գյուղատնտեսական արտադրության վճռական զարգացման, ապահովել ստանձնած պարտավորությունների լրիվ կատարումը։

Ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների հիման վրա բարձրացել է աշխատավորության նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման ուղղությամբ իրականացված մի շարք լուրջ միջոցառումների շնորհիվ զգալիորեն ավելացան բանվորների, ծառայողների և կոլտնտեսականների ռեալ եկամուտները։

Բարձրացավ բնակչության գնողունակությունը, աճեց ապրանքաշրջանառությունը։

1956—1957 թվականներին պետական ձեռնարկությունները և հիմնարկները շահագործման հանձնեցին 238 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Նույն ժամանակամիջոցում պետական վարկի օգնությամբ բանվորներն ու ծառայողները կառուցեցին 250 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, իսկ կոլտնտեսականները՝ 17.100 բնակելի տուն։

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում լուրջ աշխատանք է կատարվել բնակչության բուժսպասարկման բարելավման, ժողովրդական կրթության զարգացման ասպարեզներում։

1956—1957 թվականներին մեր ռեսպուբլիկայի քաղաքներում կառուցվել է 7 նոր հիվանդանոց՝ 870 մահճակալով, գյուղական վայրերում 19 հիվանդանոց՝ 450 մահճակալով։ Միության միջինի համեմատ ռեսպուբլիկայում բարձր է բնակչության բնական աճը։

Անցած երկու տարում ստեղծվել են 5 գիշերօթիկ դպրոցներ։ Որոշ չափով բարելավվել է պոլիտեխնիկական ուսուցումը։

Վերանայվել են բուհերի ընդունելության պայմանները։ 1957 թվականին բուհ ընդունվածների զգալի մասը անմիջապես արտադրությունից եկած երիտասարդներ էին։ Զգալիորեն ընդլայնվել է հեռակա բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության ցանցը, վերանայվել է բուհերի և միջնակարգ մասնագիտական հիմնարկների ուսուցման ծրագիրը՝ կրթությունը արտադրության հետ ավելի սերտ կապելու հաշվով։

ՀԿՊ XVIII և XIX համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում ռեսպուբլիկայում ընդլայնվել է կուլտուրայի օջախների՝ ակումբների, գրադարանների, ընթերցարանների ցանցը։ Ռեսպուբլիկայի կուլտուրական նվաճումն է Երևանում Հեռուստատեսության ստուդիայի ստեղծումը։



Անշուշտ նշանակալի են մեր նվաճումները գրականության և արվեստի զարգացման գործում։ Սովետահայ գրողները և արվեստի աշխատողները վերջին տարիներին մի շարք արժեքավոր ստեղծագործություններ են տվել, որոնց մեջ արտացոլվել են սովետական մարդկանց ստեղծագործական աշխատանքը, հերոսական առօրյան։

Ուրախալի երևույթ է, որ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Հայաստանի գրականագետների ու գրողների սերտ կապի շնորհիվ իրագործվեց «Սասունցի Դավիթ» էպոսի չինարեն թարգմանությունն ու լույս ընծայումը։

Անցյալ տարի ՀԿՊ Կենտկոմը հրավիրեց գրականության և արվեստի աշխատողների խորհրդակցություն, որտեղ բացահայտվեցին մեր գրականության և արվեստի թերությունները ու սխալները, նշվեցին դրանց հետագա վերելքի կոնկրետ ուղիները։

Վերջին երկու տարում զգալիորեն բարելավվել է ռեսպուբլիկայի հրատարակչական հիմնարկների գործունեությունը՝ հատկապես ինքնուրույն աշխատությունների հրատարակման գծով։ Նկատելիորեն ավելացել է մարքսիստական-լենինյան տնտեսագիտության, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի, փիլիսոփայության, պատմության հարցերին նվիրված աշխատությունների հրատարակումը։ Ուրախալի է նշել, որ համագումարի նախօրյակին լույս տեսավ «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծերը» աշխատությունը։

Հրատարակչությունների աշխատանքում լուրջ տեղ է գրավում արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավոր փորձին վերաբերող գրքերի և բրոշյուրների հրատարակումը։

Վերջին տարիներին բավականին ընդլայնվեց ռեսպուբլիկայի մամուլը։ Առ 1-ը հունվարի 1958 թվականի մեզ մոտ լույս են տեսնում 127 անուն թերթեր, ամսագրեր, ալմանախներ և զանազան այլ պարբերականներ։ Հատկապես նշանակալի երևույթ է շուրջ երկու տասնյակ կոլտնտեսային բազմատիրաժ թերթերի ստեղծումը։ 1956—1957 թվականներին ստեղծվեցին մի շարք նոր թերթեր և ամսագրեր։

Համագումարին Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը հանգամանորեն վերլուծեց մամուլի, հրատարակչությունների, Ռադիոյի, կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատանքներում եղած թերությունները ու սխալները, նրանց աշխատանքի որակը և գաղափարական մակարդակը բարձրացնելու խնդիրները։ «Պարտիական մամուլը,—ասաց ընկ. Ս. Թովմասյանը,— պետք է բազմակողմանիորեն ու խոր կերպով բացահայտի գրականության ու տպագիր այլ հրատարակությունների մեջ թույլ տրվող սխալները, վճռականորեն հանդես գա ամեն տեսակ խեղաթյուրումների դեմ, պատվով կատարի պարտիայի գաղափարական գլխավոր զենքի իր դերը»։

Համագումարը հասարակական գիտությունների բնագավառի աշխատողների կարևոր խնդիրը համարեց սովետական հասարակարգի պատմության հետագա ուսումնասիրումն ու խոր մշակումը։

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի Կոմունիստական պարտիան ակտիվորեն պայքարել է պարտիայի XX համագումարի դիրեկտիվների, ՍՄԿՊ Կենտկոմի որոշումների կենսագործման համար, է՛լ ավելի է ամրապնդել իր

շարքերի միասնությունը, ավելի սերտ է համախմբվել ՍՄԿՊ լենինյան Կենտկոմի շուրջը։

Հայաստանի Կոմպարտիան իր պրակտիկ գործունեության մեջ իրականացրել է այնպիսի միջոցառումներ, որոնք հանգեցրել են ներպարտիական դեմոկրատիայի է՛լ ավելի ծավալմանը, պարտիական կազմակերպությունների և պարտիական մասսաների ակտիվության ու ինքնագործունեության զարգացմանը։ Մեծ աշխատանք է կատարվել սովետական օրինականության լուրջ խախտումները վերացնելու ուղղությամբ։ Ռեաբիլիտացիայի են ենթարկվել և պարտիայի շարքերում են վերականգնվել անցյալում կեղծ, հորինված գործերի հիման վրա ռեպրեսիաների ենթարկված ընկերները։

Ինչպես ամբողջ պարտիայի, այնպես էլ Հայաստանի պարտիական կազմակերպությունների կյանքում կարևորագույն իրադարձություն հանդիսացավ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1957 թվականի Հունիսյան պլենումը, որը քննության առավ Կենտկոմի Նախագահության ներսում գոյացած Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի և նրանց հարած Շեպիլովի հակապարտիական խմբի հարցը։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր կոմունիստներն ու անպարտիականները միահամուռ հավանություն տվին ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշմանը։ Հայաստանի Կոմպարտիան միահամուռ պաշտպանեց նաև ՍՄԿՊ Կենտկոմի Հոկտեմբերյան պլենումի որոշումը՝ «Սովետական Բանակում և Նավատորմում պարտիական-քաղաքական աշխատանքն ուժեղացնելու մասին»։

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն բարելավվել է պարտիայի քաղկոմների և շրջկոմների կազմակերպական աշխատանքի բովանդակությունը։ Կիրովականի քաղկոմում, Ամասիայի, Վեդու, Ղուկասյանի, Կալինինոյի, Թալինի, Իջևանի, Նոյեմբերյանի, Արթիկի, Կիրովյան, Կրասնոսելսկի և այլ շրջկոմներում ղեկավար աշխատանքի առաջ քաշվեցին նոր, երիտասարդ աշխատողներ։ Պարտիական կոմիտեների ընտրությունների նախապատրաստման ժամանակաշրջանում վերացնելով ՄՏԿ-ների գծով հրահանգչական խմբերը, ռեսպուբլիկայի մի շարք շրջկոմներ, ինչպես նաև Կիրովականի քաղկոմը, վերացրին բաժինները։ Շրջկոմների հրահանգիչներն ամրացված են ձեռնարկությունների, հիմնարկների պարտիական սկզբնական կազմակերպություններին, որտեղ նրանք կազմակերպում են պարտիական-քաղաքական ամբողջ աշխատանքը։

Հայաստանի Կոմպարտիայի անդամների ակտիվության նոր աճը դրսևորվեց անցյալ տարի տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովներում։ Պարտիական սկզբնական կազմակերպությունների ղեկավարության մեջ առաջ քաշվեցին բազմաթիվ նոր մարդիկ։ Ռեսպուբլիկայի սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարների մեկ երրորդն առաջին անգամն է ընտրվել։

Չնայած պարտիական-կազմակերպական աշխատանքի որոշ բարելավմանը, ինչպես նշվեց համագումարում, պարտիայի մի շարք շրջկոմների ու քաղկոմների կազմակերպական աշխատանքը շատ դեպքերում դեռևս ետ է մնում տնտեսական ու կուլտուրական շինարարության ժամանակակից խնդիրներից։ Համագումարում խիստ կերպով քննադատվեցին Արթիկի, Սիսիանի, Կրասնոսելսկի, Նոյեմբերյանի և մի շարք այլ շրջկոմները, իրենց աշխատանքներում տեղ գտած լուրջ սխալների ու թերությունների համար։

Պարտիական աշխատանքում կարևոր տեղ է գրավում կոմերիտմիության



պարտիական ղեկավարությունը։ Այդ ուղղությամբ էլ որոշ հաջողություններ կան։ Սակայն պարտիական օրգանները քիչ և ոչ խոր կերպով են զբաղվում կոմերիտմիության ղեկավարման գործով, ժամանակին չեն վերացնում նրանց գործունեության մեջ տեղ գտած թերությունները։ Թերություններ կան նաև արհեստակցական միություններին ցույց տրվող ղեկավարության բնագավառում։ Համագումարը պահանջեց վերացնել այդ թերությունները։

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները զգալի հաջողություններ են ձեռք բերել կոմունիստների գաղափարական կոփվածության և մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքում։ Նախ պետք է նշել այն, որ պարտիական լուսավորության բոլոր օղակներում անհրաժեշտ տեղ հատկացվեց ՍՄԿՊ XX համագումարի որոշումների ու նյութերի խոր ու բազմակողմանի ուսումնասիրությանը։ Կոմունիստների ուսուցման մեջ տեղի ունեցած ամենաէական փոփոխությունն այն է, որ պարտիական կազմակերպությունները կատարելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, կարողացան կոմունիստների ուշադրությունը բևեռել մարքս-լենինյան տնտեսագիտական ուսմունքի, արդյունաբերության և գյուղատնտեսության էկոնոմիկայի հարցերի ուսումնասիրման վրա։ Պարտիական լուսավորության ցանցի ընթացիկ ուսումնական տարում քաղաքական ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված բոլոր կոմունիստների 35 տոկոսն ուսումնասիրում է մարքսիստական-լենինյան տնտեսագիտական թեորիան և արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի էկոնոմիկայի հարցերը։

ՍՄԿՊ XX համագումարից հետո ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում լայն տարածում գտավ ուսուցման այնպիսի ձևը, ինչպիսին ընթացիկ քաղաքականությունն ուսումնասիրող խմբակն է։ Վերջին մեկ տարում այդպիսի խմբակների թիվն աճեց ավելի քան 6 անգամ, հասնելով 1.073-ի, որտեղ ընդգրկված են 13.600 կոմունիստներ։

Մեր ռեսպուբլիկայի կոմունիստների 48 տոկոսից ավելին ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն, նրանց հանրակրթական ու քաղաքական պատրաստականությունը թույլ է տալիս մարքսիզմ-լենինիզմի թեորիան ուսումնասիրելու ինքնուրույն կարգով։ Ընթացիկ ուսումնական տարում ավելի քան 26.000 կոմունիստ զբաղվում են քաղաքական ինքնակրթությամբ։

Մասսաների մեջ կատարվող քաղաքական ագիտացիայի բնագավառում Հայաստանի պարտիական կազմակերպությունները ղեկավարվել են Վ. Ի. Լենինի այն հայտնի ցուցումով, որ «...առաջին հերթին հարկավոր է մասսաներին կապել ընդհանուր տնտեսական կյանքի շինարարության հետ։ Դա պիտի լինի գլխավորը յուրաքանչյուր ագիտատորի աշխատանքի մեջ, և երբ նա յուրացնի այդ, այն ժամանակ նրա աշխատանքի հաջողությունն ապահովված կլինի»։

Վերջին տարիներին պարտիական կազմակերպությունները որոշ չափով բարձրացրել են մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի գաղափարական մակարդակը։ Շատ պարտիական կազմակերպություններում որոշակի քայլեր են արվել պրոպագանդան ու ագիտացիան կյանքի, կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ կապելու համար։ Բարելավվել է ոչ միայն ագիտացիոն աշխատանքի գաղափարական բովանդակությունը, այլև բազմազան են դարձել նրա ձևերը։ Ագիտացիոն աշխատանքի

մեջ են ներգրավվել պարտիական ու սովետական ակտիվը, ինտելիգենցիան,
արտադրության մասնագետները, նորարարներն ու առաջավորները:

Սակայն, չնայած այս հաջողություններին, քաղաքական-մասսայական
աշխատանքում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ: Քաղաքական-
մասսայական աշխատանքի թափն ու բովանդակությունը դեռևս չեն համա-
պատասխանում կոմունիստական շինարարության այսօրվա պահանջներին:
Զրույցների և զեկուցումների մեջ հաճախ երևան չեն հանվում արտադրության
հնարավորությունները ու ռեզերվները, անբավարար են պրոպագանդվում
արտադրության առաջավորների ու նորարարների աշխատանքի փորձը, գի-
տության ու տեխնիկայի նվաճումները:

Համագումարը պահանջեց ամեն կերպ բարելավել պարտիական կազմա-
կերպությունների գաղափարական աշխատանքը, բարձրացնել տնտեսական
կադրերի նկատմամբ պահանջկոտությունը և ամբողջ գաղափարական աշխա-
տանքի հարձակողական ոգին, անհաշտ պայքար մղել բուրժուական գաղա-
փարախոսության, ռևիզիոնիզմի և նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորում-
ների դեմ, աշխատավորներին դաստիարակել ՍՄԿՊ փառապանծ տրադիցիա-
ներով, ժողովուրդների անխախտ բարեկամության և պրոլետարական ինտեր-
նացիոնալիզմի ոգով, պարտիայի գործին անսահման նվիրվածության ոգով:

Ամփոփելով հաշվետու ժամանակաշրջանում ձեռք բերած հաջողություն-
ները, Հայաստանի Կոմունիստական պարտիայի XIX համագումարը հավա-
նություն տվեց հաշվետու ժամանակաշրջանում ՀԿՊ Կենտկոմի գործունեու-
թյանը, նրա կատարած աշխատանքը գտավ բավարար և կոնկրետ
միջոցառումներ նշեց ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, կուլտու-
րայի, գիտության հետագա զարգացման, պարտիական կազմակերպություն-
ների և սովետական օրգանների աշխատանքի է՛լ ավելի ուժեղացման համար:
Պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ կազմակերպել համագումա-
րի նյութերի լայն ուսումնասիրությունը և բոլորին մոբիլիզացնել համագու-
մարի որոշումները կյանքում կենսագործելու համար:

Սովետական Հայաստանի բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան,
սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի, նրա Լենինյան Կենտ-
րոնական Կոմիտեի շուրջը, սովետական բազմազգ ժողովուրդների համերաշխ
ընտանիքում վստահորեն առաջ են ընթանում կոմունիզմի կառուցման մեծ
ճանապարհով:

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Վերջին ժամանակաշրջանում մեր պարտիան և կառավարությունը սովե-
տական ամբողջ ժողովրդի ամենաակտիվ մասնակցությամբ իրականացրին
գյուղատնտեսության հետագա վերելքի վիթխարի միջոցառումներ: Սոցիալիս-
տական գյուղատնտեսության մեջ կատարվեցին տասնյակ միլիարդ ռուբլու
կապիտալ ներդրումներ, մեքենա-տրակտորային կայաններում ստեղծվեցին
մեխանիզատորական մշտական կադրեր, քաղաքներից ու արդյունաբերական
կենտրոններից գյուղատնտեսության բնագավառում աշխատանքի ուղարկ-
վեցին հազարավոր մասնագետներ, սահմանվեց գյուղատնտեսական պլանա-
վորման նոր կարգը: Գյուղատնտեսական մթերքների մթերման ու գնման գների
բարձրացումը օգնեց հանրային արտադրության ապրանքայնության աճին
և խթանեց կոլտնտեսությունների ու կոլտնտեսականների նյութական շահա-
գրգռվածության բարձրացմանը: Աշխատավորների հերոսական ջանքերով
միլիոնավոր հեկտար խամ և խոպան հողեր պտղաբեր դարձան:

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ձեռնարկե-
լով վերը նշված կենսական նշանակություն ունեցող միջոցառումները, հաջո-
ղությամբ լուծում են մեր մեծ երկրի առջև ծառացած խնդիրը՝ հզոր արդյու-
նաբերության հետ միասին ունենալ նաև բազմակողմանիորեն զարգացած
գյուղատնտեսություն, որը լի ու լի բավարարի բնակչության աճող պահանջ-
ները կենսամթերքների և արդյունաբերության պահանջները՝ գյուղա-
տնտեսական հումքի նկատմամբ:

Սոցիալիստական գյուղատնտեսության հզոր վերելք ստեղծելու նպատա-
կին է ուղղված հունվարի 21-ին հրապարակված Սովետական Միության Կո-
մունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌ Միության Մինիս-
տրների Սովետի Դիմումը՝ ուղղված կոլտնտեսականներին, կոլտնտեսուհի-
ներին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության
մասնագետներին և բոլոր աշխատողներին:

Հանրագումարի բերելով գյուղատնտեսության 1957 թվականի նախնա-
կան արդյունքները, Դիմումը պատշաճ վերլուծությամբ դրվատում է այն հա-
ջողությունները, որոնց հասել են կոլտնտեսականները, մեքենա-տրակտորա-
յին կայանների և սովետական տնտեսությունների աշխատողները: Անցյալ
տարի, չնայած դաժան երաշտին, որը տեղի ունեցավ մեր երկրի մի ընդար-
ձակ մասում, երկիրն ապահովվեց բավարար քանակությամբ հացահատիկով
և գյուղատնտեսական մյուս մթերքներով: 1953 թվականի համեմատությամբ
մթերված է 18 տոկոսով ավելի շատ հացահատիկ և 41 տոկոսով ավելի շատ
ցորեն:

Հացահատիկի արտադրության ավելացման գործում զգալի հաջողություն-
ներ ունի նաև մեր ռեսպուբլիկան: 1955 թվականի համեմատությամբ ռես-
պուբլիկայում հացահատիկի արտադրությունն ավելացել է 15 տոկոսով:

Մեծ են հաջողությունները ճակնդեղի մշակության գործում։ Անցյալ տարի, 1956 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ում շաքարի ճակնդեղի ցանքատարածությունն ավելացել է 100,2 հազար հեկտարով, իսկ բերքատվությունը՝ 15 տոկոսով։ Սովետական Միության կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները 1957 թվականին 69 միլիոն ցենտներով ավելի շատ ճակնդեղ են հավաքել, քան 1956 թվականին։ Դա հնարավորություն կընձեռի 1,2 միլիոն տոննայով ավելի շատ շաքար արտադրել, քան 1956—1957 թվականներին։ «Մեր երկիրը,— ասված է Դիմումի մեջ,— այդպիսի քանակությամբ շաքար դեռ երբեք չի արտադրել»։ Լավ են աշխատել նաև մեր ռեսպուբլիկայի ճակնդեղագործները, որոնք 1957 թվականին ամեն մի հեկտարից ստացան 225 ցենտներ շաքարի ճակնդեղ։

Դիմումում նշվում է, որ գյուղատնտեսության մեջ ձեռք բերված հաջողությունները բարենպաստ պայմաններ ստեղծեցին լուծելու այնպիսի կարևորագույն խնդիր, ինչպիսին է անասնաբուծության վերելքը։ Այս տարվա հունվարի մեկի տվյալներով կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը, անցյալ տարվա համեմատությամբ ավելացել է 4 միլիոն 600 հազարով, կովերինը՝ մեկ միլիոնով, խոզերինը՝ 5 միլիոն 900 հազարով, ոչխարներինը՝ 9 միլիոն 400 հազարով։ Այդ նույն ժամանակամիջոցում բարձրացել է անասնաբուծության մթերատվությունը, կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները երկրին տվել են ավելի շատ կաթ, միս, բուրդ և այլ մթերքներ։

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հաջողությունների շնորհիվ այժմ հնարավոր է լուծել պետական կարևորություն ունեցող մեծ խնդիր՝ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։ Դա սովետական ժողովրդի նյութական բարեկեցության հետագա բարձրացման մեծագույն ազդակ է։ Ջերմորեն պաշտպանելով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կողմից այդ նպատակով արված կոչին, սոցիալիստական գյուղի աշխատավորների հոծ բանակը լուրջ հաջողությունների հասավ այդ ասպարեզում։ Այժմ արդեն ակնհայտ է, որ բազմաթիվ կոլտնտեսություններ և սովետական տնտեսություններ անցյալ գյուղատնտեսական տարում հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց ստացան 100 ու ավելի ցենտներ միս և 400—500 ցենտներ կաթ։ Բոլոր կատեգորիաների տնտեսությունների գծով 1954 թվականին երկրում մթերվեց ու գնվեց 11,3 միլիոն տոննա, իսկ 1957 թվականին՝ 20,5 միլիոն տոննա կաթ, կամ 1954 թվականից 81 տոկոսով շատ։

Անասնաբուծության զարգացման գործում կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների վերցրած բարձր տեմպերը նկատի ունենալով, պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վստահություն են հայտնում, որ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի արտադրությամբ մենք բոլոր հնարավորություններն ունենք արդեն 1958 թվականին ԱՄՆ-ին հասնելու համար։ Այդ կապակցությամբ դեռ անցյալ տարվա մայիսին Ն. Ս. Խրուշչովը գտնում էր, որ բնակչության մեկ շնչին ընկնող կաթի արտադրությամբ մենք կարող ենք ԱՄՆ-ին ոչ միայն հասնել, այլև գերազանցել արդեն 1958 թվականին։ Դա,— ասում է ընկ. Խրուշչովը,— մեր մեծ



նվաճումը կլինի։ Չէ՞ որ ԱՄՆ-ը ներկայումս բառացիորեն ամբողջ արևմտյան աշխարհի հոգեբանության վրա ազդում է իր արտադրության ծավալով։

1957 թվականին կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները խոշոր հաջողությունների են հասել մսի արտադրության գործում։ Հաճելի է իմանալ, որ 1957 թվականին մեր երկրում ավելի լավ էր կազմակերպվել խոշոր եղջերավոր անասունների գիրացումն ու բտումը։ Անցյալ տարի երկրում մթերվեց ու գնվեց 550 հազար տոննայով կամ 12 տոկոսով ավելի անասուն, քան 1956 թվականին։

Դիմումում ամենայն պարզությամբ նշված է, որ երկրում մսի արտադրությունը և մթերումների ավելացումը ձեռք է բերվել այնտեղ, ուր պատշաճ ուշադրություն է նվիրվել խոզաբուծության զարգացմանը, խոշոր եղջերավոր անասունների ու ոչխարների գիրացմանն ու բտմանը։

Միայն անցյալ տարի, օրինակ, Սովետական Միության կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ոչխարների գլխաքանակն աճեց 9,4 միլիոնով, 1956 թվականի համեմատությամբ մթերվեց 344 հազար ցենտներով կամ 14 տոկոսով ավելի բուրդ։ Ոչխարների ցեղայնությունը բարելավելու ուղղությամբ ձեռք առնված միջոցառումների շնորհիվ վերջին երեք տարում ավելացավ առավել նուրբ ու կիսանուրբ բրդի արտադրանքը։

Մինչև վերջին տարիներս երկրում ձու և թռչունների միս քիչ էր արտադրվում։ Այժմ արդեն զարգանում է թռչնաբուծությունը։ Թռչունների քանակը երկրում 1957 թվականին ավելացավ 8,7 միլիոնով, մթերվեց 30 տոկոսով շատ ձու, քան 1956 թվականին։

1957 թվականին մեր ռեսպուբլիկայի 52 կոլտնտեսություններում կազմակերպվեցին թռչնաբուծական խոշոր ֆերմաներ, որոնց մի մասը ապագայում պետք է վերածվի կոլտնտեսային թռչնաբուծական ֆաբրիկաների։

Անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացնելու նպատակով պարտիայի ամենօրյա օգնությամբ ու ղեկավարությամբ գյուղատնտեսության բնագավառի աշխատողներն ամբողջ եռանդով ձեռնամուխ եղան կերի կայուն բազա ստեղծելու կարևորագույն գործին։ Նրանց թափած աշխատանքն իզուր չանցավ։ Այդ մասին են վկայում անցյալ տարվա գյուղատնտեսական աշխատանքների արդյունքները. եթե 1953 թվականին կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները կուտակել էին մոտավորապես 32 միլիոն տոննա սիլոս, ապա անցած տարի կուտակեցին մոտավորապես 90 միլիոն տոննա, կամ յուրաքանչյուր կովին՝ միջին հաշվով յոթ տոննա։

Այս տարի խնդիր է դրվում, որպեսզի պարտադիր կարգով բոլոր կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները, բացի հատուկ բտման տնտեսություններից, ունենան սեփական կեր։ Պետք է վերջ տալ այն պրակտիկային, երբ շատ կոլտնտեսություններ ու սովետական տնտեսություններ անասուններ պահելու իրենց պլանները կառուցում են ներմուծվող կերի վրա։

Դիմումում բերված բազմաթիվ կոնկրետ օրինակները ցույց են տալիս, որ մեր երկրում այժմ արդյունավետ աշխատանք է կատարվում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը իջեցնելու ուղղությամբ։ Այժմ ծախսված յուրաքանչյուր ռուբլու դիմաց ավելի արագ փոխհատուցում է ստացվում և պայմաններ են ստեղծվում ընդլայնված վերարտադրության համար։ Հետզհետե պակասում է տնտեսապես թույլ, ետ մնացող կոլտնտեսությունների թիվը։ Կոլտնտեսությունների եկամուտների վերընթաց աճի հետ միասին ավե-

լանում է նաև դրամի բաշխումը կոլտնտեսականների աշխօրերի դիմաց։ Կոլտնտեսություններում զգալիորեն ամրացել է կարգապահությունը, բարելավվել է աշխատանքի կազմակերպումը, սիստեմատիկաբար ամրապնդվում է կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների ղեկավար կադրերի կազմը։

1957 թվականը հայտնի է նաև նրանով, որ գյուղատնտեսության մեջ աշխատանքի մեկնեցին հազարավոր կոմերիտականներ ու երիտասարդներ, տասնամյակն ավարտած և հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններն ընդունված աղջիկներ ու պատանիներ, որոնց թիվն այժմ հասնում է ավելի քան 500 հազարի։

Ահա այսպիսին է գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿՊ XX համագումարի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումների որոշումների կենսագործման առաջին ու հրաշալի արդյունքը, որը փայլուն կերպով հաստատում է մեր սոցիալիստական գյուղատնտեսության նոր ու հզոր վերելքը։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը միաժամանակ իրենց Դիմումի մեջ լենինյան շիտակությամբ մատնանշել են այն անհանդուրժելի թերությունները, որ դեռևս գոյություն ունեն գյուղատնտեսության բնագավառում։ Ոչ մի կասկած չի կարող լինել, որ մեր գյուղատնտեսությունը շեշտակի վերելք է ապրում, բայց մենք չենք կարող բավարարվել ձեռք բերված հաջողություններով։

Ահա այդ է պատճառը, որ պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը գյուղատնտեսության աշխատողների ուշադրությունը բևեռում են չօգտագործվող այն վիթխարի ռեզերվների վրա, որոնց ժամանակին ու արդյունավետ օգտագործելու դեպքում, հենց այս տարի մեծ չափերով կավելանա հողագործության և անասնաբուծության եկամտաբերությունը։

Խոշոր թերություններ գոյություն ունեն մսի արտադրության գործում։ «Սխալ կլիներ,— ասված է Դիմումի մեջ,— մսի արտադրության ասպարեզում մեր հաջողությունների գերագնահատումը։ Չնայած ձեռք բերված արդյունքներին, մսի արտադրությունը դեռ լրջորեն ետ է մնում պահանջներից։ Մսի և մսամթերքների նկատմամբ բնակչության պահանջարկը բավարարվում է ոչ լրիվ չափով»։

Մսի արտադրության գործում գոյություն ունեցող լուրջ թերությունների համար ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումում իրավացիորեն քննադատված է նաև մեր ռեսպուբլիկան, ուր վերջին երեք տարում կովերի գլխաքանակը գրեթե չի ավելացել։

ՀԿՊ XIX համագումարը, ճիշտ համարելով մեր ռեսպուբլիկայի վերաբերյալ այդ քննադատությունը, իր հերթին մի շարք թերություններ բացահայտեց գյուղատնտեսության բնագավառում։ Ամբողջ ռեսպուբլիկայում 1957 թվականի կաթի արտադրության գծով ստանձնած սոցիալիստական պարտավորությունները կատարել են միայն Շահումյանի և Ալավերդու շրջանները և մսի գծով՝ Հոկտեմբերյանի շրջանը։ Մնացած շրջանները դեռ վատ են կատարում ստանձնած պարտավորությունները։ Ներկայումս ռեսպուբլիկայում ամբողջությամբ վերցրած 100 հեկտար հողատարածության դիմաց կովերի գլխաքանակը 14,6 է, այդ թվում կոլտնտեսություններում՝ 8,2, սովետական տնտեսություններում՝ մոտավորապես 5։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Դիմումի մեջ միանգամայն ճիշտ կերպով նշված է, որ Հայկական ՍՍՌ կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում հողատարածության 100 հեկտարի դիմաց մոտակա 3—4 տարիների ընթացքում կովերի գլխաքանակը հնարավոր է հասցնել 15—20-ի։



Այո, մեր ռեսպուբլիկայի ներքին հնարավորությունները նկատի ունենալով, այդ առաջադրանքը նշված ժամկետում կարելի է կատարել։ Երկրի առաջավոր կոլտնտեսությունների օրինակով մենք պետք է անընդհատ բարելավենք մատղաշների խնամքը՝ ստեղծելու բոլոր պայմանները կաթնատու լավ կովեր ունենալու համար։ Եթե ամեն մի կոլտնտեսություն և սովետական տնտեսություն լավ խնամքի միջոցով վերացնի հորթերի կորուստը, ապա կովերի գլխաքանակը, չհաշված մսի համար օգտագործվող բնական խոտանը և այլ կորուստներ, մեկ տարում կավելանա 11—12 տոկոսով։ Նույնիսկ նախնական հաշվումները, որի մասին ՀԿՊ XIX համագումարին տված իր զեկուցման մեջ հանգամանորեն խոսեց ՀԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Ս. Թովմասյանը, ցույց են տալիս, որ մեր ռեսպուբլիկայում 1958—1959 թվականներին կովերի գլխաքանակը կարելի է ավելացնել 35—40 տոկոսով։

Հայտնի է, որ մսի արտադրությունն ավելացնելու գլխավոր ռեզերվը խոզաբուծությունն է, որպես անասնաբուծության առավել աճող ճյուղ։ Խոզաբուծության զարգացման գործում ունեցած թերությունների համար Դիմումում քննադատության են ենթարկված մի շարք ռեսպուբլիկաներ ու մարզեր, որոնց թվում նաև մեր ռեսպուբլիկան։ Այդ անհանդուրժելի թերությունը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում շուտափույթ կերպով վերացնելու համար անհրաժեշտ միջոցառումներ նշեց ՀԿՊ XIX համագումարը, որոնց իրագործումը լուրջ և առաջնահերթ խնդիր է։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը իրենց Դիմումում հատուկ կարևորություն են տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, հիշեցնելով մեծ Լենինի այն խոսքերը, որ աշխատանքի արտադրողականության բարձրացումը կազմում է արմատական խնդիրներից մեկը, որովհետև առանց դրա անհնարին է կենսագործել կոմունիզմի կառուցման վեհ պլանը։

Ո՞ւմ հայտնի չէ, որ մեր երկրում Կոմունիստական պարտիայի մշտական հոգատարության շնորհիվ սոցիալիստական գյուղատնտեսությունը անընդհատ հագեցվում է միլիոնավոր ժամանակակից մեքենաներով։ Ինչ խոսք, այդ հզոր տեխնիկան, նյութական այդ վիթխարի ռեսուրսները հարկավոր է օգտագործել արդյունավետ, առավել գործիմացությամբ, որպեսզի սիստեմատիկաբար իջնի արտադրանքի ինքնարժեքը և համեմատաբար բարձրանան եկամուտները։

Այս նկատի ունենալով ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը գյուղատնտեսության բոլոր աշխատողների ուշադրությունը բևեռում են արտադրության կազմակերպման տնտեսական կողմի վրա, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման և գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերի վրա։ Ահա թե որտեղ են թաքնված սոցիալիստական գյուղատնտեսության ամենամեծ ռեզերվները։

Այժմ մեր երկրի համար կենսականորեն կարևոր հարց է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության հետագա բարձրացումը։ Խնդիր է դրվում ավելացնել հացահատիկի արտադրությունը, որը գյուղատնտեսական

*ամբողջ արտադրության հիմքն է և որ առանց լավ զարգացած հացահատիկային տնտեսության առկայության չի կարելի բարձրացնել անասնաբուծությունը, չի կարելի ավելացնել տեխնիկական կուլտուրաների արտադրությունը։ Հացահատիկի արտադրության հետ միասին մեր երկրի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները պետք է բարձրացնեն նաև բամբակի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, պտղի, բանջարեղենի և մշակվող մյուս կուլտուրաների բերքատվությունը։*

*Գյուղատնտեսության ամբողջ արտադրության բարձրացման պրոբլեմը կարելի է լուծել միայն հողագործության կուլտուրան բարձրացնելու միջոցով, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում և մեքենա-տրակտորային կայաններում աշխատանքի առաջավոր փորձը, ագրոտեխնիկայի առաջավոր եղանակները արմատավորելու միջոցով։*

*Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը խնդիր են դնում օգնել կոլտնտեսություններին՝ ավելացնելու եգիպտացորենի արտադրությունը և այդ կուլտուրայի բարձր բերք ստանալ երկրի բոլոր շրջաններում։ Որպեսզի կաթի և մսի նախատեսված պլանները կատարվեն այս տարի, անցյալ տարվա համեմատությամբ պետք է 2—3 անգամ շատ հյութալի կեր ունենալ։ Այդ խնդիրը պետք է լուծել ցանքատարածությունների ընդլայնման և գլխավորապես եգիպտացորենի բերքատվության բարձրացման միջոցով։*

*ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը կոլտնտեսությունների, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների, պարտիական, սովետական ու գյուղատնտեսական օրգանների ղեկավարների ուշադրությունը հրավիրում են այն բանի վրա, որ մսի ու կաթի արտադրության հետագա ավելացման համար կպահանջվի զգալիորեն ավելացնել բոլոր տեսակի անասունների և թռչունների գլխաքանակը։*

*Անհրաժեշտ է յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովետական տնտեսությունում օգտագործել բոլոր հնարավորությունները, որպեսզի հենց այս տարի մեծ չափերով ավելանա անասունների գլխաքանակը։ Պետք է զարկ տալ նաև թռչնաբուծության, ճագարաբուծության, ձկնաբուծության, ինչպես նաև մեղվաբուծության զարգացմանը, հիշելով, որ գյուղատնտեսության այդ ճյուղերը մեր երկրի սննդի ռեսուրսների համալրման համար օժանդակ աղբյուրներ են հանդիսանում։*

*Սոցիալիստական գյուղատնտեսության նոր և հզոր վերելքի գործում վճռական դերը պատկանում է կադրերին։ Այդ է պատճառը, որ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը պարտիական, սովետական օրգաններից պահանջում են լավագույն ձևով լուծել գյուղատնտեսության բոլոր ճյուղերը կարող ու փորձված ղեկավարներով ապահովելու խնդիրը։*

*Սովետական Միության գյուղատնտեսության աշխատողների հետ միասին մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսականները, սովետական տնտեսությունների և մեքենա-տրակտորային կայանների բանվորներն ու ծառայողները ուժ և եռանդ չեն խնայի 1958 թվականը բարձր բերքի և անասնաբուծության բարձր մթերատվության տարի դարձնելու համար։*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԼԱՅՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

*Շ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ*

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ

*Մեր Հայրենիքի բազմազգ և բազմամիլիոն ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ պատրաստվում է 1958 թվականի մարտի 16-ին ընտրելու իր պետական իշխանության բարձրագույն օրգանը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետը։ Այդ ընտրությունները քաղաքական մեծագույն իրադարձություն են մեր երկրի բոլոր ժողովուրդների կյանքում։*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի նախորդ ընտրություններից անցել է ընդամենը չորս տարի, բայց այդ ժամանակաշրջանը լի է համաշխարհային պատմական նշանակություն ունեցող իրադարձություններով։ Դրանցից ամենանշանավորը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարն էր, որը կարևորագույն ուղենիշ հանդիսացավ դեպի կոմունիզմ տանող մեր հաղթարշավի ճանապարհին, ուրվագծեց մեր առաջընթացի լուսավոր ուղիները։ Անցյալ տարի սովետական ժողովուրդը և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը մեծագույն բերկրանքով նշեցին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը. ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիան ամփոփեց պայքարի ու հաղթանակների անցած քառասուն տարիների հոյակապ արդյունքները, որ ձեռք է բերել մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ։ Միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ խոշոր իրադարձություն հանդիսացավ կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցությունը։*

*Անցած չորս տարիները եղել են ՍՍՌՄ տնտեսության ու կուլտուրայի բուռն վերելքի ու ծաղկման, աշխատավորական մասսաների ստեղծագործական բեղմնավոր աշխատանքի տարիներ։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից վերջին չորս տարիներին իրականացված խոշոր միջոցառումները օգնեցին զարգացման նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու սոցիալիստական արդյունաբերությունը, բարելավելու արդյունաբերության և շինարարության ղեկավարումը, վերելքի ճանապարհ դուրս բերելու գյուղատնտեսությունը։ Մեծ գործ է կատարված բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, բնակարանային շինարարության ծավալման ուղղությամբ։ Սովետական գիտության ու տեխնիկայի աննախընթաց զարգացման, մեր մարդկանց հրաշագործ աշխատանքի մասին են վկայում երկրագնդի երկու արհեստական արբանյակների արձակումը, հրթիռաշինության և ատոմային էներգիայի բնագավառներում ձեռք բերված հոյակապ նվաճումները։*

*Մեծապես աճել է ՍՍՌՄ միջազգային հեղինակությունը։ Սովետական*

կառավարությունը համառ ջանքեր է գործադրում միջազգային կյանքում լարվածության թուլացման, խաղաղության պահպանման համար։

Անցած այդ ժամանակաշրջանում նոր ուժով դրսևորվեց Սովետական Միության ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնությունը, պարտիայի, կառավարության և ժողովրդի անխախտ միաձուլությունը։ Այդ տարիները եղել են սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու ծավալման, սովետական կարգի ու օրինականության ամրապնդման տարիներ. մեծ են հաջողությունները լենինյան ազգային քաղաքականության կենսագործման ասպարեզում։

***

Մարքսիզմ-լենինիզմը մեզ ուսուցանում է, որ յուրաքանչյուր ռևոլյուցիայի գլխավոր և արմատական հարցը՝ քաղաքական իշխանության նվաճումն է։ Ռուսաստանի բանվոր դասակարգը՝ գյուղի պրոլետարական և կիսապրոլետարական մասսաների հետ միասին բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի գլխավորությամբ 1917 թվականի նոյեմբերի 7-ին խորտակեց կապիտալիստների և կալվածատերերի տիրապետությունը Ռուսաստանում և հաստատեց բանվորների և գյուղացիների իշխանություն։ Ստեղծելով Սովետական պետությունը, մեծ Լենինը մշակեց նրա խնդիրներն ու անելիքները, թողնելով մեզ մի ամբողջ ուսմունք՝ բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության մասին։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան, զինված Լենինի այդ ուսմունքով, Սովետական պետությունը դարձրել է հզոր և կոմունիզմի կառուցման համար մեծ ուժ։ Վ. Ի. Լենինը դեռևս 1919 թվականին, բնութագրելով Սովետական իշխանությունը, ասել է. «Ի՞նչ է Սովետական իշխանությունը։ Ո՞րն է այդ նոր իշխանության էությունը, որը չեն ցանկանում կամ չեն կարող հասկանալ դեռևս շատ երկրներում։ Յուրաքանչյուր երկրի բանվորներին շարունակ ավելի ու ավելի իր կողմը գրավող այդ նոր իշխանության էությունն այն է, որ առաջ պետությունը կառավարում էին այսպես թե այնպես հարուստները կամ կապիտալիստները, իսկ այժմ առաջին անգամ պետությունը կառավարում են, այն էլ մասսայական թվով, հենց այն դասակարգերը, որոնք ճնշվում էին կապիտալիզմի կողմից» (Երկեր, հ. 29, էջ 295)։

Կապիտալիզմի երդվյալ ջատագովները փրփուրը բերաններին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո շտապեցին աշխարհով մեկ հայտարարել, թե ռուս բանվորներն ու գյուղացիները չեն կարող երկիր կառավարել և իշխանությունը պահել իրենց ձեռքում։ Նրանք միաժամանակ փորձեցին զենքի ուժով տապալել Սովետները, կազմակերպելով ամեն տեսակի դավեր, արշավանքներ երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի դեմ։ Պատմությունը հերքեց նրանց բարբաջանքները, հողմացրիվ արեց նրանց հույսերն ու ակնկալությունները։ Սովետական իշխանությունը ոչ միայն չկործանվեց, այլև առնացավ, դարձավ աշխարհի հզոր տերությունը։ Անցած քառասուն տարիները ցույց տվեցին, որ հաղթանակած բանվոր դասակարգն իր դաշնակցի՝ գյուղացիության հետ միասին ոչ միայն կարող է հաջողությամբ կառավարել երկիրը, այլև միաժամանակ այն ցույց տվեց թե ինչի են ընդունակ կապիտալի լծից ազատագրված աշխատավորական մասսաները։



ՍՍՌՄ-ը՝ աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, դարձել է փարոս կապիտալիստական ու գաղութային բոլոր երկրների աշխատավորների համար, ցույց տալով նրանց սոցիալական ու ազգային ազատագրման լուսավոր ուղին։ Սովետական Միության օրինակով ու նրա փորձով կապիտալիստական հարստահարման լուծը թոթափեցին Ասիայի ու Եվրոպայի մի շարք երկրներ, գաղութակալության ճիրաններից ազատագրվեցին Ասիայի ու Աֆրիկայի շատ ժողովուրդներ։ Ավելի ու ավելի ցայտուն է դարձել մյուս երկրների աշխատավորների համակրանքը, հարգանքը և սերը դեպի Սովետական Միությունը, դեպի նրա հերոսական բանվոր դասակարգը, կոլտնտեսական գյուղացիությունը և ժողովրդական ինտելիգենցիան։

«Աշխարհում առաջին անգամ մեզ մոտ,— գրել է Լենինը,— Ռուսաստանում պետական իշխանությունը կառուցված է այնպես, որ միայն բանվորները, միայն աշխատավոր գյուղացիներն են, բացառելով շահագործողներին, կազմում մասսայական կազմակերպությունները՝ Սովետները, և այդ Սովետներին է հանձնվում ամբողջ պետական իշխանությունը։ Ահա թե ինչու, որքան էլ բոլոր երկրներում Ռուսաստանին զրպարտեն բուրժուազիայի ներկայացուցիչները, այնուհանդերձ աշխարհում ամենուրեք «Սովետ» բառը դարձել է ոչ միայն հասկանալի, այլև պոպուլյար, սիրելի բառ բանվորների համար, բոլոր աշխատավորների համար։ Եվ ահա թե ինչու Սովետական իշխանությունը, ինչպես էլ հետապնդեն կոմունիզմի կողմնակիցներին զանազան երկրներում, Սովետական իշխանությունը անխուսափելիորեն ոչ-հեռավոր ապագայում կհաղթի ողջ աշխարհում» (Երկեր, հ. 29, էջ 295—296)։

Աշխատավորների դեպուտատների Սովետները քաղաքում և գյուղում պետական իշխանության հիմքն են, ամենամասսայական կազմակերպություններն են, որոնք ամենասերտ թելերով կապված են բանվորների, գյուղացիների և աշխատավորական լայն մասսաների հետ, լուծում են նրանց հուզող հարցերը, կազմակերպում սոցիալիստական շինարարությունը։ Սովետներն ամենամասսայականն են նրա համար, որ նրանց աշխատանքներին մասնակցում են բացի ժողովրդի ընտրյալներից՝ դեպուտատներից, նաև աշխատավորական լայն մասսաները։ Մեծ Լենինի հայտնագործած ու ստեղծած Սովետները միշտ պաշտպանել ու իրագործել են ժողովրդի կենսական պահանջներն ու շահերը, ժողովրդի հետ են և պայքարում են՝ կատարելու Կոմունիստական պարտիայի մշակած ծրագիրը։

Վ. Ի. Լենինը գրել է. «Սովետական իշխանությունը դեպի սոցիալիզմ տանող ուղին է, որը գտել են աշխատավորական մասսաները և այդ պատճառով էլ դա ճիշտ, և այդ պատճառով էլ դա անպարտելի ուղի է» (հ. 29, էջ 296)։

Սոցիալիստական ռևոլյուցիայի անցած քառասուն տարիները լիովին հաստատեցին մեծ առաջնորդի այս խոսքերը։

***

Սովետական իշխանությունն ամենադեմոկրատական կարգն է աշխարհում, Սովետների ընտրությունները՝ ամենադեմոկրատականը։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան և Գերագույն Սովետի ընտրությունների Կանոնադրության յուրաքանչյուր հոդվածը և մեր կյանքը հաստատում են, որ իրոք Սովետական իշխանությունը և Սովետների ընտրություններն ամենադեմոկրատա-

կանն են։ Սովետական Կոնստիտուցիան ասում է, որ ՍՍՌՄ-ը բան-
վորների և գյուղացիների սոցիալիստական պետություն է։ Բանվոր-
ները, գյուղացիները, ինտելիգենցիան լայնորեն մասնակցում են երկրի
կառավարման գործին, ընտրում են իշխանության տեղական և բարձրագույն
օրգանները, իշխանությունը իրենցն է՝ աշխատավորներինը, և դրա համար էլ
նա դեմոկրատական է, ժողովրդական։ Մեր Կոնստիտուցիան ասում է, որ
ամբողջ իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխա-
տավորներին՝ հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների։ Միայն
սոցիալիստական երկրում կարող է իշխանությունը պատկանել բանվորներին
և գյուղացիներին, քաղաքի և գյուղի աշխատավորներին։ Այլ է դրությունը
կապիտալիստական երկրներում։ Քանի կան շահագործող և շահագործվող
դասակարգեր, կա բուրժուական պետություն, չի կարող այնտեղ ժողովրդի
համար դեմոկրատիա և ազատություն լինել։ Կապիտալիստական աշխարհում
կա դեմոկրատիա միայն մոնոպոլիստների, կապիտալիստների, կալվածատե-
րերի և մյուս շահագործողների համար։ Վ. Ի. Լենինը «Պետության մասին»
դասախոսության մեջ, որը կարդացել է Սվերդլովի անվան համալսարանում
1919 թվականի հուլիսի 11-ին, ասել է.

«Ես արդեն Ձեզ իբրև օգնություն մատնանշել եմ Էնգելսի «Ընտանիքի,
մասնավոր սեփականության և պետության ծագումը» աշխատությունը։ Հենց
այդտեղ ասվում է, որ ամեն մի պետություն, որի մեջ գոյություն ունի հողի
և արտադրության միջոցների մասնավոր սեփականություն, որտեղ իշխում է
կապիտալը, ինչքան էլ նա դեմոկրատիկ լինի, նա կապիտալիստական պե-
տություն է, նա մեքենա է կապիտալիստների ձեռքին՝ բանվոր դասակարգը
և չքավոր գյուղացիությունը հպատակության մեջ պահելու համար։ Իսկ ընդ-
հանուր ընտրական իրավունքը, Սահմանադիր ժողովը, պառլամենտը — այդ
միայն ձև է, յուրատեսակ մի մուրհակ, որն ամենևին գործն ըստ էության
չի փոխում» (Երկեր, հ. 29, էջ 600)։

Կապիտալիստական աշխարհում գործարանները, ֆաբրիկաները, երկրի
ընդերքը, տրանսպորտը, հողը հանդիսանում են կապիտալիստների և կալվա-
ծատերերի մասնավոր սեփականություն։ Բանվորը զուրկ է արտադրության
միջոցներից, նրա սեփականությունը միայն իր բանվորական ուժն է, որը նա
վաճառում է կապիտալիստին, գյուղացին մշակում է հողը, բայց ոչ իր հա-
մար։ Այդպես է կապիտալի աշխարհի օրենքը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան փշրեց և հիմնահա-
տակ արեց հին հասարակարգը Ռուսաստանում, ստեղծեց նոր սոցիալիստա-
կան կարգեր և դրան համապատասխան վերացրեց արտադրության միջոց-
ների, երկրի ընդերքի, հողի մասնավոր սեփականությունը և այն դարձրեց
համաժողովրդական սեփականություն։

Այսօր էլ դեռ բուրժուական հասարակության պնակալեզները փորձում են
ապացուցել, որ կապիտալիստական երկրներում իշխանությունը և ընտրու-
թյունները դեմոկրատական են։ Դրանով նրանք կարող են միայն խաբել մո-
լորվածներին։ Ամեն մի սովետական մարդ լավ է իմանում, թե իրենից ինչ
է ներկայացնում բուրժուական դեմոկրատիան։ Վ. Ի. Լենինը խոսելով այս-
պես կոչված դեմոկրատական երկրների մասին, գրել է.

«Դրա օրինակ են Շվեյցարիան Եվրոպայում, Հյուսիս-Ամերիկյան Միաց-
յալ Նահանգները՝ Ամերիկայում։ Ոչ մի տեղ կապիտալը չի իշխում այնքան



ցինիկաբար ու անողոք, և ոչ մի տեղ դա չի երևում այնպիսի պարզությամբ,
ինչպես հենց այդ երկրներում, թեև դրանք դեմոկրատական ռեսպուբլիկաներ
են, ինչքան էլ դրանք գեղազարդված լինեն, չնայած բոլոր խոսքերին՝ աշ-
խատանքային դեմոկրատիայի, բոլոր քաղաքացիների հավասարության մասին»
(Երկեր, հ. 29, էջ 602)։

Այս խոսքերը Լենինն ասել է դեռևս 1919 թվականին, բայց որքան այժ-
մեական են հնչում դրանք նաև մեր օրերում։ Ամերիկյան մոնոպոլիստները
ցինիկաբար և անողոք շահագործում են ոչ միայն ԱՄՆ-ի բանվորներին, այլև
շատ ուրիշ երկրների աշխատավորներին, կողոպտում նրանց հարստություն-
ները։ Ընտրական բազմաթիվ սահմանափակումների հետևանքով ԱՄՆ-ում
ավելի քան 10 միլիոն աշխատավորներ չեն մասնակցում ընտրություններին։
Կապիտալիստական երկրների տերերը բարբաջում են իրենց մոտ եղած «դե-
մոկրատիայի» մասին, սակայն ինչ դեմոկրատիայի մասին կարող է խոսք
լինել, երբ կապիտալիստական ոչ մի երկրում բանվորներն ու գյուղացիները
հնարավորություն չունեն ընտրվելու պառլամենտում։

«Կապիտալի ուժը ամեն ինչ է,— շարունակում է Լենինը,— բորսան
ամեն ինչ է, իսկ պառլամենտը, ընտրությունները խրտվիլակներ են, տիկնիկ-
ներ... Բանվոր դասակարգի համար ավելի ու ավելի պարզ է դառնում կապի-
տալիստների դեմ անողոք պայքարի անհրաժեշտությունը» (Նույն տեղ,
էջ 603)։

Մինչեռ իրականում, մեզ մոտ, ՍՍՌՄ-ում կա բառիս լայն իմաստով ընտ-
րական դեմոկրատիա։ Խոսքով չէ, որ մենք ասում ենք մեր իշխանությունը և
նրա օրգաններն ամենադեմոկրատականն են։ Խոսքով չէ, որ մենք ասում ենք,
որ Սովետների ընտրություններն ամենադեմոկրատականն են։ Այդ մենք գոր-
ծով ենք ցույց տալիս, այդ ցույց են տալիս Սովետների գործունեությունը և
նրանցում ընտրված դեպուտատների կազմը։ Սովետներում ներկայացված են
բանվորներն ու գյուղացիները, բոլոր աշխատավորներն ու ժողովրդական
ինտելիգենցիայի ներկայացուցիչները։ Այդ մասին պարզ արձանագրված է
Սովետական Միության Կոնստիտուցիայում։ ՍՍՌՄ Կոնստիտուցիայում աս-
ված է, որ աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրություն-
ները կատարում են ընտրողներն ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրա-
կան իրավունքի հիման վրա՝ գաղտնի քվեարկությամբ։ Այնուհետև ասված է
Կոնստիտուցիայում և ընտրական Կանոնադրությունում, որ ՍՍՌՄ-ում 18
տարին լրացած բոլոր քաղաքացիները, անկախ ռասայական ու ազգային
պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցու-
թյունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործու-
նեությունից, իրավունք ունեն մասնակցելու դեպուտատների ընտրություննե-
րին։ Մեր երկրում կանայք տղամարդկանց հետ համահավասար մասնակցում
են ընտրություններին, իրավունք ունեն ընտրելու և ընտրվելու։ ՍՍՌՄ-ում
Սովետների ընտրություններին իրավունք չունեն մասնակցելու միայն խելա-
գարները և այն անձինք, որոնք դատարանի կողմից զրկված են ընտրական
իրավունքից։ Այնուհետև Կոնստիտուցիայում ասված է, որ ՍՍՌՄ-ի Գերա-
գույն Սովետի դեպուտատ կարող է ընտրվել ՍՍՌՄ-ի 23 տարին լրացած յու-
րաքանչյուր քաղաքացի, անկախ ռասայական և ազգային պատկանելությու-
նից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալա-
կան ծագումից, գույքային դրությունից, անցյալ ծառայությունից։

Սովետների ընտրությունների ժամանակ դեպուտատների թեկնածուներ առաջադրելու իրավունք ունեն աշխատավորների հասարակական կազմակերպությունները և ընկերությունները՝ կոմունիստական կազմակերպությունները, պրոֆեսիոնալ միությունները, կոոպերատիվները, երիտասարդական կազմակերպությունները, կուլտուրական ընկերությունները։ Այսպիսով, ընտրություններին մասնակցում է ամբողջ ժողովուրդը և նա ընտրում է իր իշխանության բարձրագույն օրգանը՝ Գերագույն Սովետը։ Վերը շարադրածի հիման վրա է, որ մենք ասում ենք, թե մեր ընտրություններն ամենադեմոկրատական ընտրություններն են։

Սոցիալիստական երկրներում նույնպես պետական իշխանության օրգանները ընտրվում են ամենադեմոկրատական ձևով, ամբողջ ժողովուրդն է ընտրում իշխանության օրգանները։

Չինաստանի 600 միլիոնանոց մեծ ու հերոս ժողովուրդը, Հյուսիսային Կորեայի, Վիետնամի, Մոնղոլիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Ալբանիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի, ինչպես նաև Հարավսլավիայի ժողովուրդները գնացին Լենինի նշած ուղիով, համառ պայքարի միջոցով վերացրին կապիտալիստների ու կալվածատերերի լուծը, հաստատեցին իրենց հարազատ ժողովրդական իշխանությունը։ Սոցիալիստական լագերի մեջ մտնող ռեսպուբլիկաներում ամենուրեք ծավալվում է դեմոկրատիան և ամբողջ ժողովրդի ակտիվ մասնակցությունը երկրի կառավարման գործին։

Մեծ Հոկտեմբերի 40 տարիների ընթացքում սիստեմատիկ կերպով ընդարձակվել և զարգացել է սոցիալիստական դեմոկրատիան։ Մինչև 1937 թվականը Սովետների ընտրությունները կատարվում էին բաց. գյուղական Սովետները ընտրվում էին գյուղի աշխատավորների ընդհանուր ժողովներում, շրջանային և քաղաքային Սովետները՝ համագումարներում, Կենտրոնական գործադիր կոմիտեները՝ ռեսպուբլիկաների և Սովետական Միության խորհուրդների համագումարներում։ 1937 թվականի դեկտեմբերի 12-ին տեղի ունեցան ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին ընտրությունները ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա, գաղտնի քվեարկությամբ։ Արդեն քսան տարուց ավելի է, որ բոլոր Սովետների ընտրությունները կատարվում են վերը նշված սկզբունքներով։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների, աշխատավորների դեպուտատների երկրամասային, մարզային, քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետների անցած ընտրությունների ժամանակ մեր ժողովուրդը ցույց է տվել իր համախմբվածությունը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական իշխանության շուրջը, իր նվիրվածությունը, բարոյական-քաղաքական միասնությունը և պատրաստակամությունը՝ կատարելու կոմունիզմի կառուցման համար պարտիայի մշակած ծրագիրը։

Սովետական ժողովուրդն իր ուժերի ծաղկման ու զարգացման պայմաններում է, որ պատրաստվում է այս տարի ընտրելու իր հարազատ իշխանության բարձրագույն օրգանը՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետը։ Մեր աշխատավորներն իրենց նախընտրական ժողովներում արդեն առաջադրել են Գերագույն Սովետի դեպուտատների թեկնածուները. նրանք Կոմունիստական պարտիայի և անպարտիական բլոկի թեկնածուներն են, պարտիայի ու կառավարության ղեկավարները, մեր Հայրենիքի անվանի մարդիկ։ Կասկած չկա, որ ինչպես



միշտ, այնպես էլ այս անգամ մեր ընտրողները մարտի 16-ին, մեկ մարդու նման կմոտենան ընտրական քվեատուփերին և իրենց ձայնը կտան կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, դրանով իրենց ձայնը կտան Կոմունիստական պարտիայի անմահ գործին, մեր սիրելի Հայրենիքի տնտեսական, քաղաքական և ռազմական հզորացման և կոմունիզմի կառուցման գործին։ Այս ընտրություններին ժողովուրդը նորից և նորից ցույց կտա իր բարոյական-քաղաքական միասնությունը և իր նվիրվածությունը լենինիզմին։ Ամբողջ աշխարհի առաջ մի անգամ ևս ցույց կտրվի մեր ընտրությունների իսկական դեմոկրատական լինելը, դեմոկրատիա, որը ծնունդ է առել Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից և ծառայում է ռևոլյուցիայի նվաճումները, կոմունիզմի կառուցման գործը և ժողովրդի շահերը պաշտպանելու նպատակին։

Ամբողջ երկրով մեկ ծավալվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստությունը։ Այն բանից, թե ինչպես է կազմակերպված քաղաքական և կազմակերպական աշխատանքը, մեծապես պայմանավորված է ընտրությունների հաջողությունը։ Այդ առումով խոշոր խնդիրներ են դրվում մեր պարտիական, սովետական, պրոֆմիութենական, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների առաջ՝ բարձր մակարդակով անցկացնելու ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները։ Անհրաժեշտ է պրոպագանդիստական և ագիտացիոն մեծ աշխատանք ծավալել ՍՍՌՄ Կոնստիտուցիայի և ընտրությունների Կանոնադրության շուրջը, ցույց տալ սովետական դեմոկրատիայի առավելությունները և նրա ամբողջ վեհությունը, ՍՍՌՄ մեծագույն հաջողությունները, պարզաբանել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունը։ Ամենուրեք ընտրական տեղամասերում և օկրուգներում ու նրանց հանձնաժողովներում պետք է ծավալել քաղաքական, կազմակերպչական ու նախապատրաստական աշխատանքներ։ ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի Ընտրու-
թյունները քաղաքական խոշորագույն գործ է և այն պահանջում է մեր բոլոր
կազմակերպություններից մեծ ուշադրություն, կազմակերպական լուրջ աշ-
խատանք։

***

ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի ընտրությունները պետք է նպաստեն աշ-
խուժացնելու և վճռականորեն բարելավելու Սովետների գործունեությունը,
բարձրացնելու նրանց դերը կոմունիստական շինարարության գործում։ ՍՄԿՊ
XX համագումարը բացահայտեց Սովետների աշխատանքում տեղ գտած լուրջ
թերությունները։ Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն
Սովետների սեսիաները ուշ-ուշ էին հրավիրվում, թույլ էին տրվում Կոնստի-
տուցիայի խախտումներ, վատ էին կազմակերպված դեպուտատների հաշվե-
տվությունները ընտրողների առաջ, տեղական Սովետները բավարար չէին
զբաղվում տնտեսական-կուլտուրական շինարարության հարցերով և այլն։
ՍՄԿՊ XX համագումարից հետո անցել է երկու տարի և այս կարճ ժամանա-
կում զգալի աշխատանք է կատարված Սովետների գործունեության բարելավ-
ման ուղղությամբ։ Այդ կարելի է տեսնել Հայկական ՍՍՌ-ի Գերագույն և
տեղական Սովետների օրինակով. մեզ մոտ վերացվել են Կոնստիտուցիայի

*խախտումները, ժամանակին հրավիրվում են սեսիաները: Գերագույն Սովետը սեսիաներում քննության է առնում արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, կուլտուրայի, բյուջեի և այլ հարցեր: Պետք է ասել, որ Գերագույն Սովետի Նախագահությունն իր հերթին սկսել է մոտիկից զբաղվել օրենսդրական հարցերով: Տեղական Սովետները վերակառուցվել են և ավելի մոտիկից են զբաղվում տնտեսական-կուլտուրական շինարարության հարցերով: Զգալիորեն բարելավվել է Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների դեպուտատների հաշվետվությունների իրենց ընտրողների առաջ, ուժեղացել է սերտ կապը նրանց հետ: Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետին առընթեր ստեղծվել են նոր հանձնաժողովներ՝ արդյունաբերության և տրանսպորտի, գյուղատնտեսության, կուլտուրայի և լուսավորության, առողջապահության, սոցիալական ապահովության և առևտրի:*

*Կարելի է ասել, որ զգալի աշխատանք են տանում Գերագույն Սովետի մշտական հանձնաժողովները և մոտիկից օգնում են սեսիաների նախապատրաստմանը և Գերագույն Սովետի Նախագահությունում քննարկվելիք հարցերի մշակմանը: Գերագույն Սովետի դեպուտատների մեծ մասը ակտիվորեն մասնակցում է Սովետների առջև դրված խնդիրների կատարմանը:*

*Սովետական կազմակերպությունները երկրի ամենամասսայական կազմակերպություններն են, նրանք ամեն ժամ, ամեն օր կապված են բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետ, ամբողջ ժողովրդի հետ: Սակայն Սովետների աշխատանքներում դեռևս կան թերություններ ու բացեր:*

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների առաջնակարգ խնդիրն է՝ մինչև վերջ և անշեղորեն կենսագործել ՍՄԿՊ-ի XX համագումարի որոշումները՝ Սովետների աշխատանքների աշխուժացման, սովետական դեմոկրատիայի առավել զարգացման և ՍՍՌՄ-ի Կոնստիտուցիայի անշեղ կիրառման մասին:*

*ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները տեղի են ունենում քաղաքական և աշխատանքային նոր վերելքի պայմաններում: Սովետական ժողովուրդը ջանքեր չի խնայում կատարելու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից նրա առջև դրված խոշորագույն խնդիրները՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, կուլտուրայի, արվեստի, գիտության ու տեխնիկայի հետագա զարգացման, երկրի պաշտպանության ամրապնդման, սովետական ժողովրդի նյութական-կենցաղային պայմանների առավելագույն լավացման և այլ բնագավառներում:*

*ՍՍՌՄ-ի Գերագույն Սովետի ընտրությունները պետք է դարձնել լավագույն միջոցներից մեկը՝ մեր ժողովրդին է՛լ ավելի համախմբելու և մոբիլիզացնելու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի շուրջը և նրա իմաստուն ղեկավարությամբ պատիվով կատարելու կոմունիստական շինարարության հոյակապ պլանները:*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ 40 ՏԱՐԻՆ

## Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

*Լրացավ Սովետական հզոր պետության Զինված Ուժերի գոյության 40 տարին: Մեզ հետ միասին այդ փառապանծ տարեդարձը նշում են սոցիալիստական լագերի բոլոր երկրների ժողովուրդները, աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը:*

*Սովետական Բանակի և Ռազմա-ծովային Նավատորմի ամբողջ պատմությունը սերտորեն կապված է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի և նրա շնորհիվ ստեղծված Սովետական սոցիալիստական պետության պատմության հետ:*

*Լենինը, հենվելով բանվորական շարժման պատմության հարուստ փորձի վրա, հատկապես հաշվի առնելով Փարիզյան Կոմունայի դասերը, գտնում էր, որ բանվոր դասակարգի ազատագրման մեծ պայքարի ճանապարհին, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի գլխավոր գրավականներից մեկը կլինի հին պետական մեքենայի ջախջախումը և նորի ստեղծումը:*

*Ընդգծելով հին պետական մեքենայի ջախջախման կարևորությունը՝ Լենինը հատկապես նշում էր հին բանակը ցրելու և նորը կազմակերպելու անհրաժեշտությունը:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի հենց առաջին իսկ օրերից հին աշխարհի բոլոր ռեակցիոն ուժերը, կոնտրռևոլյուցիոն և համաձայնողական պարտիաները, հենվելով երկրի ներքին բուրժուակալվածատիրական դասակարգերի ու միջազգային իմպերիալիզմի անմիջական աջակցության վրա, կատաղի պայքար ծավալեցին երիտասարդ Սոցիալիստական պետության դեմ: Այդ պայքարում կոնտրռևոլյուցիայի ուժերը գործի դրին հին բանակի վերնախավը՝ գեներալիտետը, սպայակազմի զգալի մասը, որն, իր շուրջը համախմբած նախկին բանակի մնացորդները, արշավում էր դեպի Մոսկվա, Պետրոգրադ: Երիտասարդ Սովետական պետության համար ստեղծված այդ ծանր պայմաններում Կոմունիստական պարտիան Լենինի առաջարկությամբ անհապաղ ձեռնամուխ եղավ կազմակերպելու մի նոր բանակ, Սոցիալիստական պետության բանակ, որը կազմված լիներ առավել գիտակից բանվորներից ու գյուղացիներից:*

*1918 թվականի հունվարի 28-ին Ժողովրդական Կոմիսարների Սովետը Լենինի ստորագրությամբ դեկրետ հրապարակեց բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու, իսկ փետրվարի 14-ին՝ Ռազմա-ծովային Կարմիր Նավատորմ կազմակերպելու մասին: Մինչև 1918 թվականի հուլիսի 18-ը բանակը հիմնված էր կամավոր սկզբունքների վրա: Եվ հենց այդ ամիսներին հազարավոր բանվորներ ու ազնիվ քաղաքացիներ կամովին համալրում էին ռևոլյուցիայի բանակը:*

*1918 թվականի փետրվարի 25-ին միայն Պետրոգրադում կամավոր եղանակով բանակ մտան 5500 մարդ, մարտի մեկին՝ 15,300 մարդ, իսկ ապրիլի մեկին՝ 25000 մարդ։ Նույն թվականի ապրիլի մեկին Մոսկվայում կամավոր կերպով Կարմիր Բանակի շարքերը համալրեցին ևս 10,307 մարդ։ Ձեռնամուխ լինելով բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի կազմակերպման դժվարին գործին, Կոմունիստական պարտիան հանդիպեց լուրջ դժվարությունների։ Մեր երիտասարդ սոցիալիստական պետությունը չուներ փորձված հրամանատարներ, ռազմական մասնագետներ, անհրաժեշտ քանակի զենք, զինամթերք, հանդերձանք և պարեն։*

*Չնայած այդ բոլորին, սովետական նորաստեղծ պետության քաջարի բանակի ռազմիկները, անհունորեն նվիրված իրենց Հայրենիքին, հերոսաբար մարտնչում էին սովետական Հայրենիքի ազատության և անկախության համար։*

*1918 թվականի փետրվարի 23-ին դեպի Պետրոգրադ շարժվող գերմանական կայզերական բանակի զորամասերը ծանր պարտություն կրեցին կարմիր զորագնդերի կողմից։ Այդ հաղթանակը ցույց տվեց, որ ռևոլյուցիոն պաթոսով լեցուն աշխատավորական զանգվածները ընդունակ են կրծքով պաշտպանելու իրենց ազատությունը, իրենց նոր, Սոցիալիստական Հայրենիքը։ Լենինի առաջարկությամբ փետրվարի 23-ը հայտարարվեց Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակի և Ռազմա-ծովային Նավատորմի ստեղծման օր։*

*Երկրի ռազմական շինարարության գործի անմիջական կազմակերպման ու խոշոր զորական միավորումների, ռազմաճակատների գործողությունները համաձայնեցված կերպով ղեկավարելու համար Ժողկոմսովետը հիմնում է համառուսական կոլեգիա՝ Ն. Վ. Կռիլենկոյի և Ն. Ի. Պոդվոյսկու գլխավորությամբ, իսկ հետագայում ստեղծվում է Աշխատանքի և Պաշտպանության Խորհուրդ, որը ղեկավարում էր Վ. Ի. Լենինը։*

*1918-1921 թթ. մեր երկիրն ապրում էր քաղաքացիական պատերազմների և ինտերվենցիայի ծանր օրեր։ Ինտերվենցիայի անմիջական կազմակերպիչները եղել են՝ ԱՄՆ-ի պրեզիդենտ Վիլսոնը, ֆրանսիական կառավարության նախագահ Կլեմանսոն, Անգլիայի պրեմիեր մինիստր Լլոյդ Ջորջը և ռազմական մինիստր Ու. Չերչիլը։*

*Հենվելով իմպերիալիստական պետությունների նյութական և ռազմական աջակցության վրա՝ Կոլչակի, Դենիկինի, Կրասնովի, Մամոնտովի, Յուդենիչի և մյուս սպիտակգվարդիական գեներալների գլխավորած բանակները գրոհի անցան մեր երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի դեմ արևելքից, հարավից, հյուսիսից և հյուսիս-արևմուտքից։*

*Առավել ծանր, կրիտիկական տարի հանդիսացավ 1919 թվականը, երբ Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի տերիտորիայի մոտ երեք քառորդ մասը օկուպացիայի էր ենթարկված կոնտրռևոլյուցիոն բանակների կողմից։ Շատերն արտասահմանում և մեր երկրի ներսում կարծում էին, որ Սովետական ռեսպուբլիկայի օրերը հաշված են։ Սակայն Կարմիր Բանակը և Նավատորմը հենվելով աշխատավորական ամենալայն մասսաների ակտիվ աջակցության վրա, Կոմունիստական պարտիայի անմիջական ղեկավարությամբ կարողացան հաղթանակով դուրս գալ այդ անհավասար պայքարից։ Բանվոր դասակարգի և աշխատավորության ծոցից դուրս եկավ տաղանդավոր ռազմական կազմակերպիչների ու հրամանատարների մի ամբողջ սերունդ, որը*



*պարտիայի Կենտկոմի անմիջական ղեկավարությամբ, ռեսպուբլիկայի Ռազմա-հեղափոխական Սովետի գլխավորությամբ ղեկավարում էր կարմիր զորամասերի ռազմական գործողությունները։*

*Քաղաքացիական կռիվների տարիներին առանձնապես մեծ դեր խաղացին զորավարներ Ֆրունզեն, Վորոշիլովը, Բուդյոննին, Եգորովը, Բլյուխերը, Տուխաչևսկին, Դիբենկոն և շատ ուրիշներ։ Տասնյակ տարիներ ու դարեր Սովետական Միության ապագա սերունդները խորին երախտագիտությամբ կհիշեն քաղաքացիական կռիվների լեգենդար հերոսներ Չապաևին, Շչորսին, Պարխոմենկոյին, Կոտովսկուն, Լազոյին, Դունդիչին, ծովային Ժելեզնյակովին և ուրիշների։ Կոմունիստական պարտիայի առավել աչքի ընկնող գործիչները՝ Ստալինը, Կիրովը, Օրջոնիկիձեն, Միկոյանը, Կույբիշևը, Կալինինը, Յարոսլավսկին, Պետրովսկին, Բուբնովը և մյուսները լինելով ռազմաճակատների ու բանակների ռազմական սովետի անդամներ, գլխավորում էին բանակի քաղաքական պարտիական աշխատանքը, ամրացնում սովետական կարգերը սպիտակգվարդիականներից ազատագրված տերիտորիաներում։*

*Հայ ժողովրդի լավագույն զավակներից քաղաքացիական կռիվներին հերոսական մասնակցություն ունեցավ «երկաթյա» կոչված դիվիզիայի հրամանատար Հայկ Բժշկյանը (Բանվոր Գայը), որի դիվիզիան առաջիններից մեկն էր, որ կոլչակյան բանդաներից ազատագրեց Վ. Ի. Լենինի ծննդավայրը՝ Սիմբիրսկ քաղաքը (այժմ Ուլյանովսկ)։ Սովետական Բանակի ականավոր կազմակերպիչներից ու ղեկավարներից է եղել Ալ. Մյասնիկյանը (Մարտունին), որը հատկապես մեծ դեր է խաղացել Բելոռուսիայի ազատագրման համար մղված մարտերում։ Տասնյակ, հարյուրավոր հայ կոմունիստներ մեր բանակի ստեղծման առաջին իսկ օրերից մտել են նրա շարքերը և մինչև վերջ պատվով կատարել իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։*

*Քաղաքացիական կռիվներին մեր հաղթանակների անմիջական կազմակերպիչն ու ոգեշնչողը եղել է Կոմունիստական պարտիան, որի լավագույն զավակներից մոտ 50000 հոգի հերոսական մահով ընկան մարտի դաշտում։*

*Վ. Ի. Լենինը զինված ուժերի ու ամբողջ աշխատավորության պայքարի ոգին էր։ Նա անմիջական մասնակցություն էր ունենում բոլոր կարևոր ռազմական պլանների մշակման և իրականացման գործում։ Իր կոչերով, նամակներով, հեռագրերով, հոդվածներով, ամենօրյա բանավոր ելույթներով՝ բանվորական և զինվորական միտինգներում Լենինը կոչ էր անում վճռական մարտերի ելնել Կոլչակի, Դենիկինի, Վրանգելի, սպիտակ լեհերի դեմ։ Լենինը հոգում էր բանակի թիկունքի, կարմիրբանակայինների նյութական կարիքների բարելավման մասին, կազմակերպում բանակի մատակարարման դժվարին գործը, օգնության կանչելով ամբողջ պարտիական և պետական ապարատը։*

*Պատերազմի ժամանակ Լենինը մեծ նշանակություն էր տալիս բարոյական գործոնին։ Ամեն մի պատերազմում, ասում է Լենինը, հաղթանակը վերջին հաշվով պայմանավորվում է այն մասսաների բարոյական ոգով, որոնք մարտի դաշտում արյուն են թափում, իսկ մասսաների բարոյական վիճակը պայմանավորվում է ամենից առաջ պատերազմի բնույթով (արդարացի՞ է այն, թե անարդարացի), երկրի հասարակական քաղաքական կարգով, մասսաների վերաբերմունքով դեպի կառավարող դասակարգերն ու կառավարությունները։*

*Կոմունիստական պարտիայի վարած պրոլետարական ինտերնացիոնա-*

վիզմի քաղաքականության շնորհիվ քաղաքացիական պատերազմի տարինե-
րին Ռուսաստանի բանվոր դասակարգի պայքարը սերտորեն միահյուսվեց
բոլոր երկրների աշխատավորության պայքարի հետ։ Այդ է պատճառը, որ
բացի մեր երկրի աշխատավորությունից քաղաքացիական կռիվների տարինե-
րին զենքը ձեռքին կոնտրռևոլյուցիայի դեմ կռվեցին մոտ 80.000 հունգարա-
ցիներ, որոնք գտնվում էին Ռուսաստանում։ Դրանցից էր ականավոր ռևո-
լյուցիոներ Բելա Կունը։ Ստեղծվել էին Չեխական, Հարավսլավական, Լեհա-
կան, Չինական, Կորեական լեգեոններ։

Քաղաքացիական պատերազմները ավարտվեցին երիտասարդ Սովետա-
կան պետության հաղթանակով։ Արտաքին ու ներքին կոնտրռևոլյուցիոն ուժե-
րը ծանր պարտություն կրեցին։ Սովետական երկիրը, խորտակելով ռազմա-
կան և տնտեսական բլոկադան, ձեռնամուխ եղավ խաղաղ սոցիալիստական
շինարարության։

Հանճարեղ կերպով վերլուծելով միջազգային իրադարձություններն ու
դասակարգային ուժերի փոխհարաբերությունները, Լենինը զգուշացնում էր,
որ քաղաքացիական պատերազմի հաղթական ավարտից հետո մենք պետք
է շարունակենք աչքի լույսի պես պահպանել մեր երկրի Զինված Ուժերը,
մշտական հոգ տանենք նրանց սպառազինման մասին և զգոն լինենք՝ ժամա-
նակին ուժգին հակահարված տալու մեր Հայրենիքի դեմ ոտնձգություններ
կատարողներին։

Քաղաքացիական պատերազմից հետո սովետական ժողովուրդը Կոմու-
նիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղավ երկրի տնտեսա-
կան վերականգնման ու վերակառուցման գործին։ Իրականացնելով Լենինի
հանճարեղ ցուցումները՝ Կոմունիստական պարտիան առավել ուշադրություն
դարձրեց երկրի ինդուստրացման վրա, որը հանդիսանում է մեր Հայրենիքի
ժողովրդական տնտեսության առաջընթացի հիմքերի հիմքն ու պաշտպանու-
թյան ամրապնդման աղբյուրը։

Երկրի էկոնոմիկայում տեղի ունեցած լուրջ փոփոխությունները բարե-
նպաստ ազդեցություն ունեցան մեր Զինված Ուժերի հետագա ամրապնդման
գործում։ Բանակն ու Նավատորմը ստացան անհրաժեշտ քանակությամբ նոր
տիպի հրանոթներ, տանկեր, օդանավեր, ավտոմոբիլներ և այլ անհրաժեշտ
ռազմական տեխնիկա, զենք ու զինամթերք։ 1930 թվականի հետ համեմա-
տած, 1939 թվականին տանկերի քանակը ավելացել էր 6,5 անգամ, հրանոթ-
ներինը՝ մոտ 7 անգամ, հակատանկային հրետանունը՝ 70 անգամ, գնդացիր-
ներինը՝ 5 անգամ։ Բարձրագույն և միջին ռազմական ուսումնական հաստա-
տություններում պատրաստվում էին հազարավոր երիտասարդ հրամանատար-
ներ, քաղաքական աշխատողներ և մասնագետներ։

Խաղաղ տարիները երկար չտևեցին։ 1938—1939 թթ. միջազգային դրու-
թյունը խիստ բարդացավ։ Արդեն 1938 թվականին Գերմանիան իր արդյունա-
բերական համախառն արտադրանքով անցել էր Անգլիայից, Ֆրանսիայից և
կապիտալիստական աշխարհում, ԱՄՆ-ից հետո, գրավում էր երկրորդ տեղը։
Սրվել էին հակասությունները իմպերիալիստական պետությունների միջև։
Միաժամանակ ստեղծվել էր գերմանո-իտալո-ճապոնական ռազմական բլո-
կը՝ «Հակակոմինտերնյան պակտ» անվան տակ։

Իմպերիալիստական պետությունների թողտվության ու քաջալերման
պայմաններում, 1938 թվականին ճապոնական նենգ իմպերիալիստները



Խասան լճի շրջանում, Հեռավոր Արևելքում, հարձակվեցին Սովետական
Միության վրա։

Հետախուզական պրովոկացիոն նպատակով սկսված այդ ավանտյուրան
հեռավոր արևելյան Կարմիր Բանակի կողմից լիովին ջախջախվեց։ Նույնպիսի
ավանտյուրա ճապոնական ագրեսիվ շրջանները սկսեցին 1939 թվականին
Մոնղոլական ժողովրդական Ռեսպուբլիկայի տերիտորիայում, Խալխին Գոլ
գետի շրջանում։ Սովետական Միությունը, որը ՄԺՌ-ի հետ կապված էր փո-
խադարձ օգնության պայմանագրով, վճռական հակահարված հասցրեց ճա-
պոնական սամուրայներին։

Դրությունը Եվրոպայում սրվում էր։ Ֆաշիստական Գերմանիան Հիտլերի
գլխավորությամբ մեկը մյուսի հետևից զավթում էր կենտրոնական Եվրոպայի
երկրները։

1939 թվականի սեպտեմբերի մեկին գերմանական բանակը հարձակվեց
Լեհաստանի վրա և ջախջախելով լեհական բանակը՝ շարժվեց դեպի Արևելք։
Այդ պայմաններում Սովետական կառավարության որոշմամբ, սեպտեմբերի
17-ին Սովետական Զինված Ուժերն անցան Սովետա-լեհական սահմանը
և եղբայրական օգնության ձեռք մեկնեցին Արևմտյան Ուկրաինայի և
Արևմտյան Բելոռուսիայի աշխատավորությանը, ազատագրելով նրանց բուր-
ժուա-կալվածատիրական շահագործումից։

Հաշվի առնելով Եվրոպայում ստեղծված ռազմաքաղաքական դրությունը՝
Սովետական Միությունը միջոցներ ձեռնարկեց իր հյուսիս-արևմտյան սահ-
մանների պաշտպանության ամրապնդման ուղղությամբ։ Սովետական Միու-
թյան այդ միջոցառումներին լուրջ խոչընդոտներ էին հարուցում ֆիննական
ռեակցիոն շրջանները։ Սովետական Զինված Ուժերը 1939 թվականին ստիպ-
ված էին ձմռան ծանր պայմաններում մարտեր մղել ֆիննական բանակի դեմ
և ապահովել Լենինգրադի անվտանգությունը հյուսիսից։

***

1941 թվականի հունիսի 22-ին ֆաշիստական Գերմանիան, ուխտադրուժ
կերպով խախտելով Սովետա-գերմանական՝ միմյանց վրա չհարձակվելու
պայմանագիրը, հարձակվեց ՍՍՌՄ-ի վրա։ Երեք գլխավոր ուղղություններով
Սովետական հայրենիքի արևմտյան սահմանները ներխուժեցին 153 դիվիզիա,
մեծ քանակությամբ տանկերով ու ավիացիայով։ Գերմանիային ռազմական
անմիջական օգնություն էին ցույց տալիս՝ Ֆինլանդիան, Ռումինիան, Հուն-
գարիան, Իտալիան, Իսպանիան և արևմտա-եվրոպական մյուս երկրները,
որոնք դուրս էին բերել 37 դիվիզիա։

Սկսվեց մեր ժողովրդի և, հատկապես, մեր բանակի պատմության մեջ
ամենածանր շրջաններից մեկը՝ Հայրենական Մեծ պատերազմը։ Մոտ չորս
տարվա ընթացքում (1941—1945) սովետական ժողովուրդը և նրա Զինված
Ուժերը, սովետական պետական ու հասարակական կարգը ենթարկվեցին
ամենադաժան փորձությունների։ Անցյալում ոչ մի ժամանակ մեր երկրի ժո-
ղովուրդներին չէր վիճակվել պայքարել այնպիսի ուժեղ թշնամու դեմ, որպի-
սին գերմանա-ֆաշիստական բանակներն էին 1941 թվականին։ Հիշենք, որ
ֆաշիստական Գերմանիան իր տրամադրության տակ ուներ համարյա ամբողջ
Արևմտյան Եվրոպայի նյութական ու մարդկային խոշոր ռեսուրսները։ Պա-

տերազմը Գերմանիայի համար սկսվեց խիստ նպաստավոր պայմաններում։

Սկզբնական շրջանում գերմանական զորքերը որոշակի հաջողություններ ունեցան և ժամանակավորապես օկուպացիայի ենթարկեցին մեր երկրի զգալի մասը։ Կարմիր Բանակըստիպված եղավ ժամանակավորապես նահանջել դեպի երկրի խորքերը։ Սակայն այդ ժամանակավոր անհաջողությունները ոչ մի րոպե չսասանեցին սովետական ժողովրդի ու նրա բանակի ռազմիկների հավատն ու կամքը դեպի վերջնական հաղթանակը։ Սովետական Զինված Ուժերի մարտիկները, ցուցաբերելով հերոսության, խիզախության, անձնազոհության չգերազանցված օրինակներ, թշնամուն ցույց տվին համառ դիմադրություն։ Ծանր մարտերում նրանք մեծ կորուստներ էին պատճառում թշնամուն, թուլացնում նրա հարձակողական ուժն ու կարողությունը։ Գերմանական հրամանատարության, այսպես կոչված, «կայծակնային հարձակման» պլանը, որ նկատի ուներ երկու-երեք ամսում ավարտել պատերազմը արևելքում, ձախողվեց։ Թշնամին համոզվեց, որ Կարմիր Բանակը հիմնովին տարբերվում է այն բանակներից, որոնց հետ գործ էին ունեցել հիտլերյան բանակները մինչև ՍՍՌՄ-ի վրա հարձակվելը։

Պատերազմի առաջին շրջանում իրենց Հայրենիքը պաշտպանելու հերոսության փայլուն օրինակներ ցույց տվեցին Լենինգրադի, Օդեսայի, Սևաստոպոլի, Մոսկվայի պաշտպանները։

Բրեստ քաղաքի ամրոցի պաշտպանները, երկար ժամանակ գտնվելով շրջապատման մեջ, զրկված լինելով արտաքին աշխարհի հետ որևէ կապից, ամբողջ մի ամիս շարունակում էին հերոսաբար ետ մղել թշնամու գրոհները։ Այդ պաշտպանության կազմակերպիչներն ու ղեկավարներն էին՝ գնդի կոմիսար Ֆոմինը, կապիտան Զուբաչեր, մայոր Գավրիլովը, կոմերիտական կազմակերպության քարտուղար Մաթևոսյանը և ուրիշներ։

Պարտիայի կոչով սովետական մարդիկ միահամուռ կերպով գոտեմարտի դուրս եկան ֆաշիստական զավթիչների դեմ՝ հանուն մեր Հայրենիքի ազատության ու անկախության։ 1941 թվականի հունիսի 30-ին Ստալինի նախագահությամբ ստեղծվեց Պաշտպանության Պետական Կոմիտե, որն այդ տարիներին վարեց երկրի պաշտպանության խիստ պատասխանատու գործը։

Կոմունիստական պարտիայի կողմից մշակվեցին և կիրառվեցին մի շարք արմատական միջոցառումներ՝ մոբիլիզացնելու երկրի նյութական ու մարդկային ռեսուրսները թշնամուն հակահարված տալու համար։ Պարտիայի Կենտկոմի անդամներից ընկերներ Խրուշչովը, Ժդանովը, Բուլգանինը, Շչերբակովը և ուրիշներ նշանակվեցին ռազմական կարևորագույն պոստերում, որոնց հանձնարարվեց բոլոր միջոցներով ապահովել ռազմական գործողությունների ծավալումը թշնամու դեմ։

Այսպիսի ծանր պայմաններում Սովետական Զինված Ուժերը, հենվելով մեր երկրի ժողովրդի անձնազոհ, ակտիվ մասնակցության վրա, նախապատրաստվում էին հակահարձակման անցնելու գազազած թշնամու դեմ։ Առաջին լուրջ հակահարվածը թշնամուն հասցվեց Մոսկվայի տակ, 1941 թվականի վերջին և 1942 թվականի սկզբին։ Սակայն օգտվելով երկրորդ ռազմաճակատի բացակայությունից, հիտլերյան հորդաները 1942 թվականի ամռանը նորից հարձակման անցան սովետա-գերմանական ռազմաճակատում և զավթեցին մի շարք կենսական կարևոր նշանակություն ունեցող շրջաններ հարավում և Հյուսիսային Կովկասում։ Թշնամին ձգտում էր գրավել Ստալինգրադը



և Բաքուն, կտրել երկրի կենտրոնը կարևոր հումքի պաշարների բազաներից և ապա գրավելով Մոսկվան՝ ավարտել պատերազմը Արևելքում։

1942 թվականի նոյեմբերի 19-ին մեր զորքերը ռազմաճակատի Ստալինգրադի շրջանում անցան վճռական հարձակման, որոնց հաջողվեց կարճ ժամանակամիջոցում շրջապատել գերմանական զորքերի խմբավորումը (մոտ 50 դիվիզիա), հաղթահարել նրա կատաղի դիմադրությունը և 1943 թվականի փետրվարի 2-ին վերջնականապես լիկվիդացիայի ենթարկել այն։ Թշնամին մարտի դաշտում թողեց 147 հազար սպանված։ Գերի հանձնվեցին 91 հազար զինվոր, 2500 սպա և 24 գեներալ։ Ստալինգրադյան ճակատամարտում Սովետական Զինված Ուժերի ձեռք բերած հաղթանակը վճռական բեկում ստեղծեց երկրորդ համաշխարհային պատերազմում։

Սովետական Զինված Ուժերի հաղթանակը Ստալինգրադի տակ ունեցավ ռազմական և քաղաքական վճռական նշանակություն։ Դա շրջադարձային մոմենտ էր Հայրենական պատերազմի պատմության մեջ։

1943 թվականին իր ձեռքը վերցնելով ստրատեգիական նախաձեռնությունը՝ Սովետական Բանակը սկսեց իր հաղթական հարձակումը դեպի արևմուտք, ֆաշիստական օկուպանտներից մեկը մյուսի հետևից ազատագրելով սովետական մարզերն ու երկրամասերը։ 1943 թվականի ամռանը Կուրսկի և Օրյոլի տակ մղված մարտում թշնամին կրեց երրորդ ծանր պարտությունը։ Սովետական Զինված Ուժերը ընդհուպ մոտեցան Դնեպրին, հողմացրիվ արին թշնամու պաշտպանական գծերը Դնեպրի աջ ափին, ազատագրեցին Կիևը և շարժվեցին դեպի երկրի արևմտյան սահմանները։

1944 թվականին Սովետական Բանակը տասը նոր խորտակիչ հարվածներ հասցրեց թշնամուն և նրան դուրս շպրտեց մեր հայրենի հողից։

Այդ ամբողջ ժամանակաշրջանում մեր զորքերի հարձակմանը ակտիվ աջակցում էին պարտիզանական ջոկատները, որոնք գործում էին թշնամու թիկունքում։ Դա յուրահատուկ համաժողովրդական շարժում էր՝ ուղղված օկուպացիոն զորքերի ու իշխանությունների դեմ։

Մոտ երեք տարի Սովետական զորքերը միայնակ էին մարտնչում թշնամու դեմ։ Թեպետ պատերազմի սկզբից Սովետական Միությանը հաջողվել էր ստեղծել հակահիտլերյան խոշոր կոալիցիա ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Անգլիայի, սակայն մինչև 1944 թվականի ամառը Եվրոպայում ձգձգվում էր երկրորդ ռազմաճակատի բացումը։ 1944 թվականի իրադարձությունները ռազմաճակատում զարգացան այնպիսի արագությամբ, որ անգլո-ամերիկյան ղեկավար շրջաններն այլևս չէին կարող սպասել և հունիսի 6-ին Նորմանդիայում մեծ դեսանտ հանելով, սկսեցին շարժվել դեպի արևելք, դեպի Գերմանիայի արևմտյան սահմանները։ Գերմանիան մնաց երկու աքցանների արանքում։ Այնուամենայնիվ թշնամու գլխավոր ուժերն առաջվա նման գտնվում էին սովետա-գերմանական ճակատում։

1945 թվականի սկզբից սկսվեցին մեր զորքերի նոր, հուժկու հարձակումները Վիսլայի, Օդերի, Արևելյան Պրուսիայի, Բուդապեշտի և Պոմերանիայի շրջաններում։ Ունենալով բացարձակ գերակշռություն օդում և ցամաքում, սովետական հերոսական զորքերը մեկը մյուսի հետևից ջախջախեցին ֆաշիստական Գերմանիայի բանակի վերջին ռեզերվները։ Արդեն ապրիլի կեսերից Սովետական երեք գլխավոր ռազմաճակատները՝ երկրորդ Բելոռուսականը (մարշալ Ռոկոսովսկու հրամանատարությամբ) հյուսիսից, առաջին

*Բելոռուսականը (մարշալ Ժուկովի հրամանատարությամբ) կենտրոնից և առաջին Ուկրաինականը (մարշալ Կոնևի հրամանատարությամբ) հարավից հաղթական մարտեր էին մղում Գերմանիայի բուն տերիտորիայում, ընդ որում առաջին Բելոռուսական և առաջին Ուկրաինական ռազմաճակատները Գերագույն գլխավոր հրամանատարությունից առաջադրանք էին ստացել արագ կերպով շրջապատել և գրավել Բեռլինը։*

*Այդ խնդիրը սովետական Զինված Ուժերը լուծեցին փայլուն կերպով։ Բեռլինի համար մղած ճակատամարտը Սովետական Բանակի եզրափակիչ ճակատամարտն էր արևմուտքում, նրա մարտական փառքի գագաթնակետը։ Թշնամին միայն Բեռլինի շրջանում ուներ մեկ միլիոնանոց բանակ, 1200 տանկ, 3300 ինքնաթիռ, 8000 հրանոթ։ Սովետական Բանակը թվով ետ չէր մնում։ Նա հագեցված էր անհրաժեշտ ռազմական տեխնիկայով և զինամթերքով։ Միայն Բեռլինի համար մղված մարտերին մասնակցեցին 41 հազար հրանոթ և ականանետներ, 6300 տանկ և ինքնագնաց հրանոթ, 8000 ինքնաթիռ։ Նման ահռելի տեխնիկայի առկայությունը սովետական ժողովրդի աշխատանքային հերոսության դրսևորման փայլուն ապացույցն էր։ Ապրիլի 25-ի գիշերը առաջին Բելոռուսական և առաջին Ուկրաինական ռազմաճակատների զորքերը ավարտեցին Բեռլինի շրջապատումը։ Ապրիլի 30-ին ժամը 14 անց 25 րոպեին հետախույզներ Եգորովը և Քանտարիան հաղթանակի կարմիր դրոշ բարձրացրին Ռեյխստագի շենքի գմբեթի վրա, իսկ մայիսի 2-ին Բեռլինի կայազորը վերջնականապես անձնատուր եղավ։ Մայիսի 8-ին գերմանական հրամանատարության ներկայացուցիչները ստորագրեցին Գերմանիայի անվերապահ կապիտուլացման ակտը։ Պատերազմը Եվրոպայում ավարտվեց։*

*Սովետական Զինված Ուժերի հաղթանակը հիտլերյան Գերմանիայի դեմ 1945 թվականի մայիսին, իսկ նույն թվականի սեպտեմբերին Արևելքում՝ Ճապոնիայի դեմ, ունեցավ համաշխարհային պատմական նշանակություն և արմատական փոփոխություններ մտցրեց հետպատերազմյան միջազգային հարաբերությունների ամբողջ ընթացքի մեջ։*

*Հիտլերյան հորդաների և ճապոնական սամուրայների դեմ մղած մարտերում մեր Հայրենիքի Զինված Ուժերն ազնվորեն կատարելով իրենց պատմական միսիան, ո՛չ միայն պաշտպանեցին սովետական ժողովրդի պատիվը, ազատությունն ու անկախությունը, այլև գերմանա-ֆաշիստական ու ճապոնական իմպերիալիստների լծից ազատագրեցին Եվրոպայի ու Ասիայի բազմաթիվ ժողովուրդների, որոնք այժմ ընթանում են սոցիալիզմի ուղիով։ Խոշոր չափով ամրացան սոցիալիզմի դիրքերը, և թուլացավ կապիտալիստական սիստեմը։*

*Ֆաշիստական Գերմանիայի և ճապոնական իմպերիալիստների դեմ մղած Հայրենական Մեծ պատերազմում փայլուն կերպով դրսևորվեց Սովետական Սոցիալիստական երկրի պետական, հասարակական սիստեմի անվիճելի գերազանցությունը կապիտալիստական սիստեմի նկատմամբ։ Պատերազմը նորից հաստատեց Կոմունիստական պարտիայի աննախընթաց ուժն ու հեղինակությունը սոցիալիզմի երկրի և նրա Զինված Ուժերի ղեկավարման գործում։*

*Ժողովուրդների պատմության մեջ միշտ անմահ կմնան Հայրենական պատերազմի փառապանծ հերոսներ՝ Ալ. Մատրոսովի, Յուրի Սմիրնովի, Օ. Կոշևոյի, Ն. Ստեփանյանի, Հունան Ավետիսյանի և շատ շատերի անունները։*



*Հայրենական պատերազմի ժամանակ կոփվեց և իր ռազմական տաղանդը դրսևորեց մեր սովետական ռազմիկների մի ամբողջ սերունդ։*

*Ժողովուրդների եղբայրական մեծ ընտանիքում իրենց հերոսություններով ու քաջագործություններով աչքի ընկան նաև հայ ժողովրդի պանծալի զավակները, որոնցից 106 հոգու շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, 50 հոգու՝ գեներալի կոչում։ Հայ ժողովրդի հերոսական պատմության մեջ կմտնեն մարշալ Ի. Բաղրամյանի, նավատորմի ծովակալ Ի. Իսակովի, գեներալներ՝ Ս. Մարտիրոսյանի, Հ. Մարտիրոսյանի, Ն. Սաֆարյանի, Ա. Կարապետյանի, Ա. Բաբաջանյանի, Բ. Առուշանյանի, Ս. Կարապետյանի, Սովետական Միության հերոսներ Ս. Բաղդասարյանի, Ջ. Կարախանյանի և մյուսների անունները, որոնք Հայրենիքին սպառնացող վտանգի ծանր տարիներին հանդես բերեցին ռազմական հմտության և հերոսության վառ օրինակներ։*

*Պատերազմի տարիներին հայ ժողովրդի լավագույն զավակներից կազմավորվեցին հայկական մի շարք զորական միավորումներ ու զորամասեր, որոնք ակտիվ կերպով մասնակցեցին ռազմաճակատների գործողություններին։ Հատկապես պետք է հիշատակել 89-րդ Թամանյան Կարմրադրոշ դիվիզիան, որը գեներալ մայոր Նվեր Սաֆարյանի հրամանատարությամբ մարտական փայլուն հաջողությունների հասավ Կովկասում, Ղրիմում, Օդերի ափին և Բեռլինի գրավման համար մղվող մարտերում։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմից անցել է 13 տարի։ Այդ ժամանակաշրջանում միջազգային հարաբերությունների զարգացման գործում տեղի են ունեցել մեծ փոփոխություններ։ Լեհաստանում, Հունգարիայում, Ռումինիայում, Բուլղարիայում, Ալբանիայում, Չեխոսլովակիայում, Արևելյան Գերմանիայում և Հարավսլավիայում ամենայն հաջողությամբ սոցիալիստական հասարակարգ է կառուցվում։ Սոցիալիզմի կառուցման ուղին են բռնել 600 միլիոնանոց չին ժողովուրդը, Հյուսիսային Կորեան, Վիետնամը, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան։ Այդ բոլոր երկրները, միասին վերցրած, ունեն մոտ մեկ միլիարդ բնակչություն։ Փլուզվել է իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Հնդկաստանը, Սիրիան, Բիրման, Ինդոնեզիան, Լիբանանը, Եգիպտոսը և այլ երկրներ դեն են շպրտել գաղութային լուծը և դարձել ուրույն պետություններ։ Սոցիալիզմի լագերի պետությունները ՍՍՌՄ-ի և Չինաստանի ղեկավարությամբ, ելնելով ժողովուրդների ճնշող մեծամասնության արմատական շահերից և սոցիալիստական-կոմունիստական հասարակարգ կառուցելու շահերից, վարում են խաղաղության քաղաքականություն։ Գաղութային լծից ազատագրված նոր անկախ երկրները նույնպես շահագրգռված են խաղաղության պաշտպանության գործով։*

*Ամերիկայի Միացյալ Նահանգները, Անգլիան, Ֆրանսիան ու նրանց հարող պետությունները հետպատերազմյան շրջանում վարում են ագրեսիվ քաղաքականություն, ստեղծում են ռազմական բլոկներ և ուրիշ երկրներում՝ ռազմական բազաներ։*

*Պատմության մեջ ԱՄՆ-ի կողմից երբեք այնքան շատ միջոցներ չեն հատկացվել ռազմական նպատակներին, որքան այժմ։ Եթե 1950/51 տնտեսական տարում ռազմական բյուջեն կազմում էր 25,971 միլիարդ դոլար, ապա 1957/58 տնտեսական տարում այն կազմում է 45,800 միլիարդ դոլար, կամ ամբողջ պետական բյուջեի 63,1 տոկոսը։*

Այժմ ԱՄՆ-ը զենքի տակ ունի 2 միլիոն 790 հազար մարդ։ Աճում են նաև Անգլիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի և Թուրքիայի ռազմական բյուջեներն ու զորքերի քանակը։

Արմատական փոփոխություն է կատարվել զորքերի միավորումների ստրուկտուրայում։ Ատոմային և միջուկային մյուս զենքերը, որպես մասսայական ոչնչացման միջոցներ, արդեն դիտվում են որպես սովորական կարգի զենքեր և դրվում են բանակների, կորպուսների հրամանատարների տրամադրության տակ։ ԱՄՆ-ի, Անգլիայի ղեկավար ռեակցիոն շրջանները հրաժարվում են Սովետական Միության առաջարկություններից՝ բանակցություններ վարելու ճանապարհով լուծելու միջազգային հարաբերությունների հանգուցային հարցերը՝ զինաթափման հարցը, ատոմային զենքի փորձարկումն ու օգտագործումն արգելելու հարցը, ժողովուրդների ու երկրների միջև տնտեսական, կուլտուրական կապերն ամրապնդելու և նրանց ներքին գործերին չխառնվելու հարցերը։

Իրագործելով պարտիայի XX համագումարի պատմական որոշումները, սովետական ժողովուրդը վերջին տարիներում վիթխարի հաջողությունների է հասել արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում։ Այդ հաջողությունները Սովետական կառավարությանը հնարավորություն են տալիս ամեն կարգի անակնկալներից խուսափելու համար պատշաճ բարձրության վրա պահել իր զինված ուժերը։

Այժմ Սովետական բանակը, ավիացիան, նավատորմը պատշաճ չափով հագեցված են ժամանակակից զենքի ու ռազմական տեխնիկայի բոլոր տեսակներով և արթուն կերպով կանգնած են սովետական Հայրենիքի ու սոցիալիստական լագերի երկրների պաշտպանության մարտական դիրքերում։

1957 թվականի հոկտեմբերին Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն իր պլենումում քննության առավ պարտիական-քաղաքական աշխատանքի դրվածքը Սովետական Բանակում և Ռազմա-ծովային Նավատորմում։ Պլենումը դատապարտեց պաշտպանության նախկին մինիստր Գ. Կ. Ժուկովի թույլ տված կոպիտ սխալները և համապատասխան միջոցառումներ նշեց մեր Զինված Ուժերի ղեկավարության լենինյան սկզբունքները անշեղորեն կենսագործելու համար։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին սովետական Զինված Ուժերի անձնակազմը, պարտիական, կոմերիտական կազմակերպությունները բուռն խանդավառությամբ ընդունեցին պարտիայի Կենտկոմի որոշումը և եռանդուն կերպով ձեռնամուխ եղան նրա կատարմանը։

Իրենց գոյության 40-րդ տարեդարձը սովետական Զինված Ուժերը դիմավորում են մարտական, քաղաքական ուսուցման և կարգապահության ասպարեզներում ձեռք բերած մեծագույն նվաճումներով։ Որպես սովետական Հայրենիքի արթուն պաշտպաններ, նրանք պատրաստ են կործանիչ հարված հասցնել բոլոր նրանց, ովքեր կփորձեն խախտել սովետական ժողովրդի խաղաղ շինարարական աշխատանքը։

---

# ԱՐՀՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

Արհմիությունների աշխատանքի բարելավման մասին ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները խոշոր իրադարձություն են մեր պարտիայի կյանքում. Նրանք վիթխարի նշանակություն ունեն մեր երկրի զարգացման համար, կոմունիստական շինարարության գործի համար։

Սովետական արհմիությունները հանդիսանում են Կոմունիստական պարտիայի հուսալի հենարանը, որոնք իրենց շարքերում միավորում են ավելի քան 49 միլիոն բանվոր-ծառայողներ։ Նրանք դարձել են մի հզոր ուժ և մեծ դեր են խաղում մեր երկրի պետական, տնտեսական ու հասարակական կյանքում, ժողովրդական տնտեսության վերելքի և աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման գործում։ Արհմիությունների օգնությամբ աճել ու առաջ են քաշվել տնտեսական և պետական բազմաթիվ որակյալ ղեկավար կադրեր։ Արհմիությունները կազմակերպում են սոցիալիստական մրցությունը, աշխատավորությանը ներգրավում են արտադրության ղեկավարման մեջ, լուրջ աշխատանք են տանում բանվոր-ծառայողների դաստիարակման, նրանց կուլտուրական և տեխնիկական մակարդակի բարձրացման, բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման ուղղությամբ։

Պարտիայի կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը բարձր գնահատեց Սովետական արհմիությունների կատարած բազմաբովանդակ աշխատանքը։ Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերում մեր երկրում արհմիութենական շարժման լայն զարգացման հանդեպ։ ՍՄԿՊ XX համագումարից հետո է՛լ ավելի ուժեղացավ պարտիայի ուշադրությունը արհմիությունների նկատմամբ։ Պարտիայի Կենտկոմի 1956 թվականի **Դեկտեմբերյան և 1957** թվականի Փետրվարյան պլենումները պետական, տնտեսական հարցերի հետ միաժամանակ մեծ տեղ հատկացրին արհմիությունների դերին ու նրանց կոնկրետ խնդիրներին։

ՍՄԿՊ 1957 թվականի Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ ասված է, որ հենվելով մեր երկրի սոցիալիստական կարգի առավելության վրա, մենք պետք է առաջիկա 15 տարում ձեռք բերենք ինդուստրիայի վճռական ճյուղերի 2—3 անգամով աճ, մոտակա տարիներին ապահովենք գյուղատնտեսության հետագա շեշտակի վերելք և աշխատավորների կենսամակարդակի նշանակալի բարձրացում։ Պատմական այս վիթխարի խնդիրների կենսագործումը այժմ, ավելի քան երբեք, անհրաժեշտություն է դարձնում բանվոր դասակարգի և աշխատավորության ամենալայն խավերը ավելի մեծ չա-

փերով և ավելի ակտիվորեն ներգրավել պետության և տնտեսության կառավարման ոլորտը, հասարակական կյանքի մեջ։

Այս պայմաններում ավելի ու ավելի մեծ դեր ու նշանակություն են ստանում Սովետական արհմիությունները, որոնք հանդիսանում են ՍՍՌՄ բանվոր դասակարգի և աշխատավորության ամենամասսայական կազմակերպությունը։

Կատարելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարի որոշումները, Սովետական արհմիությունները վերջին ժամանակներում բարելավեցին իրենց աշխատանքը։ Նրանց եռանդուն մասնակցությամբ ստվարացել են արտադրության նորարարների շարքերը, զարգացել են սոցիալիստական մրցության նոր ձևեր, աշխատանքի և աշխատավարձի ասպարեզում դրվել և հաջողությամբ լուծվում են մի շարք կարևոր հարցեր. բարձրացել է արհմիությունների դերը պարտիայի կողմից առաջադրված բնակարանային շինարարության ծրագրի իրականացման գործում։ Սակայն դրանց հետ միասին պետք է ասել, որ արհմիությունները դեռևս ոչ բավականին ակտիվ են մասնակցում տնտեսական և կուլտուրական շինարարության գործերում։ Նրանք դեռ չեն հասել այն բանին, որպեսզի բոլոր արհմիութենական կազմակերպությունները ակտիվ մասնակցեն ձեռնարկությունների և կառույցների արտադրության գործունեության բարելավմանը, նրանցից շատերը ակտիվորեն չեն մասնակցում արտադրության պլանավորմանը, անբավարար են զբաղվում աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական մրցության կազմակերպման, առաջավոր փորձի տարածման հարցերով։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի կողմից արհմիությունների առաջ դրված խնդիրների կատարման ապահովումը պահանջում է բարձրացնել պարտիական կազմակերպությունների և պարտիական օրգանների ղեկավարությունն ու օգնությունը արհմիութենական կազմակերպություններին։ Ամենից առաջ պետք է հաղթահարել և վերացնել արհմիութենական կազմակերպությունների դերի ու նշանակության թերագնահատման երևույթները, որոնք դեռ գոյություն ունեն տնտեսական և սովետական որոշ կազմակերպությունների և առանձին աշխատողների մոտ։ Բանը նրանումն է, որ անցյալում, անհատի պաշտամունքի տիրապետության շրջանում, որոշ աշխատողների մոտ այն սխալ կարծիքն էր ստեղծվել, որ իբր թե սոցիալիզմի պայմաններում արհմիությունների գործունեությունը պետք է սահմանափակվի սոցիալական ապահովագրության և կուլտուր-կենցաղային աշխատանքների նեղ շրջանակներով։ Դրա հետևանքը եղավ այն, որ շատ տեղերում անտեղի և խիստ կերպով թերագնահատվեցին արհմիությունները և նրանց աշխատանքը։

ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումները պահանջում են վերջ դնել արհմիությունների թերագնահատման սխալ պրակտիկային։ ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը «...անհրաժեշտ է համարում զգալիորեն բարելավել Սովետական արհմիությունների ամբողջ գործունեությունը, է՛լ ավելի բարձրացնել նրանց դերը մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մղվող համաժողովրդական պայքարում»։

Արտադրության կառավարման մեջ բանվորներին և աշխատավորական լայն մասսաներին ներգրավելու կարևորագույն ձևերից մեկը սոցիալիստական մրցությունն է։



Նշելով սոցիալիստական մրցության ասպարեզում արհմիությունների մեծ աշխատանքը, ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը միաժամանակ ցույց տվեց, որ սոցիալիստական մրցության կազմակերպման և ղեկավարման բնագավառում արհմիութենական կազմակերպությունների աշխատանքում գոյություն ունեն նաև զգալի թերություններ։ Մրցության ղեկավարման գործում դեռ շատ է ձևականությունը, միշտ չէ, որ ստանձնած պարտավորությունները ամրապնդվում են մարդկանց հետ կատարվող կազմակերպչական, մասսայական քաղաքական աշխատանքով, կազմակերպչական-տեխնիկական կոնկրետ միջոցառումներով, ինչպես նաև ձեռնարկության անընդմեջ աշխատանքն ապահովող միջոցառումների իրագործումով։ Նյութա-տեխնիկական վատ մատակարարման և արտադրության անբավարար կազմակերպման պատճառով մի շարք դեպքերում չեն կատարվում ստանձնած պարտավորությունները, որն իջեցնում է բանվորների հետաքրքրությունը դեպի մրցությունը։

Որոշ ձեռնարկություններում ընդհատել են անհատական և բրիգադային մրցության կազմակերպումը, չեն ապահովում մրցության արդյունքների հրապարակայնությունը, թույլ են տարածում առաջավոր փորձը և միջոցներ ձեռք չեն առնում ետ մնացողներին առաջավորներին հասցնելու համար։

Սոցիալիստական մրցության զարգացման վրա ծայր աստիճան բացասաբար է ազդում նաև այն, որ տնտեսական շատ ղեկավարներ մի կողմ են կանգնած մրցության կազմակերպումից, պատասխանատվություն չեն կրում ստանձնած պարտավորությունների կատարման համար։

Նշված թերությունները գոյություն ունեն նաև մեր ռեսպուբլիկայի ար-
տադրական և շինարարական շատ ձեռնարկությունների արհմիութենական
կազմակերպությունների և տնտեսական ղեկավարների աշխատանքում։ Երևա-
նի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում, որը զգալիորեն թե-
րակատարել է արտադրական պլանները, չի կազմակերպված անհատական և
բրիգադային սոցիալիստական մրցություն, բանվորները չունեն ստանձնած
պարտավորություններ։ Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում խոսք չի
կարող լինել մրցության արդյունքների սիստեմատիկ ամփոփման և առաջա-
վորներին խրախուսելու մասին։

ՀԱՄԽ-ի, արհմիությունների ռեսպուբլիկական կոմիտեների և սկզբնա-
կան կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է՝ բարելավել սոցիալիս-
տական մրցության ղեկավարությունը, այն հասցնել նոր, ավելի բարձր աս-
տիճանի, ուշադրությունը կենտրոնացնել այն բանի վրա, որ բոլոր բանվոր-
ներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները ներգրավվեն մրցության մեջ,
ապահովելով բոլոր բանվորների կողմից արտադրական նորմաների կատա-
րումն ու գերակատարումը, սիստեմատիկ կերպով ուսումնասիրել և լայնորեն
տարածել արտադրության առաջավորների փորձը։ Այդ տեսակետից հատուկ
ուշադրության է արժանի Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, անվանի
հանքափոր, նորարար Նիկոլայ Մամայի փորձի ուսումնասիրումն ու արմա-
տավորումը։

Սոցիալիստական մրցության հիմքում պետք է դրվեն լենինյան սկզբունք-
ները՝ մրցության հրապարակայնությունը, արդյունքների համեմատելիությունը,
փորձի գործնական կրկնման հնարավորությունը և ընկերական փոխօգնու-
թյունը։ Սոցիալիստական մրցության զարգացման համար կարևոր նշանակու-
թյուն ունի ՀԱՄԽ-ի և ժողտնտխորհի, ինչպես նաև մինիստրությունների ու

արհմիութենական ռեսպուբլիկական կոմիտեների համատեղ աշխատանքն այդ ուղղությամբ: Սակայն իրականում միշտ չէ, որ այդպես է լինում: Այսպես, օրինակ, երբ Հայաստանի արհեստակցական միությունների խորհրդի նախագահությունը ամփոփում էր ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունների սոցիալիստական մրցության 1957 թվականի երկրորդ եռամսյակի արդյունքները, Ժողտնտխորհի ղեկավար ընկերները անհասկանալի պատճառով չբարեհաճեցին ներկա լինել այդ հարցի քննարկմանը և մի քանի օր հետո առանձին կարգով քննության առան այդ նույն հարցը: Մրցության արդյունքների ամփոփման այդպիսի պրակտիկան նեղացնում է հարցի քննարկման սահմանները և ձգձգում նրա վերջնական լուծումը: Ժողտնտխորհի որոշ ղեկավար աշխատողներ ընդհանրապես անհրաժեշտ չափով հաշվի չեն առնում արհմիությունների կարծիքը արտադրության պլանավորման ու կազմակերպման, աշխատավարձի կազմակերպման, բանվոր-ծառայողների բնակարանային-կենցաղային հարցերը լուծելիս: Այսպես, Ժողտնտխորհն ուզում էր հայտարարել գյուտարարական և ռացիոնալիզատորական աշխատանքների կոնկուրս-ստուգատես և, չգիտես ինչու, այդ գործն ուզում էր կատարել առանց արհմիությունների մասնակցության: Անկասկած է, որ արհմիություններին այդ գործից բացառելը կնսեմացներ կոնկուրս-ստուգատեսի թափը և մասսայականությունը: ՀԱՄԽ-ի միջամտությունից հետո միայն Ժողտնտխորհն ուղղեց իր այդ սխալը:

Աշխատավորներին արտադրության կառավարման մեջ ներգրավելու տեսակետից մեծ նշանակություն ունեն արտադրական խորհրդակցությունները, որոնք հնարավորություն են տալիս միանձնյա ղեկավարության սկզբունքները զուգակցել ներքևից՝ կոլեկտիվների կողմից կատարվող վերահսկողության հետ: Սակայն արտադրական խորհրդակցությունների կազմակերպման և անցկացման պրակտիկայում լուրջ թերություններ կան: Շատ ձեռնարկություններում արտադրական խորհրդակցությունների դերը նսեմացված է, դրանք հրավիրվում են հապճեպորեն, առանց պատշաճ նախապատրաստման: Տնտեսական որոշ ղեկավարներ չեն մասնակցում արտադրական խորհրդակցություններին, չեն կատարում նրանց որոշումները, որի հետևանքով այդ խորհրդակցությունների նկատմամբ բանվորների հետաքրքրությունը կորչում է:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նպատակահարմար համարեց ձեռնարկություններում և կառույցներում արտադրական խորհրդակցությունները դարձնել մշտական գործող, որոնք իրենց աշխատանքը տանեն բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների լայն մասնակցությամբ, իրենց մեջ ընդգրկելով ադմինիստրացիայի, պարտիական, կոմերիտական կազմակերպությունների և գիտա-տեխնիկական ընկերությունների ներկայացուցիչներին:

Մեզ մոտ մի շարք կազմակերպություններ, ինչպես, օրինակ, Լենինականի կոմբինատը, կաշվի ֆաբրիկաները արդեն ստեղծել են մշտական գործող արտադրական հանձնաժողովներ, որոնց առաջին քայլերը դրական կերպով են ազդում արտադրության կազմակերպման վրա: Սակայն արտադրական խորհրդակցությունների վերակառուցմանը շատ տեղերում մոտենում են որոշ վերապահությամբ և գործնական քայլեր չեն անում այդ ուղղությամբ: Անհրաժեշտ է ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման համաձայն համարձակ կերպով ձեռնամուխ լինել արտադրական խորհրդակցությունների վերակառուցմանը:



Արտադրության, աշխատանքի, աշխատավորների կենցաղային ու կուլտուրական սպասարկման կարևորագույն հարցերը իրենց արտացոլումն են գտնում կոլեկտիվ պայմանագրերում, որոնք սահմանում են ձեռնարկությունների կոլեկտիվների և ադմինիստրացիայի փոխադարձ երկկողմանի պարտավորությունները:

Կիրովի անվան, ավտոդողերի, ռեզինո-տեխնիկական իրերի գործարաններում և մի շարք այլ ձեռնարկություններում կոլեկտիվ պայմանագրերը զգալի չափով նպաստում են արտադրական պլանների կատարմանը և բանվոր-ծառայողների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավմանը:

Դրանց կողքին կան նաև շատ ձեռնարկություններ, որտեղ վատ են կատարվում ստանձնած երկկողմանի պարտավորությունները, բացակայում է հսկողությունը դրանց նկատմամբ: Սպանդարյան շրջսովետի շինվերանորոգման գրասենյակի 1957 թվականի կոլեկտիվ պայմանագրով ստանձնած պարտավորությունները՝ բանվոր-ծառայողների աշխատանքային պայմանների բարելավման, աշխատանքի պաշտպանության, տեխնիկայի անվտանգության ուղղությամբ չեն կատարվել: Այդ նպատակի համար նախատեսված միջոցները մնում են անօգտագործելի: Ադմինիստրացիայի կողմից չեն տրվում աշխատանքների կատարման ակտերը, նրանցում հաճախակի արվում են ուղղումներ ու ջնջումներ: Գրասենյակի վարչությունը հենց տարվա սկզբից խախտում էր կոլեկտիվ պայմանագրով սահմանված աշխատավարձի վճարման ժամկետները: Գրասենյակի պետ ընկ. Ներսիսյանի մեղքով երեք անգամ հետաձգվել էր կոլեկտիվ պայմանագրի կատարման արդյունքների ամփոփման նպատակով հրավիրված կոլեկտիվի ընդհանուր ժողովը: Ընկ. Ներսիսյանը արհամարհական վերաբերմունք էր ցույց տալիս նաև պրոֆկազմակերպության մյուս պահանջների նկատմամբ: Արհմիութենական կազմակերպությունը միանգամայն ճիշտ վարվեց, որոշելով անհնար համարել ընկ. Ներսիսյանին շինգրասենյակի պետի պաշտոնում թողնելը, որպես կոլեկտիվի վստահությունը չվայելողի: Սպանդարյան շրջսովետի գործկոմի նախագահությունը ընկ. Ներսիսյանին ազատեց աշխատանքից:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը արհմիութենական կազմակերպություններին պարտավորեցրեց «...ապահովել խիստ վերահսկողություն ռացիոնալիզատորական առաջարկներն ու գյուտերը ժամանակին քննարկելու և արմատավորելու նկատմամբ, հաստատակամորեն պայքարել դեպի այդ գործը քարացած, բյուրոկրատական վերաբերմունքի փաստերի դեմ»: Դրա հետ միասին պլենումը արհմիութենական կազմակերպություններից պահանջեց բարելավել գիտա-տեխնիկական ընկերությունների ղեկավարումը, բարձրացնել նրանց դերը առաջավոր փորձի, գիտության և տեխնիկայի նորագույն նվաճումների ուսումնասիրման և տարածման, գիտության ու արտադրության աշխատողների ստեղծագործական համագործակցության զարգացման ասպարեզում:

Պարտիայի XX համագումարը տնտեսական և արհմիութենական կազմակերպությունների առաջ խնդիր դրեց՝ կարգավորել աշխատավարձի կազմակերպումը: Չնայած այդ ուղղությամբ կատարված որոշ աշխատանքին, աշխատանքի նորմավորման և աշխատավարձի կազմակերպման բնագավառում դեռևս գոյություն ունեն շատ թերություններ: Առանձին տնտեսական ղեկավարներ կամ ոչինչ չեն անում այդ ուղղությամբ, կամ ձգտում են ձևականո-

րեն վերանայել արտադրական նորմաները, առանց նախապես կազմակերպական-տեխնիկական միջոցառումների կիրառման։

Մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ լայն կերպով ներդրվում են նոր տեխնիկա, առաջնակարգ տեխնոլոգիա, արտադրական պրոցեսների մեքենայացում։ Որոշ բնագավառներում արդեն կրճատվել է աշխատանքային օրվա տևողությունը։ Միայն անցյալ տարի աշխատանքի պաշտպանության և տեխնիկայի անվտանգության համար ՍՍՌՄ-ում ծախսված է երկու միլիարդ 563 միլիոն ռուբլի։ Արհմիությունները ձգտում են զարգացնել նախաձեռնությունը՝ բանվորների համար աշխատանքային լավագույն պայմաններ ստեղծելու գործում։ Սակայն այս բնագավառում դեռևս կան խոշոր թերություններ, իսկ շատ տնտեսական ղեկավարներ հանդես են բերում անտարբեր և անուշադիր վերաբերմունք դեպի մարդկանց պահանջները, խախտում են տեխնիկայի անվտանգության և արտադրական սանիտարիայի նորմաները, չեն օգտագործում այդ նպատակի համար նախատեսված ֆինանսական միջոցները։ Հենց դրանով է բացատրվում այն փաստը, որ արտադրական տրավմաների թիվը դեռևս մնում է բարձր։

Չնայած որ ՀԱՄԽ-ի նախագահությունը ժամանակին Արարատի ցեմենտի և շիֆերի կոմբինատի դիրեկցիային նախազգուշացրեց առանց շինարարական աշխատանքները, օդափոխիչ և մյուս հարմարանքները ավարտելու շահագործման չհանձնել կոմբինատի որոշ ցեխեր, սակայն Ժողտնտխորհի Շինանյութերի արդյունաբերության վարչությունը և կոմբինատի դիրեկցիան ոտնահարելով սովետական օրենքը, կոմբինատի այդ օբյեկտները թերավարտ վիճակում շահագործման հանձնեցին, որի հետևանքով մինչև օրս էլ բանվորներն այդ ցեխերում աշխատում են այնպիսի պայմաններում, որոնք հակասում են օրենքով նախատեսված տեխնիկայի անվտանգության և արտադրական սանիտարիայի նորմաներին, և երբ տեխնիկայի անվտանգության տեսուչը օրինազանցության համար միանգամայն ճիշտ կերպով տուգանել է կոմբինատի դիրեկտոր ընկ. Ջահանգիրյանին, նա, չգիտես թե ինչու, բողոքում է դրա դեմ։ Տարօրինակ է, որ մարդիկ խախտում են օրենքը և ուզում են անպատիժ մնալ։

Աշխատանքի պաշտպանության գծով արհմիութենական կազմակերպությունների և նրանց օրգանների վրա որոշակի պարտականություններ են դրված կանանց, հատկապես երեխա ունեցող մայրերի, ինչպես նաև պատանիների աշխատանքի պայմանների բարելավման և նրանց նկատմամբ մի շարք արտոնություններ կիրառելու գործում։ Այս ուղղությամբ ևս թերություններ և կամայականության փաստեր շատ կան։ Արհմիութենական օրգանները, նրանց տեխնիկական տեսուչները, հենվելով արհմիութենական սկզբնական կազմակերպությունների և ակտիվի վրա, կոմերիտական կազմակերպությունների հետ համատեղ բոլոր միջոցներով պետք է բարելավեն երեխամայրերի, կանանց և պատանիների աշխատանքի պայմանները, լուրջ կերպով զբաղվեն նրանց կուլտ-կենցաղային սպասարկման և դաստիարակության աշխատանքների մակարդակը բարձրացնելու գործով։

Աշխատավորների կենցաղի բարելավման անհրաժեշտ պայմաններից մեկը բնակարանային շինարարության հետագա զարգացումն է։ Սակայն, մի շարք մինիստրություններ, գերատեսչություններ և տեղական Սովետների գործկոմներ շարունակում են թերակատարել բնակարանային շինարարության պլանները։ Լենինականի № 2 կարի ֆաբրիկայում, Լենինականի մսի կոմբի-



նատում, Երևանի կաբելի գործարանում և մի շարք այլ ձեռնարկություններում տարեցտարի չեն կատարվում բնակարանային և կենցաղային շենքերի շինարարության պլանները։ Դրա մեղքն, առաջին հերթին, ընկնում է Շինարարության մինիստրության և նրա շինարարական տրեստների վրա, սակայն տնտեսական, արհմիութենական և սովետական կազմակերպությունները ևս բավարար հսկողություն և պահանջկոտություն չեն ցուցաբերում շինարարության առանձին օբյեկտների աշխատանքների նկատմամբ և անբավարար են օգնում շինարարական կազմակերպություններին։

Արհմիությունների խնդիրն է՝ ամեն կերպ օգնել պարտիայի կողմից դրված կարևորագույն խնդրի՝ բնակարանային շինարարության հոյակապ ծրագրի կատարմանը, առաջիկա 10—12 տարիներում մեր երկրում վերացնելու բնակարանային կարիքը։

Այդ տեսակետից պակաս նշանակություն չունի նաև բանվոր-ծառայողների կողմից անհատական կարգով բնակարաններ կառուցելու գործի ծավալումն ու բարելավումը, որի համար պետք է լայնորեն օգտագործել Գորկի քաղաքի աշխատավորների հարուստ փորձը։ Բնակարանային հարցի լուծման գործում խոշոր նշանակություն ունեն եղած բնակարանային ֆոնդերի պահպանումը, նրանց ճիշտ օգտագործումը և նոր բնակելի տարածությունների բաշխումը։ «Ձեռնարկություններում և հիմնարկներում բնակելի տարածության բաշխումը,— ասված է Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշման մեջ,— պետք է կատարվի վարչության և արհմիութենական կոմիտեների համատեղ որոշմամբ։ Արհմիությունները պետք է մասնակցեն նաև տեղական Սովետների կողմից կառուցվող բնակելի տարածության բաշխմանը»։

Արհմիությունների աշխատանքներում զգալի տեղ է գրավում առևտրի և հասարակական սննդի գործի կազմակերպման բարելավումը։ Այդ ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատանքներում եղած թերությունները ժամանակին հայտաբերելու և վերացնելու համար արհմիութենական հասարակական հսկողության մեջ են ներգրավվում մեծ քանակությամբ ակտիվիստներ, և նրանք զգալի աշխատանք են կատարում։ Սակայն շատ արհմիութենական կազմակերպություններ դեռ անբավարար են զբաղվում առևտրի և հասարակական սննդի բարելավման հարցերով, դեպքից դեպք են անդրադառնում այդ հարցերին, սիստեմատիկաբար խնդիրներ և պահանջներ չեն ներկայացնում տնտեսական և առևտրական կազմակերպություններին։

Արհմիութենական կազմակերպությունները պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ բազմակողմանի աշխատանք են տանում աշխատավորության դաստիարակության և կուլտուրական սպասարկման ուղղությամբ։ Նրանք բանվոր ծառայողների լայն մասսաներին բացատրում են մեր պարտիայի քաղաքականությունը, պրոպագանդում են տեխնիկական և գիտական գիտելիքներ, զարգացնում են գեղարվեստական ինքնագործունեությունը, կազմակերպում աշխատավորության հանգիստը։ Դրա հետ միասին արհմիությունների դաստիարակչական և կուլտ-մասսայական աշխատանքների թափը և գաղափարական մակարդակը չի բավարարում աշխատավորության աճող պահանջները։

Նրանք առաջիկայում պետք է լայն կերպով ընդգրկեն բանվոր-ծառայողներին երեկոյան ուսումնարաններում ու բուհերում, հանրակրթական դպրոց-

ներում և տեխնիկական խմբակներում, հեռակա ուսուցման մեջ և ուժեղացնեն
արտադրական պրոպագանդան։

Աշխատավորության դաստիարակության և լուսավորության կարևորա-
գույն կենտրոններից պետք է լինեն նաև արհմիութենական կուլտուր-լուսա-
վորական հիմնարկները։ Շատ արհմիութենական կուլտուրայի պալատներ և
ակումբներ բավականին լուրջ ու դրական աշխատանք են տանում այս ուղղու-
թյամբ։ Իրենց լավ աշխատանքով ուշադրության արժանի են՝ Երևանի Արվես-
տի աշխատողների տունը, Ուսուցչի տունը, Լենինականի Սևյանի անվան կուլ-
տուրայի պալատը, ավտոդողերի գործարանի կարմիր անկյունը և այլն։

Արհեստակցական միությունների գործունեությունը վատ է լուսաբանվում
մեր մամուլում, գրականության և արվեստի մեջ։ Դժվար է նույնիսկ նշել թե-
կուզ մեկ ստեղծագործություն, որի մեջ պատշաճ կերպով ցույց տրված լինի
արհեստակցական միությունների կյանքը։

Անցյալ տարի «Գրական թերթ»-ում տպագրվեց Գարեգին Բեսի ակնար-
կը, որը նվիրված է արհեստագործական արտելներից մեկի կյանքին։ Հեղի-
նակը և խմբագրությունը որոշել են դրական տիպերի հետ միասին ցույց տալ
նաև մի բացասական կերպար և ընտրել են տեղկոմի նախագահին, մինչդեռ
հանրահայտ փաստ է, որ արտելներում արհմիութենական կազմակերպություն
չկա, հետևապես, տեղկոմ էլ լինել չի կարող։

Արհմիութենական կազմակերպությունների և նրանց օրգանների մարտու-
նակության, նրանց ամբողջ աշխատանքների բովանդակությունը նոր խնդիր-
ների մակարդակին բարձրացնելու կարևոր գրավականը պարտիական ղեկա-
վարության մեջ է։ Արհեստակցական միությունները իրենց առջև կանգնած
խնդիրները կարող են հաջողությամբ կատարել միայն պարտիայի կողմից
ղեկավարվելու պայմանով, նրա օգնությամբ և աջակցությամբ։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նշեց, որ պարտիական մի շարք կոմիտեներ
թերագնահատում են արհմիությունների աճած նշանակությունը և գործունեու-
թյունը, խորամուխ չեն լինում արհմիութենական կազմակերպությունների
աշխատանքի էության մեջ, անհրաժեշտ հոգատարություն չեն ցուցաբերում
փորձված, քաղաքականապես հասուն աշխատողներով արհմիություններն ամ-
րապնդելու նկատմամբ, տնտեսական կադրերին անբավարար են դաստիարա-
կում աշխատանքի՝ սովետական օրենսդրության խստիվ պահպանման ոգով,
միշտ չէ, որ պաշտպանում են արհմիութենական օրգանների արդարացի պա-
հանջները տնտեսական ղեկավարների նկատմամբ։

Ներկայումս, երբ տեղական արհմիութենական օրգանների իրավունքները
զգալիորեն ընդլայնված են, է՛լ ավելի է աճում պարտիական կազմակերպու-
թյունների պատասխանատվությունը արհեստակցական միությունների գոր-
ծունեության համար։

Պարտիական կազմակերպությունները և պարտիական կոմիտեները, բա-
րելավելով իրենց ղեկավարությունը արհմիությունների նկատմամբ, խորա-
մուխ լինելով նրանց աշխատանքի էության մեջ, դրանով իսկ կբարձրացնեն
արհմիությունների դերը տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման գոր-
ծում և կապահովեն ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի պատմական
որոշման անշեղ կենսագործումը։

---

# ՆՈՐ ԷՏԱՊ ՔԻՄԻԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԻՆԴՈՒՍՏՐԻԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Ակադեմիկոս **Ն. Ն. ՍԵՄՅՈՆՈՎ**

Կոմունիստական պարտիան առաջադրել է մի նոր խնդիր՝ ամենամոտ
տարիներին ստեղծել պլաստիկական մասսաների, սինթետիկ մանրաթելերի
և այլ սինթետիկ նյութերի հզոր արդյունաբերություն։ Դա կթույլատրի լայ-
նորեն կիրառել գունավոր մետաղների, բուսական ու կենդանական հումքի
փոխարինիչները, հնարավորություն կտա լուծել մի շարք տեխնիկական
պրոբլեմներ արդյունաբերության և շինարարության մեջ։ Միևնույն ժամանակ
դա կհանգեցնի ժողովրդական սպառման լավորակ ապրանքների թողարկման
զգալի ավելացմանը, նրանց ինքնարժեքի իջեցմանը, ի լրումն բնական հում-
քի աճող հոսքի կթույլատրի գյուղատնտեսությունից ստանալ հումքի նոր
հսկայական աղբյուրներ։

## ՊՈԼԻՄԵՐՆԵՐ–ՀՍԿԱՅԱԿԱՆ ՔԻՄԻԱԿԱՆ ՄՈԼԵԿՈՒԼՆԵՐ

Պլաստիկական մասսաները, սինթետիկ մանրաթելերն ու կաուչուկը
պատկանում են պոլիմերային միացությունների դասին։ Պոլիմերները՝ դրանք
հսկայական քիմիական միացություններ են, որոնք առաջանում են հազարա-
վոր և տասնյակ հազար հասարակ մոլեկուլների, այսպես կոչված, մոնոմեր-
ների միմյանց հետ քիմիապես հաջորդաբար միանալու հետևանքով։ Այդ
տեսակի հսկայական մոլեկուլները ձգված վիճակում ներկայացնում են կար-
ծես ճկուն թելեր, որոնց տրամագծերը հավասար են մոնոմերի տրամա-
գծին, իսկ երկարությունը հազարավոր անգամ գերազանցում է մոնոմերի
երկարությունը։ Պոլիմերային շղթայի օղակները կապված են միմյանց հետ
քիմիական դիմացկուն ուժերով։ Այդ պատճառով պոլիմերային նյութերը
բացառիկ դիմացկուն են լինում։ Նրանց առավելագույն դիմացկունությունը
իրականացվում է այն դեպքերում, երբ բոլոր թելերը դասավորվում են միմ-
յանց զուգահեռ, ապահովելով բեռնավորման հավասարաչափ բաշխումը։
Պոլիմերների կարևորագույն հատկություններից մեկը հանդիսանում է նրանց
առավելագույն դիմացկունության հեշտ ռեալիզացիայի հնարավորությունը
նյութի թելի ձգման միջոցով, ինչպես այդ արվում է, օրինակ, արհեստական
մանրաթելի արտադրության դեպքում։

Պոլիմերների երկար մոլեկուլները միմյանց հետ կապված են ձգողակա-
նության ուժերով, որոնք այնքան ավելի մեծ են, որքան մեծ է մոլեկուլի
երկարությունը։ Այդ պատճառով պոլիմերները հանդիսանում են պինդ դի-
մացկուն մարմիններ, մինչդեռ սովորական ջերմաստիճանում մոնոմերները

ներկայացնում են գազեր կամ հեղուկներ։ Բավականաչափ բարձր ջերմաստիճանում ձգողականության այդ ուժերը մի քիչ թուլանում են։ Փոքր բեռնավորման ազդեցության տակ պոլիմեր-մոլեկուլները սկսում են սահել միմյանց նկատմամբ, ապահովելով նյութի պլաստիկությունը։ Դա թույլատրում է պոլիմերային նյութերին տալ անհրաժեշտ ձև, օգտագործելով դրա համար դրոշմումը, ձուլումը և նման պրոցեսներ։

Վերջապես, հարկավոր է նկատի ունենալ, որ պոլիմերների մոլեկուլները ընդունակ են ոլորվել, ձգտում են կծիկի ձև ընդունել։ Նրանք ներկայացնում են կարծես մածուցիկ միջավայրում գտնվող զսպանակներ։ Դա ապահովում է պոլիմերային նյութերի առաձգականությունը, այսինքն՝ առաձգական ուժեղ երկարացման ընդունակությունը, որ հատկապես բնորոշ է ռետինի համար։

Պոլիմերային նյութերի հատկությունները գործնականորեն կարելի է անսահմանափակ կերպով փոփոխել, փոփոխելով դրա համար ելակետային քիմիական մոլեկուլների բնույթը, նրանց հսկայական մոլեկուլների հերթագայության կազմությունն ու հաջորդականությունը, ինչպես նաև նյութերի սինթեզի և հետագա մշակման պայմանները։

Այդ տեսակի նյութերի մեծ մասի բնորոշ առանձնահատկությունը հանդիսանում է նրանց ունիվերսալությունը, ամենաբազմազան. նպատակների համար օգտագործելու հնարավորությունը։ Այսպես, արհեստական խեժերից՝ պոլիմիդներից մեքենաների ատամնանիվների, առանցքակալների և մյուս դետալների հետ հավասարապես, որոնք ընդունակ են երկարատև ժամանակի ընթացքում առանց յուղման աշխատել, կարող են պատրաստվել կապրոնի նրբագույն երկար գուլպաներ։ Արհեստական խեժը՝ պոլիվինիլքլորիդը, կիրառվում է կապարի փոխարինման համար որպես շապիկ կաբելային արդյունաբերության մեջ և միևնույն ժամանակ լայն սպառման այն գեղեցիկ իրերի պատրաստման համար, որոնք հաջողությամբ փոխարինում են կաշվին։

## ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐ ՀԵՌԱՆԿԱՐԱՅԻՆ ՃՅՈՒՂԸ

Սինթեթիկ նյութերի ունիվերսալությունը և մյուս անփոխարինելի հատկությունները ապահովել են նրանց արտադրության արագ աճը։ 1956 թվականին երկրագնդի վրա (առանց ՍՍՌՄ) արտադրվել է 7.500 հազար տոննա պլաստիկական մասսա, սինթետիկ կաուչուկ և արհեստական մանրաթել։

Արհեստական պոլիմերների՝ վիսկոզային մանրաթելերի և ցելուլոիդի ստացումը (որոնք պատրաստվում են բնական նյութերի, հիմնականում ցելյուլոզայի քիմիական վերամշակման միջոցով) սկսվել է անցյալ հարյուրամյակի վերջում, իսկ սինթետիկ նյութերից ստեղծվող արհեստական պոլիմերների ստացումը ինչ-որ երեսուն տարի սրանից առաջ։

Այդ ժամանակվանից գիտությունը, համագործակցելով արդյունաբերության հետ, արագ տեմպերով սկսել է ստեղծել նորանոր, առաջներում երբեք չտեսնված պոլիմերային նյութեր, որոնք օժտված են մարդու համար անհրաժեշտ հատկություններով։ Կարելի է կարծել, որ 15—20 տարուց հետո պոլիմերային նյութերի համաշխարհային արտադրությունը ձեռք կբերի մետաղների ձուլման մասշտաբները։ Այդպիսի նյութերի արտադրության դեպքում քիմիական ու նավթային արդյունաբերությունը կխաղա նույն դերը, ինչ



դեր որ խաղում է հանքագործական և մետալուրգիական արդյունաբերությունը մետաղների արդյունաբերության գործում։

Եթե տասնիններորդ դարը հաճախ անվանում են գոլորշու և էլեկտրականության դար, ապա քսաներորդ դարը դառնում է ատոմային էներգիայի և պոլիմերային նյութերի դար։

Հաշվի առնելով պոլիմերների արդյունաբերության աճի դինամիկան Սովետական Միությունում, ժողովրդական դեմոկրատիայի պետություններում, ինչպես նաև այդ արդյունաբերության աճը մյուս երկրներում, հավանական է թվում, որ 15—20 տարում արհեստական պոլիմերների համաշխարհային արտադրությունը կհասնի 30 միլիոն տոննայի։ Որպեսզի պատկերացում ունենանք այդ մասշտաբների մասին, նշենք, որ սև մետաղի համաշխարհային արտադրությունը, որոշելով պողպատի ձուլմամբ, 1956 թվականին կազմել է մոտ 280 միլիոն տոննա։ Սակայն պոլիմերային նյութերի տեսակարար կշիռը միջին հաշվով 1,3 է, իսկ երկաթինը՝ 7,8։ Միջին ցուցանիշներով պոլիմերների և պողպատի արտադրությունը պետք է համեմատել ոչ թե տոննաներով, այլ խորանարդ մետրերով (միայն պողպատը պոլիմերային նյութով ուղղակի փոխարինելու դեպքում հատուկ դիմացկունությամբ իրերում հարաբերակցությունը մի քիչ փոփոխվում է, այնպես որ մոտավորապես երկու խորանարդ մետր պոլիմերը փոխարինում է մեկ խորանարդ մետր պողպատին)։ Պողպատի համաշխարհային արտադրությունը կազմում է մոտ 36 միլիոն խորանարդ մետր։ Իսկ պոլիմերների արտադրությունը 15—20 տարուց հետո մոտավորապես կկազմի 23 միլիոն խորանարդ մետր, այսինքն՝ կհասնի պողպատի այժմյան արտադրության գրեթե երկու երրորդին։

Հարկավոր է նշել, որ պոլիմերային նյութերի ինքնարժեքը, ինչպես նաև նրանց արտադրության հետ կապված կապիտալ ներդրումները, եթե հաշվարկը կատարենք արտադրանքի մեկ խորանարդի համար, միջին հաշվով կլինեն մոտավորապես նույնը, ինչ և սև մետաղների համար։ Իսկ գունավոր մետաղների, օրինակ՝ պղնձի մեկ խորանարդ մետրի ինքնարժեքը անհամեմատ ավելի բարձր է։ Միաժամանակ չպետք է մոռանալ, որ պոլիմերների արտադրությունը նոր գործ է և այստեղ գիտա-հետազոտական ու կոնստրուկտորական աշխատանքների հաջողությունների շնորհիվ չափազանց մեծ հնարավորություններ կան ինքնարժեքի իջեցման համար։

Բայց կբավարարե՞ն արդյոք հումքի ռեսուրսները արդյունաբերության մի այդպիսի ծավալման համար։ Այդ հարցին պատասխանելիս հարկավոր է նկատի ունենալ, որ սինթետիկ նյութերի համար հիմնական հումք հանդիսանում են նավթը, բնական նավթային և արդյունաբերական ածխաջրածնային գազերը, ցելյուլոզը (առավելապես փայտից) և կոքս-բենզոլային արդյունաբերության պրոդուկտները։ Պոլիմերների մի շարք հիմնական տեսակների գծով քիմիկոսներին և տեխնոլոգներին կհաջողվի նավթի յուրաքանչյուր տոննայից ստանալ մոտ 400 կիլոգրամ այդպիսի նյութեր։ Ուստի կարելի է հաշվել, որ պոլիմերների համաշխարհային արտադրության ենթադրվող մակարդակին հասնելու համար կպահանջվի միայն մոտ հիսուն միլիոն տոննա նավթ, այսինքն՝ նրա համաշխարհային արդյունահանման միայն մոտ վեց տոկոսը։ Իսկ իրականում, եթե հաշվի առնենք այդ նպատակի համար նաև գազերի օգտագործումը, թվանշանը դեռ ավելի փոքր կլինի։ Այդպիսով,

հումքի ռեսուրսները լրիվին ապահովում են արտադրության ենթադրվող կարողության նվաճումը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների հեռանկարային պլանի մշակման վերաբերյալ ՍՄԿՊ ԿԿ և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ նշվում է քիմիական արդյունաբերության զարգացման, հատկապես արհեստական մանրաթելերի, սննդի հումքի փոխարինիչների արտադրության, պլաստիկական մասսաների, մյուս սինթետիկ նյութերի, ինչպես նաև արհեստական կաշվի արտադրության զարգացման բարձր տեմպերն ապահովելու անհրաժեշտությունը։ Այդ խնդրի լուծման վրա հատուկ ուշադրություն է դարձրել ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս կայացած սեսիան։

1958 թվականի պլանով նախատեսված է քիմիական արդյունաբերության գծով ավելացնել կապիտալ ներդրումների ծավալը 2,5 միլիարդ ռուբլով, կամ 53,6 տոկոսով 1957 թվականի դիմաց։ Միաժամանակ պլաստիկական մասսաների ձեռնարկությունների շինարարության գծով աշխատանքների ծավալը ավելանում է 2,5 անգամ, արհեստական մանրաթելի ձեռնարկություններինը՝ 75 տոկոսով, սինթետիկ կաուչուկի գործարաններինը՝ 48 տոկոսով։ Մենք ունենք բոլոր հիմքերը պարտիայի և կառավարության կողմից դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։ Մեր երկիրը օժտված է հումքի հսկայական, տարեցտարի աճող պաշարներով։ Նա ունի բարձր զարգացած մեքենաշինական արդյունաբերություն և բարձր որակյալ բանվորների, ինժեներների ու գիտնականների կադրեր։ Անկասկած է, որ ամենամոտ տարիներին Սովետական Միությունը պոլիմերների արտադրության գծով կգրավի աշխարհում առաջին տեղերից մեկը։

## ՊՈԼԻՄԵՐՆԵՐԸ ԾԱՌԱՅՈՒՄ ԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆԸ

Խոշոր ժողովրդատնտեսական նշանակություն ունի մետաղների՝ առաջին հերթին գունավոր մետաղների փոխարինումը սինթետիկ պոլիմերային նյութերով։ Ներկայումս այդ պրոցեսը արդյունաբերության զանազան ճյուղերում ձեռք է բերում ավելի ու ավելի մեծ մասշտաբներ։ Պոլիմերները հաջողությամբ փոխարինում են թթվահրահեստ պողպատներին և կապարին այն ապարատներում, որոնք օգտագործվում են քիմիական արդյունաբերության մեջ և արդյունաբերության մյուս ճյուղերում։ Մեկ տոննա պոլիվինիլքլորիդային պլաստիկատը՝ ամենից ավելի մատչելի և էժան սինթետիկ նյութերից մեկը, փոխարինում է չորս տոննա կապարին։

Պլաստմասսաները փոխարինում են պղնձին, նիկելին, բրոնզին և այլ գունավոր մետաղներին զանազան մանր իրերում, ամեն տեսակի արմատուրայում, սանիտարական տեխնիկայում և այլն։

Սև մետաղի փոխարինումը պոլիմերային նյութերով շատ դեպքերում նույնպես կհանգեցնի մեծ տնտեսման։ Նյութը ինքը հազիվ թե ավելի էժան լինի, քան սև մետաղը։ Սակայն, եթե հաշվի առնենք աշխատանքի ծախսերը և այն հարմարանքների արժեքը, որոնք անհրաժեշտ են նյութը միևնույն նշանակության իրերի վերամշակելու համար, պոլիմերները տնտեսապես շատ ավելի ձեռնտու կլինեն, քան սև մետաղը։



Վերցնենք, օրինակ, ջրմուղային խողովակները, որոնք մի շարք երկրներում մասսայական քանակություններով սկսում են պատրաստվել պոլիէթիլենից։ Նրանց արտադրությունը 200—250 ջերմաստիճանի դեպքում չափազանց պարզ և էժան է ոչ միայն գործարանային պայմաններում, այլև փոքր ագրեգատներով։ Մի շարք երկրներում արդեն կառուցվել են յուրահատուկ «կոմբայններ», որոնք բեռնվում են պոլիէթիլենի փոշիով, ընթացքի ժամանակ պատրաստում են խողովակներ, փորում խրամատներ և եռակցում խողովակներ, ապահովելով ջրմուղային գծերի գերարագ անցկացումը։ Եթե հաշվի առնենք նաև, որ այդ խողովակները կոռոզիայի ենթակա չեն, որ նրանք ջրի սառելու դեպքում չեն տրաքվում, ապա պլաստիկական մասսայի առավելությունները հատկապես ակներև են դառնում երկաթի համեմատությամբ։

Պոլիմերների օգտագործման հիման վրա ստեղծվել են նոր կոնստրուկտիվ նյութեր, այսպես կոչված, արմատուրային պլաստիկներ, մասնավորապես տեքստոլիտ ապակին՝ ապակե մանրաթել, որ ներծծված է սինթետիկ խեժերով։ Այդ դիմացկուն և թեթև նյութը ավելի լայնորեն փոխարինում է մետաղ-
ներին դետալների պատրաստման ժամանակ։ Սկսվում են ավտոմեքենաների
թափքերը արմատուրային պլաստիկներից պատրաստելու փորձերը։ Դա
զգալիորեն իջեցնում է մեքենայի քաշը։ Համապատասխանորեն պակասում
է վառելանյութի ծախսը և մեծանում մեքենայի բեռնունակությունը։ Արմա-
տուրային պլաստմասսաներից պատրաստվում են նաև թեթև նավերի,
նավակների, կատերների, մոտորային միակայմ նավակների իրաններ,
ինքնաթիռների և հաստոցների դետալներ։ Թերևս, ապագայում հաջողվի
այդ նյութից պատրաստել նաև խոշոր նավերի իրաններ, որոնք կոռո-
զիայի ենթակա չեն լինի։

Ինչպես շեշտվել է ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջերս կայացած սեսիա-
յում, սինթետիկ նյութերի կիրառությունը հանգեցնում է աշխատանքի ար-
տադրության բարձրացմանը, արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Այսպես,
կեղևային կապարների համար ֆենոլային խեժերի օգտագործումը մետաղի
ձուլման ժամանակ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը
30 տոկոսով, մետաղի ծախսը պակասեցնում է 15—20 տոկոսով և կաղա-
պարման նյութերի ծախսը կրճատում է 7—8 անգամ։

Պոլիմերային նյութերն ավելի խոր կերպով են մտնում ինքնաթիռների և
ավտոմեքենաների հիմնական կոնստրուկցիաների մեջ. «ՏՈՒ-104» ինքնաթի-
ռում կարելի է հաշվել 120.000 զանազան դետալներ, որոնք պատրաստված
են պլաստմասսաներից, օրգանական ապակուց և մյուս նյութերի հետ կապ-
ված նրանց համակցումներից։

Կարևորագույն ժողովրդատնտեսական նշանակություն ունի ինքնաթիռ-
ների և ավտոմոբիլների համար պոլիմերների կորդի մանրաթելերի և հատուկ
կաուչուկների օգտագործումը։ Հարկավոր է նկատի ունենալ, որ ամբողջ
կաուչուկի մոտավորապես երեք քառորդը ծախսվում է դողերի արտադրու-
թյան վրա։ Ավտոմոբիլային դողերում ոչ թե բամբակից, այլ դիմացկուն
սինթետիկ մանրաթելերից պատրաստված ջերմակայուն կորդի կիրառությու-
նը բարձրացնում է ծառայության ժամկետը 20—25 հազարից մինչև 35—40
հազար կիլոմետր։ Դա որոշում է կաուչուկի ծախսի և ռետինի ու դողերի
պատրաստման ծախսերի խիստ պակասեցումը։ Դողերի պատրաստման

*ժամանակ կաուչուկի փոխարինումը նոր սինթետիկ նյութով՝ պոլիուրետանով կապահովի դողերի ծառայության ժամկետի լրացուցիչ բարձրացումը 3—4 անգամ և նրա մոտեցումը ավտոմոբիլների ծառայության ժամկետին։ Մեր երկրում գոյություն ունեցող ավտոմեքենաների պարկի դեպքում դողերի վազքի բարձրացումը հազար կիլոմետրի վրա տալիս է հարյուրավոր միլիոն ռուբլի տարեկան տնտեսում։*

*Սկսում են լայնորեն օգտագործվել «ինքնաբուժվող» անկամերային դողերը։ Վերջին տարիներում ստեղծվել է սինթետիկ կաուչուկ, որը լիովին վերարտադրում է բնական կաուչուկը իր քիմիական կազմությամբ և հատկություններով։ Այդ մեծ խնդրի լուծման գործում օտարերկրյա խոշորագույն գիտնականների հետ հավասար կերպով ակտիվ մասնակցություն են ունեցել Ա. Ա. Կորոտկովը և մյուս սովետական մասնագետները։*

*Պոլիմերային նյութերից շատերը անփոխարինելի են դառնում էլեկտրատեխնիկայում, ռադիոտեխնիկայում, ռեակտիվ տեխնիկայում, լոկացիայում։*

## ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՀԱՄԱՐ

*Բարձր մոլեկուլային սինթետիկ նյութերը շատ ավելի մեծ նշանակություն են ձեռք բերում շինարարական ինդուստրիայում։ Դեռևս լիովին անվիճելի չէ պատերի համար որպես նյութ պոլիմերների օգտագործման տնտեսական նպատակահարմարությունը, բայց արդեն պարզ է, որ արմատուրային պլաստիկները տեխնիկապես միանգամայն պիտանի են այդ նպատակի համար։ Փրփրապլաստները, որոնք աննշան տեսակարար կշիռ (0,05—0,1) և բացառիկ փոքր ջերմահաղորդականություն ունեն, բավական լավ դիմացկունության դեպքում կարող են կիրառվել պատի ակոսները լցնելու համար։ Շենքի ներսում միջնորմների պատրաստումը բարձր ջերմաստիճանի և ձայնամեկուսիչ հատկություններով օժտված այդ թեթև նյութերից և փայտի, ֆաների ու մյուս շինարարական նյութերի հետ կազմած նրանց համակցումների օգտագործումը որպես կրող կոնստրուկցիաներ հնարավոր են դարձնում հեշտությամբ փոխադրվող միջնորմների մոնտաժը բնակելի շենքերի ներսում, նրանցից հատակներ ու առաստաղներ կառուցելը։ Դա զգալիորեն բարձրացնում է տների հավաքման արագությունը։*

*Շինարարության մեջ կարելի է օգտագործել փայտե թելքավոր սալեր․ նրանք ներկայացնում են մամլած թեփ կամ փայտամշակման արդյունաբերության այլ մնացուկներ, որոնք ներծծված են փոքր քանակությամբ պոլիմերային սոսնձով։ Դա ապահովում է աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացումը և արտադրանքի որակի բարելավումը շինարարական ինդուստրիայում։*

*Մեծ գործնական հետաքրքրություն է ներկայացնում, այսպես կոչված, փայտե պլաստիկների՝ փայտի բարակ թերթերի օգտագործումը, որոնք ներծծված են սինթետիկ խեժերով և լավ տաքացվել են բարձր ճնշման դեպքում։ Հեշտությամբ ձևավորվող պլաստիկները, որոնք լցված են փայտե մնացուկներով, կարող են օգտագործվել լուսամուտի շրջանակների, դռան ապակեկալների, դրվագավոր սալերի և կահույքի պատրաստման համար։*



## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*Պոլիմերները սկսում են լուրջ գործնական նշանակություն ձեռք բերել գյուղատնտեսության մեջ, թեև առայժմ նրանց կիրառության փորձը այստեղ դեռ մեծ չէ։ Ամենից առաջ պետք է աշխատել պոլիմերների փոքր խառնուրդների կիրառության վրա՝ հողմահարությունից հողը պահպանելու համար։ Ջերմոցներում ապակու փոխարեն կարելի է օգտագործել բարակ պոլիամիդային, պոլիէթիլենային, ացետիլցելյուլոզային և տերիլենային թաղանթներ, որոնք անց են կացնում ուլտրամանուշակագույն ճառագայթները։ Դա զգալիորեն պակասեցնում է ծածկումների քաշն ու արժեքը, էժանացնում և պարզեցնում է նրանց շահագործումն ու կոնստրուկցիան։*

*Պլաստիկական նյութերից պատրաստված շատ բարակ, թեթև և բացառիկ դիմացկուն անջրաթափանց թաղանթները, ըստ երևույթին, լայն կիրառություն կգտնեն ոռոգման և ջրման գործում, լայնորեն կփոխարինեն ծանր և թանկարժեք բրեզենտին հացահատիկի ժամանակավոր ծածկման, պահեստների շինարարության, գյուղատնտեսական մթերքների փոխադրումների դեպքում, թույլ կտան հիմնականորեն պարզեցնել կերերի սիլոսացման կառուցումները։ Թեթև փրփրապլաստներից պատրաստված հավաքովի տները հիանալի կիրառություն կգտնեն դաշտային ճամբարներում։*

*Միկրոօրգանիզմների և բակտերիաների ազդեցության նկատմամբ կայուն սինթետիկ մանրաթելերի արդյունաբերական արտադրություն կազմակերպելու հետ միասին առաջին անգամ հնարավորություն է ստեղծվել պատրաստել դիմացկուն, չփտող ցանցեր, պարաններ և ձկան որսի այլ գործիքներ։ Փրփրապլաստներն արդեն գործնականորեն դուրս են մղել լողանների և փրկարար միջոցների խցանը։ Նրանցից սկսում են պատրաստել չընկղմվող կատերներ։ Կարելի է կարծել, որ պլաստիկներից ստացված բարակ, չթրջվող, այդ պատճառով շատ թեթև թիթեղները կարող են փոխարինել առագաստների պարուսինը։ 5×2,5 մետր չափի առագաստը, հավանականորեն, կկշռի միայն 1—1,5 կիլոգրամ։*

*Սննդի արդյունաբերության և առևտրի զարգացման կարևորագույն հարցերից մեկը կազմում է տարայի պրոբլեմը։ Ամենալայն կիրառությունն է ձեռք բերում պոլիէթիլենային թաղանթից պատրաստված կշռելու և կապելու մանր տարան․ որանից շինված, հերմետիկ սերտ միացված տոպրակները պիտանի են հեշտությամբ փչացող ամեն տեսակի մթերքների պահպանման համար։ Մի շարք երկրներում պոլիէթիլենից պատրաստված կաթի շշերը փոխարինել են ապակե շշերին։ Պակաս նշանակություն չունի ավելի խոշոր տարան, ներառյալ ամեն տեսակի արկղները, պարկերը և պլաստիկական մասսաներից շինված կիսատակառները։ Պլաստմասսաները կփոխարինեն մետաղին ու ապակուն կոնսերվի արդյունաբերության մեջ։*

*Փչացող սննդամթերքների փոխադրման և պահպանման ժամանակ խիստ կարևոր դեր է խաղում ջերմամեկուսացումը։ Ուստի սառնարանային սարքերում փրփրապլաստներն ունեն ամենալայն հեռանկարները։ Նրանց քաշն աննշան է, իսկ ջերմահաղորդականությունն այնքան փոքր է, որ նրանց մեջ կարելի է պահպանել նույնիսկ հեղուկացված գազեր և հեղուկ օդ, որոնք սովորաբար պարունակվում են թանկարժեք բարդ անոթներում։*

*Լայն տարածում են ստանում, այսպես կոչված, իոնափոխանակման խե-*

ժերը, որոնք հնարավորություն են տալիս ջուրը մաքրելու աղերից բարձր ճնշման կաթսաների սնման համար, կատարել սիրոպների մաքրումը շաքարի արդյունաբերության մեջ, նպաստում են անտիբիոտիկների արտադրության զարգացմանը։

Հեռանկարներ ունեն զանազան երկրներում սկսվող փորձերը ծովի և լճի աղով ներծծված ջրերը իոնափոխանակման խեժերից պատրաստված թաղանթների միջոցով քամելու և քաղցրահամ դարձնելու համար։

Պոլիմերները ավելի խոր են թափանցում կենցաղի մեջ։ Քիմիական և, առաջին հերթին, սինթետիկ մանրաթելերը չտեսնված հորիզոններ են բացում հագուստեղենի և այլ նյութերի արտադրությունը մեծացնելու համար։ Առանձգական ու դիմացկուն սինթետիկ մանրաթելերը զգալիորեն հարստացնում են թողարկվող գործվածքեղենի և տրիկոտաժեղենի ասորտիմենտը։ Սինթետիկ մանրաթելերից արտադրվում են տաք, շատ թեթև, գեղեցիկ և դիմացկուն մուշտակներ և այլ մորթեղեն ապրանքներ, չճմրթվող գործվածքներ, կայուն և չանհետացող ծալքերով կոստյումներ, բազմազան գեղեցիկ սպիտակեղեն, կարճ և երկար գուլպաներ։ Սինթետիկ մանրաթելերը ավելի մեծ չափով են բրդին փոխարինում հագուստեղենի, վերմակների, ծածկոցների, վերարկուների և այլ ապրանքների պատրաստման ժամանակ։

Բրդին փոխարինող սինթետիկ նյութերից պատրաստված բրդե թեթև կոֆտաները նույնպես քիչ են ճմրթվում, ինչպես և բնական բրդի ապրանքները։ Նրանք նույնքան տաք են, բայց դրա հետ միասին ավելի դիմացկուն են։ Նրանք ավելի լավ են լվացվում, քան բրդից պատրաստվածները և, բացի դրանից, գործնականորեն «չեն նստում», օժտված են բրդի նուրբ տեսակների թեթևությամբ։ Մինչդեռ նրանց արժեքը զգալիորեն էժան է։ Հաշվումները ցույց են տալիս, որ տարեկան երեսուն հազար տոննա սինթետիկ մանվածք պատրաստող գործարանը իր արտադրանքով համարժեք է այն բրդին, որ կարելի է ստանալ տասնութ միլիոն ոչխարից, ծախսելով զգալիորեն պակաս աշխատանք։

Նախատեսվել է կենցաղում առաձգական նյութերի օգտագործման նոր բնագավառ՝ սինթետիկ փրփրանյութից թեթև և հարմար ներքնակների, նըստոցների, վերարկուների թեթև աստառների պատրաստումը։

Միանգամայն ակտուալ է հանդիսանում կոշկեղենի պատրաստման համար սինթետիկ նյութերի կիրառության պրոբլեմը։ Ավելի լայն են սկսում կիրառվել պոլիմերային նյութերը բժշկության մեջ պրոթեզման համար, պլաստիկական վիրահատությունների, սրտի, երիկամունքների և այլ վիրահատությունների ժամանակ։

## ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Հսկայական են համաշխարհային գիտության ծառայությունները նոր քիմիական նյութերի՝ պոլիմերների ստեղծման գործում, բայց է՛լ ավելի հսկայական են այն խնդիրները, որոնք կանգնած են նրա առաջ այդ բնագավառում։

Այստեղ ռուս քիմիկոսներին է պատկանում պատվավոր դերը։ Այդ բնագավառում Ա. Մ. Բուտլերովը կատարել է հիմնական աշխատանքը։ Ս. Վ. Լեբեդևը առաջին անգամ մշակել է սինթետիկ կաուչուկի արդյունաբերական



ստացման գիտական մեթոդները, իսկ սովետական ինժեներներն ու բանվորները դրա հիման վրա կազմակերպել են աշխարհում նրա առաջին արդյունաբերական մասսայական արտադրությունը։

Պոլիմերների թեորիայի և արդյունաբերության զարգացման գործում մեծ ծառայություններ ունի Ի. Ի. Օստրոմիսլենսկին, Բ. Վ. Բիզովը, Ի. Լ. Կոնդակովը, Պ. Պ. Շորիգինը, Գ. Ս. Պետրովը՝ պլաստիկական մասսաների հայրենական գիտության և արդյունաբերության պիոները և շատ ուրիշ սովետական գիտնականներ ու ինժեներներ։ Կ. Ա. Անդրիանովն առաջին անգամ մշակել է սիլիցիումի օրգանական պոլիմերների՝ այժմ այնքան լայն կիրառություն գտած սիլիկոնների սինթեզի մեթոդը։ Ա. Ի. Դինցեսը դեռ երեսունական թվականների կեսերին առաջին անգամ զեկուցեց բարձր ճնշման տակ էթիլենի պոլիմերիզացիայի վերաբերյալ լաբորատորիական փորձերի արդյունքները։ Էմուլսիոն պոլիմերիզացիայի գծով առաջին գիտական հրապարակումը պատկանում է Բ. Ա. Դոգադկինին։ Իր թեորետիկ հետազոտությունների հիման վրա Բ. Ա. Դոլգոպլոսկը մշակել է էմուլսիոն պոլիմերիզացիայի արդյունաբերական մեթոդը, կիրառելով օքսիդացման-վերականգնման բաղադրությունները։ Ս. Ն. Ուշակովը և Ա. Ա. Բեռլինը առաջարկեցին պոլիմերների հատկությունների փոփոխման նոր մեթոդը (պատվաստված պոլիմերիզացիա) և այն կիրառեցին պոլիմերային նյութերի տարբեր տիպերի ստացման համար։ Վ. Ա. Կարգինը և Ն. Վ. Միխայլովը առաջարկեցին վիսկոզային մանրաթելի ամրապնդման նոր մեթոդը (պլաստիֆիկացում տաք
ջրով), որը հիմա լայնորեն կիրառվում է արդյունաբերության մեջ։

Պոլիմերների՝ ֆիզիկայի և քիմիայի թեորիայի հիմնական հարցերից շատերը հաջողությամբ մշակվում են Սովետական Միությունում։

Այնուամենայնիվ սովետական գիտնականները դեռևս ոչ պատշաճ արագ տեմպերով են հարստացնում ժողովրդական տնտեսության այդ կարևորագույն ճյուղը։ Իսկ արդյունաբերության աշխատողները միշտ չէ, որ պատշաճ հոգատարություն են ցուցաբերում նրա զարգացման նկատմամբ։ Չի կարելի նորմալ համարել, որ պոլիմերները դեռ չեն ստացել մեր երկրում այն տարածումը, որին նրանք արժանի են։ Նրանց արմատավորումը արտադրության և կենցաղի մեջ պետք է համաժողովրդական գործ դառնա։

Այդ տեսակետից հսկայական խնդիրներ են կանգնած բարձրագույն դպրոցի առաջ։ Նրա պարտքն է արտադրության նոր ճյուղերն ապահովել մասնագետների բարձր որակյալ կադրերով, ամբիոններում զարգացնել դրա հետ կապված գիտական աշխատանքը։ Գործունեության անծայրածիր դաշտ է բացվում ժողտնտխորհների առաջ։

ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիան պետք է ակտիվացնի իր մասնակցությունը այդ բնագավառում տարվող հիմնական գիտական աշխատանքների լուծման գործին, քիմիկոսների լավագույն կադրերը փոխադրի այդքան կարևոր գործի վրա այն հաշվով, որպեսզի ամենամոտ տարիների ընթացքում դուրս գա այստեղ ամենաառաջավոր դիրքերը։

Լուծելով ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի և գիտությունների ռեսպուբլիկական ակադեմիաների հետ գիտական խնդիրներ, ճյուղային ինստիտուտները և գործարանային լաբորատորիաները պետք է դրա հետ միասին մշակեն այն տեխնոլոգիական պրոցեսները, որոնք կապված են պոլիմերների ստացման հետ, կատարել պոլիմերների ստացման և կիրառության մե-

*թոդների արմատավորման աշխատանքները ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում։*

*Պոլիմերների արտադրության զարգացմանն ուղղված գիտական աշխատանքների լայն ֆրոնտը կհանգեցնի այդ բնագավառում նոր նվաճումների։ Հնարավոր է հաջողությունը նրանց կիրառության նույնիսկ այնպիսի շրջաններում, որոնք այժմ կարող են ֆանտաստիկ թվալ։ Սակայն նրանք արդեն հիմա չեն կարող անհնարին համարվել։ Բերեմ մի քանի օրինակներ։*

*Հարց է ծագում, թե չի՞ կարելի արդյոք ստեղծել զուտ անօրգանական, քիմիապես կայուն պոլիմերներ, որոնք ունեն սովորական պոլիմերների պլաստիկական հատկությունները և դիմացկունությունը։ Եթե այդ հաջողվի, ապա այդպիսի պոլիմերները, հավանորեն, աչքի կընկնեն այնքան բարձր ջերմակայունությամբ, որի դեպքում բացառված չի նրանց կիրառությունը նույնիսկ հրադիմացկուն համաձուլվածքների փոխարեն։*

*Չի՞ կարելի արդյոք գտնել նույնպիսի պոլիմերներից գործվածքներ կամ, նույնիսկ, պատրաստի հագուստեղեն անմիջականորեն ստանալու եղանակները, խուսափելով մանման և մանածագործության պրոցեսներից։ Այժմ արդեն արվում են այնպիսի փորձեր, որոնք, ինչպես կարելի է հուսալ, այդ հարցին դրական պատասխան կտան։*

*Օրգանիզմների սպիտակուցները իրենցից ներկայացնում են պոլիմերներ, որոնք օժտված են շատ զարմանալի հատկություններով։ Բայց նրանց հիմնական հատկությունը, թերևս, հանդիսանում է քիմիական ռեակցիաների էներգիայի հաղորդման հնարավորությունը մեծ հեռավորությունների վրա սպիտակուցային կոմպլեքսների երկայնությամբ։ Մեզ մոտ և արտասահմանում սկսում են մոտենալ այդ պրոցեսների էությունը հասկանալուն, որոնք գտնվում են ֆերմենտների գործողության, մկանային աշխատանքի, նյարդային գրգռման հաղորդման հիմքում։ Չի՞ կարելի արդյոք հիմա, հասկանալով այդ պրոցեսների մեխանիզմը, ստեղծել արդեն ոչ թե սպիտակուցային, այլ ավելի հասարակ պոլիմերային սիստեմներ, որոնք օժտված են այդ հատկություններով։ Եթե այդ հաջողվեր, կարելի էր պոլիմերներ կիրառել ոչ միայն նոր նյութերի ստացման համար։ Կհաջողվեր դրանք օգտագործել նաև որպես այն բազմազան քիմիական պրոցեսների արտասովոր ակտիվ սպեցիֆիկ կատալիզատորներ, որոնք ընդունակ են կատարել անհրաժեշտ ռեակցիաները ցածր ջերմաստիճաններում, իսկ գուցե նաև որպես աշխատանքային մարմին՝ քիմիական պրոցեսների էներգիան անմիջականորեն մեխանիկական աշխատանքի փոխարկելու համար։*

*Պարտիայի ցուցումները պոլիմերների արդյունաբերությունն ամեն կերպ զարգացնելու մասին նոր էջ են բացում գիտության զարգացման, ժողովրդական տնտեսության տեխնիկական պրոգրեսի, մեր երկրի աշխատավորների բարեկեցության հետագա վերելքի գործում։*

*«ՊՐԱՎԴԱ» № 8, 1958 թ.։*

---

# ՆՈՐ ՏԻՊԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆ

*Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ*

*Վերջին ժամանակվա միջազգային ամենախոշոր իրադարձություններից մեկը սոցիալիստական պետությունների կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի 1957 թվականի նոյեմբերյան խորհրդակցությունն էր։ Այդ խորհրդակցության Դեկլարացիայում ընդգծված է, որ մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որի սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան։ Կապիտալիզմն անզոր եղավ խանգարելու ոչ միայն ՍՍՌՄ-ի զարգացմանը, այլև անզոր եղավ խանգարելու համաշխարհային պատմական այն մեծ պրոցեսին, որի հետևանքով սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի սիստեմի։*

*շրջանակներից և վերածվեց համաշխարհային Ռումինիան,*

*Չինաստանը, Լեհաստանը, Չեխոսլովակիան, Հունգարիան, Ռումինիան, Կո-Բուլղարիան, Ալբանիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Կորեական Ժողովրդա-դեմոկրատական Ռեսպուբլիկան, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան Սովետական Միության հետ միասին կազմում են սոցիալիզմի և դեմոկրատիայի համաշխարհային հզոր լագերը։ Սոցիալիզմի կառուցման ուղու վրա կանգնած է նաև Հարավսլավիայի Ֆեդերատիվ Ժողովրդական Ռեսպուբլիկան։*

*Այսօր համաշխարհային սոցիալիստական սիստեմն իրենից ներկայացնում է մի հսկա, անընդհատ աճող անպարտելի ուժ։ Եթե 1917 թվականին համաշխարհային արդյունաբերության արտադրանքի մեջ Ռուսաստանի բաժինը կազմում էր ընդամենը 2—3 տոկոս, ապա այսօր սոցիալիզմի համաշխարհային լագերը տալիս է քարածխի համաշխարհային արտադրանքի 37,8 տոկոսը, չուգունի և պողպատի 25 տոկոսը, էլեկտրաէներգիայի արտադրության 17,4 տոկոսը և համաշխարհային արդյունաբերական ամբողջ արտադրանքի 33 տոկոսը՝ նախապատերազմյան շրջանի 7 տոկոսի փոխարեն։ Սոցիալիստական երկրները տալիս են հացահատիկային կուլտուրաների համաշխարհային արտադրանքի մոտ 40 տոկոսը, բամբակի արտադրանքի 33 տոկոսը և այլն։*

*Համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջանալը և նրա անընդհատ զարգացումը հանդիսանում է միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մեծագույն նվաճումը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակը։*

*Միասնական լագերի մեջ սոցիալիստական պետությունների միավորման քաղաքական հիմքը նրանց սոցիալ-տնտեսական սիստեմի ընդհանրությունն է, նպատակների միասնությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմը։*

Սոցիալիստական լագերը պետությունների ժամանակավոր խմբավորում
չէ։ Նրանց միասնությունն ու համագործակցությունը ստեղծվել է հասարակա-
կան զարգացման ընթացքում, սոցիալիզմի և կապիտալիզմի պայքարի ըն-
թացքում։ Սոցիալիստական լագերի պետությունների փոխհարաբերություն-
ները հիմնված են միանգամայն նոր սկզբունքների վրա, սկզբունքներ, որոնք
խորթ են կապիտալիստական պետություններին։ Սոցիալիստական երկրների
կոմունիստական և բանվորական պարտիաների խորհրդակցության Դեկլա-
րացիայում նշված է, որ «Սոցիալիստական երկրները իրենց փոխհարաբերու-
թյունները խարսխում են լիակատար իրավահավասարության, տերիտորիալ
ամբողջականությունը, պետական անկախությունն ու սուվերենությունը հար-
գելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքների վրա։ ...Նրանց
փոխհարաբերությունների անկապտելի մասն է եղբայրական փոխօգնու-
թյունը»։

Սոցիալիզմի լագերի պետությունների համագործակցության ամենաբնո-
րոշ կողմն այն է, որ այդ երկրները շահագրգռված են իրենցից ամեն մեկի
արտադրողական ուժերի զարգացմամբ, քանի որ այդպիսի զարգացումը ամ-
րապնդում է ամբողջ սոցիալիստական լագերի տնտեսական հզորությունը և
արագացնում նրանց գլխավոր նպատակի՝ կոմունիստական հասարակարգի
կառուցման կենսագործումը։

Սոցիալիզմի համաշխարհային լագերի պետությունների միջև տնտեսա-
կան համագործակցության սիստեմատիկ ընդլայնումը և ամրապնդումը ուղ-
ղակի բխում են սոցիալիստական տնտեսության պլանային համաչափ զար-
գացման տնտեսական օրենքի պահանջներից։ Նրանց տնտեսական համագոր-
ծակցության հետագա զարգացման ճանապարհին խոշոր նշանակություն ունի
տնտեսական հեռանկարային պլանների փոխադարձ համաձայնեցումը։

1956 թվականի ամռանը Բեռլինում տեղի ունեցավ սոցիալիստական պե-
տությունների Տնտեսական Փոխադարձ օգնության Խորհրդի նիստ, որտեղ
մանրամասն քննարկվեց ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների
տնտեսության զարգացման 1956—1960 թթ. հնգամյա պլանների կոորդինաց-
ման հարցը, հատկապես, մեքենաշինության, սև և գունավոր մետալուրգիայի,
քարածխի, նավթի, քիմիական արդյունաբերության և գյուղատնտեսության
զարգացման ուղղությամբ։

Այդ համագործակցության շնորհիվ ամեն մի երկիր հնարավորություն
ունի առաջին հերթին զարգացնելու ժողովրդական տնտեսության այն ճյուղե-
րը, որոնց համար նա ունի բնական և տնտեսական առավել նպատակահար-
մար պայմաններ։

Այսպես, օրինակ, Ռումինիան և Հունգարիան, որոնք ունեն նավթի պա-
շարներ, առաջին հերթին զարգացնում են նավթի արդյունաբերությունը, Լե-
հաստանը զարգացնում է քարածխի հանույթը, Հունգարիան, ունենալով բոք-
սիտի համաշխարհային պաշար, զարգացնում է ալյումինի արդյունաբերու-
թյունը և այլն։ Բարեկամությունն ու փոխադարձ վստահությունը հնարավո-
րություն են տալիս զարգացնել նաև արդյունաբերության այնպիսի ճյուղեր,
որոնց հումքը կարելի է ստանալ հարևան պետություններից։ Լեհաստանի,
Չեխոսլովակիայի և Հունգարիայի մետալուրգիական արդյունաբերության
հանքաքարի պահանջի կեսից ավելին ստացվում է ՍՍՌՄ-ից։

Սոցիալիզմի լագերի պետությունների համագործակցությունը հնարավո-



րություն է ստեղծել արդյունաբերության շատ ճյուղերի մասնագիտացման ու
կոոպերացման համար։

1957 թվականի օգոստոսին ԳԴՌ-ի և ՍՍՌՄ-ի պարտիական, կառավա-
րական դելեգացիաների բանակցությունների ժամանակ նշվեց, որ երկու եր-
կրների տնտեսական համագործակցության մեջ հատկապես կարևոր է ԳԴՌ-ի
արդյունաբերական ձեռնարկություններին հումք մատակարարելու և արտա-
դրանքի համար շուկա ապահովելու հարցը, ինչպես նաև նրանց արդյունա-
բերության առանձին ճյուղերի կոոպերացիայի հարցը։

Սոցիալիզմի լագերի պետությունների համագործակցության կոնկրետ
ձևերն են՝ արտաքին առևտուրը, վարկերի տրամադրումը, գիտա-տեխնիկա-
կան օգնությունը, կադրերի պատրաստումը, կուլտուրական կապերը, առաջա-
վոր փորձի փոխանակումը, ռազմական համագործակցությունը և այլն։

Սոցիալիստական լագերի երկրների տնտեսության պլանային զարգացու-
մը և նրանց ժողովրդական տնտեսության պլանների փոխադարձ կապը լայն
բազա են ստեղծում արտաքին առևտրի անընդհատ ընդլայնման համար։ Եթե
կապիտալիստական պետությունները արտաքին առևտուրը համարում են մի-
մյանց հաշվին հարստանալու աղբյուր, միմյանց տնտեսական կախման մեջ
գցելու և մրցակցության միջոց, ապա սոցիալիստական պետությունները դրա
մեջ տեսնում են փոխադարձ օգնության միջոց, օգնություն, որը երկու կող-
մերի համար էլ շահավետ է։ Սոցիալիզմի լագերի պետությունները ոչ թե
միմյանց վզին փաթաթում են այս կամ այն ապրանքը, ինչպես անում են
կապիտալիստական պետությունները, այլ արտահանում են այն, ինչ ուզում
են և ներմուծում են այն, ինչի կարիք ունեն։ Այսպես, օրինակ, ՍՍՌՄ-ը
ՉԺՌ-ից ստանում է գունավոր մետաղներ, գյուղատնտեսական մթերքներ, իսկ
Չինաստանը ՍՍՌՄ-ից ստանում է մեքենաներ և հանքանյութ։

1957 թվականի հունվարին ՍՍՌՄ-ի և Չեխոսլովակիայի միջև կնքված
պայմանագրի համաձայն Չեխոսլովակիան ՍՍՌՄ-ից ստանում է նավթ,
պղինձ, ալյումին, հացահատիկ, բամբակ, ֆոտոապարատներ, ժամացույցներ
և այլն, իսկ Սովետական Միությունը Չեխոսլովակիայից ստանում է նավեր,
էլեկտրաքարշիչներ, դիզելային էլեկտրակայաններ, մետաղահատ հաստոց-
ներ, ավտո-ինքնաթափեր, շաքար, կաշի, կոշիկ և այլն։ Բուլղարիան ՍՍՌՄ-
ից ստանում է սև մետաղ, բամբակ, պարարտանյութ, ավտոդողեր և այլն,
իսկ Սովետական Միությունը Բուլղարիայից ստանում է ծխախոտ, պատրաս-
տի հագուստ, կոշիկ, կահույք, մրգեր, գինի և այլն։ Լեհաստանը, որն ունի
զարգացած նավաշինական արդյունաբերություն, նավեր է տրամադրում սո-
ցիալիզմի լագերի պետություններին։

Միմյանց վաճառվող ապրանքների գները սոցիալիստական երկրները
որոշում են կամավոր կերպով, փոխադարձ շահավետության պայմաններով։
Այդպիսի բարենպաստ պայմանների շնորհիվ առևտուրն անընդհատ ընդ-
լայնվում է սոցիալիստական պետությունների միջև, և այժմ այն կազմում է
նրանցից ամեն մեկի ամբողջ արտաքին առևտրի հիմնական մասը։ Այսպես,
օրինակ, 1954 թվականին ՍՍՌՄ-ի և մյուս ժողովրդա-դեմոկրատական երկր-
ների միջև կատարված առևտրի ծավալը կազմեց Սովետական Միության ամ-
բողջ արտաքին առևտրի ծավալի 80 տոկոսը, Չինաստանի առևտրի՝ նույն-
պես 80 տոկոսը, Լեհաստանինը՝ 70 տոկոսը, Չեխոսլովակիայինը՝ 72 տոկո-
սը, Բուլղարիայինը՝ 87,4 տոկոսը, Հունգարիայինը՝ 70 տոկոսը, Ռումինիա-

*յինը՝ 72 տոկոսը, ԳԴՌ-ինը՝ 75 տոկոսը: Ալբանիան, ԿԺԴՌ-ն և ՄԺՌ-ն առևտուր են անում հիմնականում միայն ՍՍՌՄ-ի և ժողովրդա-դեմոկրատական երկրների հետ:*

*1957 թվականին ՍՍՌՄ-ի և Չեխոսլովակիայի միջև եղած ապրանքաշրջանառությունը, 1956 թվականի համեմատությամբ, ավելացավ 11 տոկոսով, իսկ ՍՍՌՄ-ի և Բուլղարիայի միջև՝ 50 տոկոսով:*

*Սոցիալիստական լագերի երկրների միջև տնտեսական համագործակցության մյուս կարևոր ձևը ցածր տոկոսներով միմյանց վարկավորումն է:*

*Ի տարբերություն կապիտալիստական պետությունների, ՍՍՌՄ-ը վարկ է տրամադրում առանց որևէ քաղաքական պայմանի: Ստացված վարկը կարող է օգտագործվել տվյալ երկրի հայեցողությամբ: ՍՍՌՄ-ը ժողովրդա-դեմոկրատական երկրներին առավելագույն բարենպաստ պայմաններով տրամադրել է 21 միլիարդ ռուբլի ընդհանուր գումարով երկարատև վարկ:*

*Այն ժամանակից ի վեր, երբ ժողովրդա-դեմոկրատական երկրները ձեռնամուխ եղան ժողովրդական տնտեսության հեռանկարային պլանների կենսագործմանը, հատուկ նշանակություն ստացավ երկարատև տնտեսական պայմանագրերի կնքումը: Այդպիսի համաձայնագրերը ոչ միայն հնարավորություն տվեցին երկար ժամանակ անխափան կերպով անհրաժեշտ քանակությամբ մեքենաներ, սարքավորումներ և հումք ստանալ, այլև երաշխավորում են ամեն մի երկրի արտադրանքի վաճառքը արտաքին շուկայում:*

*Սոցիալիզմի լագերի պետությունների տնտեսական համագործակցության կարևոր ձևերից մեկը գիտական նվաճումների և արտադրա-տեխնիկական փորձի փոխանակումն է, որը նույնպես հիմնովին տարբերվում է կապիտալիստական պետությունների կողմից միմյանց ցույց տրվող օգնությունից:*

*Կապիտալիստական պետությունները տեխնիկայի նորությունները ոչ միայն միմյանց չեն հաղորդում, այլև աշխատում են ամեն կերպ թաքցնել դրանք, որպեսզի ապահովեն իրենց գերիշխող դիրքը:*

*Իր ժամանակին կապիտալիստական պետությունների կողմից մեզ ցույց տրված որոշ տեխնիկական օգնությունը 20 անգամ ավելի թանկ է նստել մեզ, քան այն օգնությունը, որ մենք ցույց ենք տալիս ժողովրդա-դեմոկրատական երկրներին:*

*ՍՍՌՄ-ը ժողովրդա-դեմոկրատական բոլոր պետություններին տալիս է գիտական նորություններ, նորագույն տեխնիկայի արտոնագրեր և դրանց դիմաց ստանում է միայն այն փաստական ծախսը, որը կատարվել է նախագիծը, գիտական փաստաթղթերը կազմելու վրա: Նույն ձևով են վարվում միմյանց նկատմամբ նաև սոցիալիզմի լագերի մյուս պետությունները:*

*1956 թվականի հոկտեմբերի տվյալներով ՍՍՌՄ-ը սոցիալիստական երկրներում արդյունաբերական և այլ օբյեկտների կապիտալ շինարարության համար տրամադրել էր 1334 նախագիծ, տարբեր հաստոցների մեքենաների և սարքավորումների արտադրության համար՝ 3167 կոմպլեքս գծագրեր, ինչպես նաև արտադրական-տեխնիկական պրոցեսների 1180 նկարագրություններ և հաշվարկներ: Իր հերթին ՍՍՌՄ-ը նույնպես ժողովրդական դեմոկրատիայի երկրներից ստանում է տեխնիկական փաստաթղթեր:*

*Եթե կապիտալիստական պետություններն ամեն կերպ խանգարում են հետամնաց երկրների արդյունաբերության զարգացմանը և հատկապես նրանց ինդուստրացմանը, ապա Սովետական Միությունը ժողովրդա-դեմոկրատական*



*երկրներին կոմպլեքսային սարքավորումներ, մեքենաներ, հաստոցներ տրամադրելու միջոցով օգնում է նրանց զարգացնելու արդյունաբերությունը:*

*Կնքված պայմանագրերին համապատասխան Սովետական Միությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներին օգնում է 391 ձեռնարկություններ և ավելի քան 90 առանձին ցեխեր ու սարքեր կառուցելու գործում: ՍՍՌՄ-ը ՉԺՌ-ին օժանդակեց առաջին հնգամյակի ընթացքում (1953—1957 թթ.) 156 ձեռնարկություն և 21 առանձին ցեխ կառուցելու գործում: Մեր կողմից Չինաստանին մատակարարվող սարքավորման ընդհանուր արժեքը կազմում է մոտավորապես 5 միլիարդ 600 միլիոն ռուբլի: 1956 թվականի մարտին կնքված նոր պայմանագրի համաձայն ՍՍՌՄ-ը Չինաստանին օգնելու է ևս 55 նոր արդյունաբերական ձեռնարկություններ կառուցելու գործում:*

*ՍՍՌՄ-ի օգնությամբ կառուցված և կառուցվող արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների թվին են պատկանում Վարշավայի ավտոմոբիլային գործարանը, Լեհաստանի Նովայա-Գուտա քաղաքի Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը, Չեխոսլովակիայի մետալուրգիական կոմբինատը, Բուլղարիայի քիմիական կոմբինատը և այլն: 1956—1960 թթ. ՍՍՌՄ-ի օգնությամբ Բուլղարիայում կառուցվելու են պղնձաձուլական, սուպերֆոսֆատի, տրակտորի (պահեստային մասերի) և այլ գործարաններ:*

*Սովետական Միությունը բարեկամ պետություններին օգնում է նաև ատոմային էներգիայի արտադրությունը և նրա խաղաղ օգտագործումը կազմակերպելու ասպարեզում: ՍՍՌՄ-ում Չինաստանի համար պատրաստվում է 5—6 հազար կիլովատ հզորությամբ ատոմային ռեակտորի սարքավորում:*

*Փոխադարձաբար մեծ օգնություն են ցույց տալիս միմյանց նաև ժողովրդա-դեմոկրատական երկրները: Նովի Դվորայում (Լեհաստան) Լեհաստանի ու Չեխոսլովակիայի միացյալ ուժերով կառուցվել է էլեկտրակայան, որը էլեկտրաէներգիա է տալիս երկու երկրներին: Չեխոսլովակիան երկարատև ժամանակով վարձակալել է Լեհաստանի Շչեցին նավահանգստի մի մասը և դրանով իսկ Օդեր գետի վրայով ելք է ստացել դեպի Բալթիկ ծով:*

*Այսպիսի հարաբերություններ հնարավոր է միայն փոխադարձ հարգանքի ու վստահության պայմաններում, երբ ոչ մեկը չի ձգտում մյուսի հաշվին հարստանալ:*

*Սոցիալիզմի լագերի երկրները համագործակցում են նաև մասնագետ կադրերի պատրաստման գործում: Սովետական Միության շատ գործարաններում և բուհերում պրակտիկա են անցնում և սովորում են ժողովրդա-դեմոկրատական երկրներից եկած հազարավոր երիտասարդներ: Օրինակ, Կիրովականի Քիմկոմբինատում մի քանի տարի շարունակ պրակտիկա էին անցնում մի խումբ չինական ընկերներ, որոնք այժմ աշխատում են ՉԺՌ-ի նորաստեղծ քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում:*

*Օրավուր լայնանում և ամրապնդվում են նաև կուլտուրական կապերը սոցիալիզմի լագերի պետությունների միջև: Սովետական Միությունում արդեն եղել են ժողովրդա-դեմոկրատական համարյա բոլոր երկրների արվեստի, գրականության աշխատողները, մեզ մոտ սիստեմատիկ կերպով ցուցադրվում են նրանց լավագույն կինոնկարները և այլն:*

*Ժողովրդա-դեմոկրատական երկրներում հայտնի են սովետական հարյուրավոր լավագույն կինոնկարներ: Սովետական Միության ժողովուրդների լե-*

*զուններով հրատարակվում են ժողովրդա-դեմոկրատական երկրների գրողների
լավագույն գործերը և այլն:*

*Կուլտուրական այսպիսի համագործակցությունը խոշոր նշանակություն
ունի, քանի որ դրա շնորհիվ մենք իրար ավելի մոտիկից ենք սկսում ճանա-
չել, իսկ ինչքան ավելի լավ ճանաչենք միմյանց, այնքան ավելի ամուր կլի-
նի մեր բարեկամությունը:*

*Սոցիալիստական պետությունների համագործակցության առավելություն-
ները կապիտալիստական պետությունների փոխհարաբերությունների նկատ-
մամբ առաջին հերթին արտահայտվում է բոլոր սոցիալիստական պետու-
թյունների արտադրության զարգացման ավելի արագ տեմպերով: 1957 թվա-
կանին սոցիալիստական երկրները իրենց արդյունաբերության համախառն
արտադրանքը 1937 թվականի համեմատությամբ ավելացրել են 345 տոկոսով,
իսկ կապիտալիստական երկրներն ավելացրել են ընդամենը 101 տոկոսով:*

*Արդեն 1956 թվականին արդյունաբերության արտադրության նախապա-
տերազմյան մակարդակը Չեխոսլովակիայում գերազանցվեց 2,7 անգամ,
Հունգարիայում՝ 3,2 անգամ, Լեհաստանում՝ ավելի քան 4 անգամ, Բուլղա-
րիայում՝ 6,5 անգամ, Ալբանիայում՝ 11 անգամ: Այժմ Չինաստանում արտա-
դրվում է 6 անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք, քան 1949
թվականին:*

*Սոցիալիստական երկրների փոխադարձ օգնությունը հնարավորություն
է տալիս արդյունաբերության արագ զարգացման հետ միաժամանակ կատա-
րել գյուղատնտեսության վերափոխում սոցիալիստական բազայի վրա:
ՉԺՌ-ում գյուղական տնտեսությունների 97 տոկոսը արդեն ընդգրկ-
ված են կոլեկտիվ տնտեսությունների մեջ: Բուլղարիայում սոցիալիստական
սեկտորը գրավում է մշակովի հողերի 87 տոկոսը, Չեխոսլովակիայում՝ 60
տոկոսը, Ռումինիայում՝ 42 տոկոսը, Կորեական Ժողովրդա-դեմոկրատական
Ռեսպուբլիկայում՝ 81,2 տոկոսը և այլն:*

*Սոցիալիստական երկրները ունեն այն ամենը, ինչ որ անհրաժեշտ է
առավել զարգացած կապիտալիստական երկրներին յուրաքանչյուր շնչին ընկ-
նող արտադրանքի չափով հասնելու և անցնելու համար: Բայց այդ խնդիրը
կվճռվի ավելի արագ, եթե սոցիալիստական երկրների միջև գոյություն ունե-
ցող տնտեսական համագործակցությունը ավելի ամրապնդվի և կատարելա-
գործվի աշխատանքի խելացի բաշխման, կոոպերացման ու ժողովրդական
տնտեսության զարգացման պլանների կոորդինացման հիման վրա:*

*Այսօր արդեն մենք հպարտությամբ նշում ենք այն փաստը, որ Սովետա-
կան Միությունը պատմական կարճ ժամանակում գիտության և տեխնիկայի
մի քանի կարևոր ճյուղերի զարգացման աստիճանով, ինչպես նաև տեխնի-
կական կադրերի պատրաստման ու մասնագետների քանակով, արդեն հասել
և անցել է կապիտալիստական երկրներին, այդ թվում՝ ԱՄՆ-ին: Սովետական
մարդիկ են ստեղծել երկրի առաջին արհեստական արբանյակները, որոնք
նոր դարագլուխ բացեցին համաշխարհային գիտության զարգացման մեջ:*

*Սոցիալիզմի լագերի պետությունները համագործակցում են նաև արտա-
քին քաղաքականության բնագավառում: Դրա գլխավոր նպատակը կոլեկտիվ
անվտանգության սիստեմի ստեղծումն է, ռազմական բազաների ու ռազ-
մական բլոկների վերացումը, ատոմային զենքի արգելումը և զինված ուժերի
կրճատումը, Գերմանիայի, Վիետնամի ու Կորեայի վերամիավորումը որպես*



*խաղաղասեր դեմոկրատական պետություններ, Չինական Ժողովրդական Ռես-
պուբլիկան ՄԱԿ-ի մեջ ընդունելը, ինչպես նաև պետությունների խաղաղ գո-
յակցության մասին Չինաստանի ու Հնդկաստանի հռչակած և տասնյակ պե-
տությունների պաշտպանությունը գտած «Փանչա շիլա»-ի՝ 5 սկզբունքների
կենսագործումը:*

*ՍՍՌՄ-ը և ժողովրդա-դեմոկրատական երկրները «եկեք զինվենք» լոզուն-
գի փոխարեն առաջարկում են «եկեք առևտուր անենք» լոզունգը, դրա հիմ-
քում դնելով «մենք վաճառում ենք այն, ինչ որ դուք չունեք և գնում ենք այն,
ինչ որ դուք ուզում եք վաճառել» սկզբունքը: Հենց այդ հիմունքներով էլ
ՍՍՌՄ-ը այժմ առևտուր է անում ավելի քան 60 պետությունների հետ, Հուն-
գարիան՝ 80 պետությունների հետ, իսկ Չեխոսլովակիան՝ համարյա աշխարհի
բոլոր պետությունների հետ:*

*Ելնելով տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ
գոյակցության լենինյան սկզբունքից, սոցիալիզմի լագերի պետությունները
պատրաստ են առևտուր անել կապիտալիստական բոլոր երկրների հետ, բայց
իրավահավասարության և փոխադարձ շահավետության սկզբունքով, առանց
որևէ նախնական պայմանի:*

*Սակայն ԱՄՆ-ի ագրեսիվ իմպերիալիստական շրջանները, վարելով, այս-
պես կոչված, ուժի դիրքերի քաղաքականություն, «կոմունիզմի դեմ պայքարի»
քողի տակ ձգտում են իրենց տիրապետությանը ենթարկել ավելի ու ավելի
մեծ թվով երկրներ, դրդում են ոչնչացնել դեմոկրատական ազատությունները,
սպառնում են կապիտալիստական զարգացած երկրների ազգային անկախու-
թյանը, ցանկանում են նոր ձևով գաղութային լուծ դնել ազատագրված ժո-
ղովուրդների վզին և թշնամական սիստեմատիկ քայքայիչ գործունեություն են
ծավալում ընդդեմ սոցիալիստական երկրների:*

*Այդ մասին է վկայում այն փաստը, որ ԱՄՆ-ը տարին 125 միլիոն դո-
լար են հատկացնում սոցիալիզմի լագերի պետությունների դեմ քայքայիչ
աշխատանք կազմակերպելու նպատակով: ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի
ագրեսիվ շրջանները ստեղծեցին Հյուսիս-ատլանտյան բլոկը, ՍԵԱՏՕ-ն, Բաղ-
դադի պակտը, որոնք բացահայտ ագրեսիվ նպատակներ են հետապնդում և
ուղղված են Սովետական Միության, սոցիալիզմի ողջ լագերի և Ասիայի ու
Աֆրիկայի՝ գաղութային լծից ազատագրված երկրների ժողովուրդների դեմ:*

*Անգլո-ամերիկյան իմպերիալիզմի բացահայտ ագրեսիվ քաղաքականու-
թյունը սոցիալիզմի լագերի պետությունների համար անհրաժեշտ դարձրեց
հատուկ ուշադրություն նվիրել իրենց ռազմական ուժերի համագործակցու-
թյանը և կոորդինացմանը:*

*Հաշվի առնելով նոր պատերազմի վտանգի և խաղաղասեր պետություն-
ների ազգային անկախության համար ստեղծված սպառնալիքի ուժեղացումը,
Եվրոպայի ժողովրդա-դեմոկրատական երկրները և Սովետական Միության
ներկայացուցիչները 1955 թվականի մայիսի 14-ին Վարշավայում բարեկա-
մության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագիր կնքե-
ցին: Պայմանավորվող կողմերը որոշեցին, որ Եվրոպայում, պայմանագրին
մասնակից պետություններից մեկի կամ մի քանիսի վրա որևէ պետության
կամ պետությունների խմբի կողմից զինված հարձակման դեպքում, պայմա-
նագրի մասնակից յուրաքանչյուր պետություն, հարձակման ենթարկված պե-
տությանը կամ պետություններին ցույց կտա անհապաղ օգնություն բոլոր*

միջոցներով, որոնք նա անհրաժեշտ կգտնի, ներառյալ զինված ուժ գործադրելը։

Սոցիալիստական պետությունների համերաշխությունն ուղղված չէ որևէ այլ պետության դեմ։ Ավելին, այն ծառայում է բոլոր խաղաղասեր ժողովուրդների շահերին, զսպելով ռազմատենչ իմպերիալիստական շրջանների ագրեսիվ նկրտումները, պաշտպանելով և խրախուսելով խաղաղության ամրապնդվող ուժերին։ «Սոցիալիստական երկրները դեմ են աշխարհի բաժանմանը ռազմական բլոկների,— ասված է սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների խորհրդակցության Դեկլարացիայում։— Բայց ստեղծված հանգամանքներում, երբ արևմտյան տերությունները հրաժարվում են ռազմական բլոկները փոխադարձության հիման վրա վերացնելու մասին սոցիալիստական երկրների առաջարկներն ընդունելուց, պետք է գոյություն ունենա և ամրապնդվի Վարշավայի պակտի կազմակերպությունը, որը պաշտպանական բնույթ ունի և ծառայում է Եվրոպայի ժողովուրդների անվտանգության ու ամբողջ աշխարհի խաղաղության պահպանմանը»։

Սովետական Միությունը միանգամայն ճիշտ վարվեց, որ Հունգարական ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության խնդրանքով, համաձայն Վարշավայի պակտի, իր զինված ուժերի միջոցով օգնեց հունգար ժողովրդին կոնտրռևոլյուցիան տապալելու գործում։

Լիակատար իրավահավասարության, փոխադարձ շահավետության և ընկերական փոխօգնության հիման վրա սոցիալիստական երկրների միջև հաստատված տնտեսական և կուլտուրական լայն համագործակցությունը կարևոր դեր է խաղում սոցիալիստական պետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու քաղաքական անկախության ամրապնդման, ամբողջությամբ վերցրած սոցիալիստական միաբանության ամրապնդման գործում։ Սոցիալիստական պետությունները ավելի են ընդլայնում ու կատարելագործում իրենց բազմակողմանի համագործակցությունը։

«Սոցիալիզմի երկրների եղբայրական հարաբերությունների և բարեկամության ամրապնդման համար,— ասված է սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների Մոսկվայի խորհրդակցության Դեկլարացիայում,— անհրաժեշտ է կոմունիստական և բանվորական պարտիաների մարքս-լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականություն, անհրաժեշտ է բոլոր աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալիզմը հայրենասիրության հետ զուգորդելու ոգով, վճռաբար պայքարել բուրժուական նացիոնալիզմի և շովինիզմի մնացուկների հաղթահարման համար։ Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների բոլոր հարցերը կարող են լիովին լուծվել ընկերական քննարկման ճանապարհով, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ պահպանման հիման վրա»։

Սոցիալիզմի լագերի պետությունների համագործակցությունն ու միասնությունը անսասան են։ Աշխարհում չկա ոչ մի ուժ, որ կարողանա խախտել այդ միասնությունը։

---

# ԱՅԴՊԵՍ ԷԼ ՍՊԱՍԵԼԻ ԷՐ

## Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Ստրատեգիա և նավթ՝ ահա այն գլխավոր մոտիվները, որոնք բնորոշում են ամերիկա-անգլիական իմպերիալիստների գաղութային, ագրեսիվ քաղաքականությունը Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում։

Տարբեր ճանապարհներով ու միջոցներով՝ սկսած Բաղդադի պակտից, էյզենհաուերի դոկտրինայից, տնտեսական ճնշումից ու կառավարական բռնի հեղաշրջումներից մինչև այդ երկրները զորք ուղարկելը, նրանք ուզում են իրենց ենթարկել արաբական երկրները, իրենց շահատենչ ագրեսիվ նպատակներով օտագործել նրանց բնական հարստություններն ու տերիտորիան։ Իմպերիալիստների գլխավոր ջանքերն ուղղված են այն բանին, որպեսզի Մերձավոր և Միջին Արևելքի երկրներին կապելով տարբեր դաշինքներով և ռազմական բլոկներով, խախտեն նրանց միասնությունը, մեկուսացնեն, բաժանեն և ստրկացնեն նրանց առանձին-առանձին։ Այդ երկրների մասնատվածությունը գաղութարարների փրկությունն է։ Նրանց միասնությունը՝ գաղութարարների պարտությունը։

Ամերիկյան և անգլիական իմպերիալիստները դիմեցին ագրեսիայի, փորձեցին մեկուսացնել Եգիպտոսը և Սիրիան՝ արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման առաջավոր ուժերին, բայց պարտություն կրեցին։ Իմպերիալիստների ռանձգությունները անհաջողության կմատնվեն առավել ևս այժմ, երբ Եգիպտոսը և Սիրիան արդեն միավորվել են մեկ միասնական՝ Արաբական միացյալ ռեսպուբլիկայի մեջ, որի նպատակն է ամրապնդել արաբների միասնությունը՝ ընդդեմ իմպերիալիզմի։

Սիրիայի արտաքին գործերի մինիստր Սալահ էդ-Դին Բիթարը վերջերս հայտարարեց, որ արաբական պետությունների և ԱՄՆ-ի նորմալ հարաբերությունների վերականգնումը հնարավոր չէ այնքան ժամանակ, քանի դեռ ամերիկացիները չեն փոխել իրենց քաղաքականությունը, որը հիմնված է եռյակ համաձայնության (նկատի ունի 1950 թվականի ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի դեկլարացիան, որտեղ Մերձավոր և Միջին Արևելքում խաղաղությունը պահպանելու պատրվակի տակ նրանք իրենց հավակնությունները հռչակեցին այդ շրջանում իրենց տիրապետությունը ապահովելու վերաբերյալ), Բաղդադի պակտի և էյզենհաուերի դոկտրինայի վրա, որոնք ժողովուրդների ներքին գործերին միջամտելու արտահայտություն են։

Սակայն ամերիկա-անգլիական գաղութարարները չեն դադարեցնում իրենց մեքենայությունները։ Գաղութային լծից ազատագրված ժողովուրդներին քաղաքականապես և տնտեսապես ստրկացնելու նպատակով նրանք դիմում են, այսպես կոչված, «օգնության» քաղաքականությանը, որը տրվում է այն երկրներին, որոնք համաձայնվում են կատարել իմպերիալիստների պահանջները։

ԱՄՆ-ի կառավարությունը զգալի չափով ավելացրեց ռազմական «օգնությունը» Իրանին և Պակիստանին միայն այն բանից հետո, երբ նրանք միացան Բաղդադի պակտին։ Այդ «օգնության» մեջ է մտնում ամերիկյան ռազմական խորհրդատուների ուղարկումը այդ երկրները։ Միայն Թուրքիայում ամերիկյան ռազմական միսիան հաշվվում է 1500 մարդ։ ԱՄՆ-ի բանակի ռազմական «խորհրդատուների» խմբեր կան Պակիստանում (250 մարդ) և Իրանում (450 մարդ)։ Սպառազինությունների համար բացահայտորեն տրամադրվող «օգնության» ոչ ավելի, քան 10—20 տոկոսն են կազմում, այսպես կոչված, «տնտեսական զարգացմանը» հատկացվող ասիգնացիաները։ Բայց դրանք նույնպես ոչ այլ ինչ են, եթե ոչ ռազմական նավահանգիստների, ստրատեգիական ճանապարհների և այլ «ոչ ռազմական» օբյեկտների շինարարության համար տրամադրվող հատկացումներ։ Շատ բնորոշ է «Էթելաաթե Հաֆթեգի» իրանական շաբաթաթերթի խոստովանությունը։ Ըստ այդ թերթի, Իրանը նոր տարում (այն սկսվում է մարտի 22-ից) պետական բյուջեում 10 մլրդ ռիալ դեֆիցիտ կունենա։ Թերթը եզրակացնում է, որ դա ռազմական մեծ ծախսերի (8 մլրդ ռիալ) հետևանք է, և եթե Իրանը Բաղդադի պակտի անդամ չլիներ, ապա նրա էկոնոմիկան այդպիսի ծանր դրության մեջ չէր ընկնի։

Նմանօրինակ «օգնությունը» շատ շահութաբեր ձեռնարկում է, առաջին հերթին, ամերիկյան նավթային մոնոպոլիաների համար, որոնք վիթխարի շահույթներ են ստանում այդ շրջանի բնակչությանը և բնական հարստությունները շահագործելուց։ Հայտնի է, որ էյզենհաուերի դոկտրինայով ԱՄՆ-ի կառավարությունը արաբական պետություններին 200 մլն դոլար է խոստացել 1958—1959 թվականների ընթացքում։ Սակայն միայն ամերիկյան «ԱՐԱՄԿՈ» ընկերությունը, որը գործում է հիմնականում Սաուդական Արաբիայում, 1955 թվականին 581,2 մլն դոլար շահույթ էր ստացել։

Սակայն որքան էլ տարօրինակ է, դեռևս կան կառավարություններ, որոնք գայթակղվում են ամերիկյան «օգնության» փշրանքներով և դրանով իսկ սպառնալիքի տակ են դնում իրենց երկրների ազգային անկախությունը և սուվերենությունը։

Թե ուր է տանում այդ «օգնությունը» և ինչպիսին են նրա նպատակները, շատ լավ երևում է Թուրքիայի օրինակով։ Հայտնի է, որ արդեն տասը տարի է, ինչ Թուրքիան ամերիկյան իմպերիալիստների հատուկ խնամակալության տակ է գտնվում։ «Ֆորչուն» ժուռնալը նույնիսկ Թուրքիան համարում է ամերիկյան «օգնության» «փորձադաշտ»։ Սակայն Թուրքիային ցույց տրվող ԱՄՆ-ի ամբողջ «օգնությունը» ուղղված է սոսկ նրա ռազմականացմանը։ 1947—1956 թթ. Թուրքիայի ռազմական ծախսերը ավելի քան մեկ ու կես անգամ գերազանցել են ԱՄՆ-ի «օգնությամբ» ստացված ընդհանուր գումարից։ Թուրքիական էկոնոմիկան ուժասպառ է լինում ռազմականացման ծանր բեռի տակ։ Ռազմական ծախսերը կազմում են երկրի բյուջեի 40 տոկոսը։ Թուրքիայի արտաքին պարտքը հսկայական գումարի է հասնում՝ 400 մլն ֆունտ ստեռլինգ։ ԱՄՆ-ից կախվածություն, տնտեսության միլիտարիզացիա, ինֆլյացիա, հարկերի աճ, ժողովրդի աղքատության ուժեղացում՝ ահա թե ինչ է «աճեցրել» ամերիկյան «օգնությունը» իր «փորձադաշտում»։

Սակայն Թուրքական կառավարող շրջանները շարունակում են իրենց հակաժողովրդական և ավանտյուրիստական քաղաքականությունը։ Թուրքիայի կառավարությունը, ի տարբերություն ՆԱՏՕ-ի մասնակից մի շարք ուրիշ



երկրների կառավարությունների, ՆԱՏՕ-ի խորհրդի դեկտեմբերյան սեսիայում գրավելով առանձնապես ագրեսիվ դիրք և կոչելով սպառազինությունների մրցավազքի հետագա ուժեղացման, Թուրքիային անհապաղ միջուկային ու հրթիռային զենք մատակարարելու, ցույց տվեց, որ ինքը մտադիր է այսուհետև նույնպես վարել այնպիսի քաղաքականություն, որը առաջին հերթին լուրջ վտանգ է ստեղծում հենց իր՝ Թուրքիայի համար։

Ի՞նչն է բնորոշ Թուրքական ագրեսիվ, ավանտյուրիստական շրջանների նման վարքագծին։

Քաղաքատնտեսությունից հայտնի է, որ կապիտալիզմի պայմաններում ամենաանսպասելի բաները կարող են ապրանքի վերածվել։ Ազգային սուվերենություն, քաղաքական ու տնտեսական անկախություն — ի՛նչ ասես, որ վաճառքի չեն հանում մեր ժամանակներում որոշ պետությունների շահատենչ գործիչները։ Նրանց «ապրանքը» գովաբանում և թմբկահարում են թե՛ քաղաքական գործիչները, թե՛ ծախված մամուլը։ Սակայն այդ ի՞նչ է դրված վաճառասեղանին։— Դա Սովետական Միությանը ամենամոտիկ մեր տերիտորիան է, իրար առաջ կտրելով բացատրում են նրանք։ Ամերիկացիները պետք է վերջապես հասկանան, գրում է «Ջումհուրիեթ» թերթում ումն Ջոշար, որ «Սովետներին ամենաուժեղ հարվածը կհասցվի Թուրքիայի տերիտորիայից, քանի որ այդ հարվածը կարելի է հասցնել փոքր ռադիուսի գործողության հրթիռով, որոնցից ներկայումս ունի ազատ աշխարհը։ Հաշվի առնելով այդ ամենը, բնական կլինի ավելացնել ԱՄՆ-ի օգնությունը Թուրքիային մինչև այնպիսի չափերի, որոնք նրան հնարավորություն տային շարունակելու կատարել իր պարտականությունները»։

Բայց միայն իրենց տերիտորիան չէ, որ վաճառքի են հանել Թուրքիայի կառավարողները։ Վաճառվում է նաև էժան միս՝ պարզ է թնդանոթային, մարդկային։ Օրերս ԱՄՆ-ում Թուրքական դեսպան Ուրգյուպլյուն Նյու-Յորքում կազմակերպված մի նախաճաշի ժամանակ հայտարարեց, որ Թուրքական մեկ զինվորի վրա ամեն տարի ծախսվում է 136 դոլար, իսկ ամերիկյան մի զինծառայողի վրա՝ 5500 դոլար։ Ուրեմն, եզրակացրել է դեսպանը, անհրաժեշտ է, որպեսզի ամերիկյան կառավարությունը ավելի լավ նայի այդքան էժան թնդանոթի միս մատակարարող ԱՄՆ-ի հավատարիմ դաշնակից Թուրքիային և նրան օգնություն ցույց տա մյուս երկրների համեմատությամբ «ավելի բարձր ցուցնակով»։

Իսկ Թուրքական ռեակցիոն մամուլը բոլոր դեպքերում անմիջապես խեղաթյուրում է միջազգային լարվածության մեղմացման նպատակին ուղղված Սովետական կառավարության յուրաքանչյուր կոնստրուկտիվ առաջարկություն։ «Ուլուս» թերթի տեսաբան Շ. Էսմերը առանց ամաչելու սևով սպիտակի վրա գրում է. «...Խրուշչովը հայտարարել է, որ մի գեղեցիկ օր նա կոչնչացնի (?) Թուրքիան», թեև քաջ հայտնի է, որ Սովետական կառավարության ուղերձները ոչ թե սպառնալիք, այլ միայն սովետա-թուրքական հարաբերությունները բարելավելու առաջարկություններ են պարունակում։

Այս փաստերը ցույց են տալիս, որ գաղութային տերությունների քաղաքականությունը մոլի պաշտպաններ ունի հանձինս թուրքական ղեկավար շրջանների։

Սակայն վերջին ժամանակվա իրադարձությունները խոսում են այն մասին, թե որքան աճել են հակաամերիկյան տրամադրությունները Արևելքում։

Նույնիսկ այնպիսի երկրներում, ինչպիսիք են՝ Իրաքը, Լիբանանը և Հորդանանը, որոնց կառավարող շրջանները այս կամ այն չափով կախման մեջ են Վաշինգտոնից և Լոնդոնից, ուժեղացել է հակաիմպերիալիստական ալիքը։ Այդ երկրների բազմաթիվ աչքի ընկնող քաղաքական գործիչներ մամուլում հրապարակայնորեն հանդես են գալիս ընդդեմ Մերձավոր և Միջին Արևելքում ամերիկյան ներկայիս քաղաքականության։ Եմենը մերժեց 1 միլիոն դոլար ամերիկյան օգնությունը, որովհետև դրա դիմաց ամերիկյան իմպերիալիստները ցանկանում էին հրթիռային զենքի սարքեր տեղադրել Եմենի լեռներում։

Այս իսկ տեսակետից բոլորովին էլ պատահական չէ այն հանգամանքը, որ վերջին շրջանում ամերիկյան քաղաքականագետները դադարել են թմբկահարել Էյզենհաուերի դոկտրինան, որը հռչակվեց այնքան մեծ աղմկարարությամբ։ Գաղութարարության այդ դոկտրինան չհասավ իր նպատակին, ձախողվեց. նա չկարողացավ ուժերի հարաբերակցությունը Մերձավոր Արևելքում փոխել հօգուտ ամերիկյան իմպերիալիզմի։ Դրա մեջ է արմատացած այն բանի պատճառներից մեկը, որ վաշինգտոնյան քուրմերը սկսեցին շուռումուռ տալ, քրքրել Բաղդադի պակտի դիակը։ Այդ նրանք հրավիրեցին այդ պակտի հերթական սեսիան, որը տեղի ունեցավ այս տարվա հունվարի 27-ից 30-ը՝ Անկարայում։ Սեսիայի նախաձեռնողները՝ ամերիկյան ղեկավար շրջանները, ամեն ինչ արեցին այն նախօրոք թմբկահարելու համար։ Դալլեսն ինքը ուղևորվեց Անկարա, որպեսզի Բաղդադի պակտի սեսիային հատուկ նշանակություն տար և ճնշում գործ դներ պակտի մասնակից պետությունների վրա։

Լայն կամպանիա տարվեց պակտի ներսում առաջացած ճեղքվածքները փակելու, այն ռազմական տեսակետից ամրապնդելու և նրա մեջ նոր անդամներ՝ Լիբանանին և Հորդանանին ներգրավելու ուղղությամբ։ Ամերիկյան պետական քարտուղարը այդ նպատակով բանակցություններ վարեց Թեհրանում, փորձելով Իրանի և Իրաքի կառավարություններին համոզել ընդունելու ամերիկյան պահանջները այդ երկրներում միջուկային ու հրթիռային զենքի բազաներ ստեղծելու մասին։ Իսկ սեսիային նախորդած ռազմական հանձնաժողովի նիստերում, որտեղ փաստորեն նախագահում էր ամերիկյան բանակի շտաբի պետ գեներալ Թեյլորը, պետք է առաջարկություններ մշակվեին պակտի մասնակիցների ռազմական պատրաստությունների և ՆԱՏՕ-ի հետ նրանց գործողությունների սերտ կոորդինացիայի շուրջը։

Անկարայի սեսիային մասնակցեցին ԱՄՆ-ի, Անգլիայի, Թուրքիայի, Իրաքի, Իրանի և Պակիստանի ներկայացուցիչները։ Համաձայն արևմտյան վերսիայի ամերիկյան պատվիրակությունը՝ Դալլեսի գլխավորությամբ սեսիային ներկա էր որպես դիտորդ։ Իրականում Դալլեսն ինքն էր ղեկավարում և ուղղություն տալիս սեսիայի աշխատանքին։ Դա պատահական չէ։ Շնորհիվ Մերձավոր Արևելքում իր տնտեսական և ռազմա-քաղաքական գերազանցության, ներկայումս այդ շրջանում իմպերիալիստական ուժերի ռազմա-քաղաքական դաշինքի ղեկավարը ամերիկյան իմպերիալիզմն է, և փաստորեն ԱՄՆ-ն են գլխավորում Բաղդադի բլոկը։ Բավական է ասել, որ Թուրքիային, Իրանին և Պակիստանին տրվող ռազմական և տնտեսական «օգնության» հիմնական մասը կատարում է ոչ թե Անգլիան, այլ ԱՄՆ-ը։ Անգլիական հատկացումները երկու անգամով պակաս են ամերիկյանից։ Այնուհետև, Բաղդադի պակտի հիմնական հենարանը հանդիսացող Թուրքիայում ԱՄՆ-ի տնտեսական ու ստրատեգիական դիրքերը շատ ավելի ուժեղ են, քան Անգլիայինը։



Բաղդադի պակտի Անկարայի սեսիայի հիմնական նպատակն այն էր, որպեսզի պակտի անդամ պետություններին ստիպի համաձայնել իրենց տերիտորիաներում ամերիկյան միջուկային և հրթիռային զենքի բազաներ ստեղծել։ Ընդ որում այդ նպատակին հասնելու համար փորձեր արվեցին սպեկուլյացիա անել այդ երկրների տնտեսական դժվարությունների շուրջը։ Նրանց գայթակղում էին այն բանով, թե ամերիկյան հրթիռների առկայությունը իրր հնարավորություն կտա կրճատելու իրենց երկրների զինված ուժերը, իսկ ազատված միջոցներն օգտագործելու էկոնոմիկայի զարգացման նպատակով։ Բայց այդ փաստարկը, որն ամբողջովին կեղծ է և մտացածին, պահանջվող էֆեկտը չունեցավ։ Համենայն դեպս Անկարայի սեսիայի գումարման նախաձեռնողները համարձակություն չունեցան իրենց հրապարակած կոմյունիկեում հիշատակել Բաղդադի պակտի մասնակից բոլոր պետությունների տերիտորիաներում ամերիկյան հրթիռային զենքի բազաներ ստեղծելու մասին։

Անկարայում ամերիկյան իմպերիալիզմի ներկայացուցիչ Դալլեսը նորից փորձեց սեսիայի մասնակիցներին ահաբեկել «կոմունիստական վտանգով»։ Նա հանդես եկավ հակասովետական ամենազազրելի զրպարտություններով։ Դալլեսից ետ չմնաց Թուրքիայի պրեմիեր մինիստր Ադնան Մենդերեսը, որի ելույթը ամբողջապես հակասում է խաղաղության և անվտանգության ձգտման մասին այն հավաստիացումներին, որ պարունակում էր նրա պատասխանը Սովետական կառավարության ուղերձին։

Սակայն, դատելով բազմաթիվ թերթերի հաղորդագրություններից, Իրաքի, Իրանի և Պակիստանի ներկայացուցիչներն ակնարկեցին, որ ոչ մի ռեալ «կոմունիստական վտանգ» գոյություն չունի իրենց երկրների համար։ Դա պատահական չէ։ Իրադարձությունների զարգացումը Մերձավոր և Միջին Արևելքում այդ շրջանի երկրներին ցույց է տվել, թե որտեղից է գալիս ռեալ վտանգը։ Եգիպտոսը հարձակման ենթարկվեց ո՛չ կոմունիզմի կողմից, այլ Բաղդադի պակտի անդամ Անգլիայի և նրա դաշնակիցների՝ Ֆրանսիայի և Իսրայելի կողմից։ Արաբական մյուս երկրների՝ Եմենի և Օմանի դեմ ագրեսիվ պատերազմ է մղում Բաղդադի պակտի նույն անդամը՝ Անգլիան։ Սիրիային սպառնում էր Թուրքիան, որին գրգռում ու քաջալերում էին ամերիկյան իմպերիալիստները։ Այս փաստերից հետո, պարզ է, որ ոչ ոք չի հավատա «կոմունիստական վտանգի» մասին մտացածին խոսակցություններին։ Միայն կույր մարդը կարող է չտեսնել, թե ով է իսկապես սպառնում Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ազատությանն ու անկախությանը։

Այժմ ավելի, քան երբեք, դատարկահնչուն են Դալլեսի այն հավաստիացումները, թե Բաղդադի պակտը ռեգիոնալ կազմակերպություն է։ Այսօր այլևս քչերն են կասկածում, որ այդ բլոկը ստեղծվել է որպես ռազմական կազմակերպություն, որը ագրեսիվ և զավթողական նպատակներ է հետապնդում։ Պետք չէ աշխարհագրության մեծ մասնագետ լինել, հասկանալու համար, թե որտեղ է գտնվում Բաղդադի պակտի անդամ Անգլիան։ Եթե Մեծ Բրիտանիան համարենք Մերձավոր Արևելքի մեջ մտնող երկիր, ապա նույնպիսի հաջողությամբ, օրինակ, կարելի է պահանջել, որպեսզի Պակիստանն էլ տեղ ունենա Եվրոպական խորհրդում։ Բաղդադի պակտը այնքանով է «պաշտպանական», որքանով, որ «ռեգիոնալ» է։ Ո՞ւմ դեմ է ուղղված այն. «դեպի հյուսիս»,— առանց թաքցնելու հայտարարել է Անգլիայի արտաքին գործերի մինիստր

Սելվին Լլոյդը։ «Վառոդի հոտ է գալիս Բաղդադի պակտի Անկարայի սեսիայի որոշումներից»,— գրում է լիբանանյան «Տելեգրաֆ» թերթը։

Եթե Դալլեսը Անկարայի սեսիա էր եկել Բաղդադի պակտը ԱՄՆ-ի ռազմական պլաններին համապատասխան ավելի հուսալի զենք և ՆԱՏՕ-ի կույր հավելված դարձնելու մտադրությամբ, ապա Բաղդադի պակտի անդամ ասիական երկրները սպասում էին, որ Միացյալ Նահանգները հոգ կտանեն իրենց տնտեսական զարգացման մասին։ Եգիպտոսի և Սիրիայի օրինակը, որոնք առանց քաղաքական կամ որևիցե այլ պայմանի անշահախնդիր տնտեսական և տեխնիկական օգնություն են ստանում Սովետական Միությունից, չի կարող խոր ազդեցություն չունենալ և իր վրա չբևեռել Ասիայի և Աֆրիկայի մնացած երկրների հասարակայնության ուշադրությունը։ Այդ օրինակով նրանք տեսնում են, թե ինչպես են պրակտիկայում կենսագործվում Բանդունգում ձևակերպված խաղաղ գոյակցության և համագործակցության սկզբունքները, որոնք հիմնված են հավասարության և փոխադարձ օգուտի վրա։

Սեսիայի բացման նախօրյակին թուրքական «Ակիս» ժուռնալը գրում էր. պատվիրակների մտքում միայն մի բան կա՝ «փող, փող և փող», իսկ Դալլեսը այդ ժամանակ միայն մի բան էր մտածում «հրթիռային բազաներ, հրթիռային բազաներ և հրթիռային բազաներ»։ Ինչպե՞ս դրանք համատեղել։ Դալլեսը ստիպված էր տնտեսական օգնություն խոստանալ։ Բայց այդ օգնության մասին կարելի է ասել. լեռը երկնեց, բայց մուկ ծնեց։ Սեսիայում հավանություն տրվեց Բաղդադի պակտի երկրների տերիտորիայում տնտեսական զարգացման 7 նախագծերի, որոնք փաստորեն ենթարկված են ամերիկյան ստրատեգիական նպատակներին և գլխավորապես կոմունիկացիաների շինարարություն են նախատեսում։ Այդ աշխատանքների արժեքը հավասար է 350 մլն դոլարի։ Ինչպես հաղորդել է Ասոշիեյտեդ պրես գործակալությունը, ամերիկյան ներդրումը կազմելու է ընդամենը 13 մլն դոլար, իսկ Անգլիայինը՝ 5 մլն դոլար։ Մնացած մասը, ակնհայտ է, որ պետք է կատարվի այն երկրների հաշվին, որոնց տերիտորիայի վրա կկառուցվեն կոմունիկացիոն միջոցները։ Այստեղից պարզ է դառնում՝ թե ով է ում օգնում։

Անկարայի սեսիայում Դալլեսի արած այն հայտարարությունը, թե ԱՄՆ-ը Բաղդադի պակտի մասնակից երկրներին որպես «նվեր» 10 միլիոն կտրամադրի, «եթե ԱՄՆ-ի կոնգրեսը համաձայնի դրան», առաջ է բերել հուսախաբություն, որը չեն թաքցնում նույնիսկ պրոամերիկյան թերթերը։

Թուրքական «Ջումհուրիեթ» թերթը, որը Անկարայի սեսիայի նախօրյակին պնդում էր, թե ամերիկյան «օգնության» միայն նշանակալի ավելացումը կարող է փրկել Բաղդադի պակտը, ստիպված է խոստովանել, որ սեսիայում չհաջողվեց այդպիսի «օգնություն» ստանալ։ «Ուլուս» թերթը կրկնեց այն հանրահայտ ճշմարտությունը, որ «ԱՄՆ-ը միայն այն ժամանակ են օգնություն ցույց տալիս, երբ նրանք համոզված են, որ դա օգտավետ կլինի իրենց համար»։ Որոշ մեկնաբաններ դառը հեգնանքով նկատում են, որ Բաղդադի պակտը իր ստեղծողների «հույսերն արդարացնում» է մի տեսակետից, որ պակտի անդամները հավասար իրավունքներից չեն օգտվում։ Այս տեսակետից բոլորովին էլ զարմանալի չէ, որ Անկարայի սեսիան ուժեղացրեց հակասությունները պակտի ներսում։ Բացի անգլո-ամերիկյան հակասություններից և, մի կողմից, Անգլիայի ու ԱՄՆ-ի ու, մյուս կողմից, ասիական երկրների միջև եղած հակասություններից կան նաև այլ կարգի տարաձայնություններ։ Անգ-



լիայի և Թուրքիայի միջև՝ Կիպրոսի հարցի շուրջը, Անգլիայի և Իրանի միջև՝ Բահրենյան կղզիների պատկանելության հարցի շուրջը։ Իրաքը տարաձայնում է Թուրքիայի, Անգլիայի և ԱՄՆ-ի հետ՝ Իսրայելի նկատմամբ նրանց դիրքի կապակցությամբ։ Թուրքական օպոզիցիոն թերթերը հատկապես նշում են թուրք-իրաքյան հակասությունները Բաղդադի պակտում և առանձնապես այն հանգամանքը, որ Իրաքը Անկարայի սեսիա չուղարկեց իր պրեմիեր-մինիստրին, ինչպես դա արեցին Բաղդադի պակտի մյուս անդամները։

Անդրադառնալով Անկարայի սեսիայի արդյունքներին, ֆրանսիական «Կրուա» թերթը հեգնանքով հայտարարել է, որ «Բաղդադի պակտի միակ հաջողությունը սոսկ այն է, որ նա դեռ գոյություն ունի»։

Իրոք, դա այդպես է։ Ինքնուրույն զարգացման ուղիով ընթացող երկրների առաջընթացը չի կարելի կասեցնել գաղութակալական ոչ մի բլոկի կամ դոկտրինայի միջոցով։ Ժողովուրդները, այդ թվում և Բաղդադի պակտի մեջ մտնող ասիական պետությունների ժողովուրդները պահանջում են մեղմացնել միջազգային լարվածությունը, նրանք խաղաղ գոյակցություն են ցանկանում, որը, ինչպես ցույց է տալիս Եգիպտոսի, Սիրիայի, Հնդկաստանի, Բիրմայի և ուրիշ շատ պետությունների օրինակը, նրանց համար տնտեսական ազատ զարգացման և բնակչության կենսամակարդակի բարձրացման հեռանկարներ է բաց անում։

Խաղաղության և ժողովուրդների համագործակցության գաղափարները,
որոնց իրականացման համար հաստատակամորեն պայքարում են Սովետա-
կան Միությունը և խաղաղասեր մյուս պետությունները, գտնում են Արևելքի
ժողովուրդների հավանությունն ու պաշտպանությունը։ Այդպիսի քաղաքա-
կանության օգտին արտահայտվեց նաև Ասիայի և Աֆրիկայի երկրների Կահի-
րեի համերաշխության կոնֆերանսը, որը վճռականորեն դատապարտեց Մեր-
ձավոր և Միջին Արևելքում արևմտյան տերությունների կողմից վարվող ռազ-
մական բլոկներ ստեղծելու և դրանք ընդլայնելու իմպերիալիստական քա-
ղաքականությունը։ Կոնֆերանսը արդարացիորեն ընդգծեց, որ ինչպես Բաղ-
դադի պակտը, այնպես էլ Էյզենհաուերի-Դալլեսի դոկտրինան հակասում են
արաբական երկրների անկախության շահերին, ոտնձգություն են նրանց սու-
վերենության հանդեպ, սպառնալիքի տակ են դնում նրանց անվտանգությունը։

Ահա թե ինչու Անկարայի սեսիան իսկապես հիշեցնում է թմբկահարված
ամերիկյան հրթիռները, որոնք հրաժարվում են սուրալ ծրագրված ուղղու-
թյամբ։ Անկարայում Դալլեսին չհաջողվեց հասնել այն բանին, ինչին ձգտում
էին ԱՄՆ-ի որոշակի շրջանները։ Այդպես էլ սպասելի էր։ Նա, ով ուզում է
կանգնեցնել պատմական պրոցեսը, ի՛նքը կճզմվի նրա առաջընթացով։

# ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԿՈՄՈՒՆԱԼ ԵՎ ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ, Հ. ԳԱԼՍՏՅԱՆ

Աշխատավորության նյութական և կենցաղային հարաճուն պահանջմունքների բավարարումը միշտ էլ գտնվել է և գտնվում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ուշադրության կենտրոնում:

Աշխատավորների կենսամակարդակի բարձրացման և կուլտ-կենցաղային պայմանների բարելավման միջոցառումների ընդհանուր օղակում կարևոր դեր է պատկանում կոմունալ-բնակարանային տնտեսությանը, որը կոչված է ազգաբնակչությանն ապահովելու բնակարանային լավ պայմաններով ու կենցաղային հարմարություններով, իրականացնելու քաղաքների և մյուս բնակավայրերի ջրամատակարարումը, էլեկտրիֆիկացումը, կանաչապատումն ու բարեկարգման մյուս միջոցառումները, բաղնիքների, լվացքատների, կոյուղիների կառուցումը և այլն: Սովետական յուրաքանչյուր քաղաքացի ակնառու կերպով տեսնում է այն հսկայական աշխատանքը, որ այդ բնագավառում կատարված է մեր երկրում:

***

Նախառևոլյուցիոն Հայաստանում արդյունաբերության, գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մնացած ճյուղերի ծայրահեղ հետամնացության ու երկրի ընդհանուր աղքատության պայմաններում կոմունալ տնտեսության նոր օբյեկտների կառուցման և բնակավայրերի բարեկարգման ուղղությամբ որևէ աշխատանք համարյա չէր կատարվում:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելու պահին Երևան քաղաքի ամբողջ կոմունալ տնտեսությունը բաղկացած էր աննշան կարողության մեկ ջրմուղից, մի քանի՝ մեծ մասամբ գետնափոր բաղնիքներից, ընդամենը 500 ձիու ուժանոց երկու փոքր էլեկտրակայանից, խղճուկ ձիաքարշից և 4 տակառ ունեցող ասենիզացիոն գումակից:

Էլ ավելի անմխիթար դրության մեջ էր գտնվում քաղաքի բարեկարգման գործը: Քիչ թե շատ սալարկված էր միայն ներկայիս Աբովյան փողոցի մի մասը, մնացած փողոցները բարեկարգված չէին և էլեկտրական լուսավորության բացակայության պատճառով՝ գիշերները թաղվում էին խավարի մեջ: Բացառությամբ հատ ու կենտ տների, մնացած բոլոր տները հողաշեն էին, հարթ կտուրներով, զուրկ կոմունալ որևէ հարմարությունից (ջրից, կոյուղուց, կենտրոնական ջեռուցումից և այլն):

Դրությունն ավելի վատ էր ռեսպուբլիկայի մնացած բնակավայրերում:



խմելու ջրի, էլեկտրական լուսավորության, բաղնիքների և կոմունալ այլ ձեռնարկությունների բացակայություն, ծուռումուռ, փոշու մեջ կորած և միանգամայն անբարեկարգ փողոցներ — ահա այն «ժառանգությունը», որը ստացավ Սովետական Հայաստանը նախկին ռուսական կայսրության հետամնաց այդ ծայրամասից, որը դաշնակցականների տիրապետության տարիներին հասել էր ծայր աստիճան քայքայման:

Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո լայն հնարավորություններ ստեղծվեցին ինչպես ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այնպես էլ կոմունալ-բնակարանային տնտեսության զարգացման համար:

Շնորհիվ կոմունալ-բնակարանային տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումների՝ մեր ռեսպուբլիկայի քաղաքների, շրջկենտրոնների և մնացած բնակավայրերի տեսքը միանգամայն փոխվեց: Կառուցվեցին և շահագործման հանձնվեցին հարյուրավոր բազմահարկ, գեղեցիկ ու բարեկարգ բնակելի շենքեր, բազմաթիվ ջրմուղներ, էլեկտրացանցեր, բաղնիքներ, հյուրանոցներ և կոմունալ այլ ձեռնարկություններ, բացվեցին և ասֆալտապատվեցին մեծ թվով նոր փողոցներ ու պողոտաներ, ստեղծվեցին կուլտուրայի և հանգստի զբոսայգիներ, պուրակներ և այլն:

***

Քաղաքների և մյուս բնակավայրերի բնակարանային ֆոնդը Հայաստանում Սովետական իշխանության հաստատվելու պահին ուներ խղճուկ պատկեր: Միայն մի քանի քաղաքներում կարելի էր հանդիպել քարաշեն և թիթեղածածկ հատ ու կենտ բնակելի տների, որոնք պատկանում էին փոքրաթիվ հարուստներին: Աշխատավորության լայն խավերը ապրում էին խոնավ, կիսամութ և հարմարություններից միանգամայն զուրկ բնակարաններում և նկուղներում, իսկ մի մասն էլ, մասնավորապես գաղթականները, բոլորովին զուրկ էին բնակարանից:

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո բնակարանային շինարարությունը հետզհետե լայն ծավալ ընդունեց: Հանրայնացված բնակարանային ֆոնդի տարածությունը (ներառյալ նաև ազգայնացված տները) 1927 թվականին կազմում էր արդեն 156,9 հազար քառակուսի մետր, իսկ 1941 թվականին այն հասավ 619,3 հազար քառակուսի մետրի:

Պետական բնակարանային շինարարության գծով 1921 թվականից մինչև 1955 թվականը ներառյալ կատարված կապիտալ ներդրումների գումարը կազմում է 1.338,1 միլիոն ռուբլի, որից միայն 1951—1955 թվականներին՝ 557,9 միլիոն ռուբլի: Այդ ներդրումների շնորհիվ շահագործման են հանձնված բազմաթիվ նոր, գեղեցիկ և բազմահարկ բնակելի տներ՝ 2302 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ:

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1957 թվականի հուլիսի 31-ի որոշման համաձայն մեր ռեսպուբլիկայում 1956—60 թվականների ընթացքում շահագործման են հանձնվելու բնակելի տներ՝ մեկ միլիոն 200 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ, կամ մոտ 2,9 անգամ ավելի, քան նախորդ՝ հինգերորդ հնգամյակի ընթացքում:

*Այդ նույն որոշումով ռեսպուբլիկայի ղեկավար օրգաններին, աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործկոմներին, ձեռնարկություններին և հիմնարկություններին պարտավորեցված է օգնություն ցույց տալ բանվորներին ու ծառայողներին՝ պետական վարկի օգնությամբ բնակելի տներ կառուցելու գործում։ Մեր ռեսպուբլիկայում անհատական բնակարանային շինարարությունը քաղաքներում, ավաններում, ՄՏԿ-ներում, սովետական տնտեսություններում և անտառտնտեսություններում կկազմի 900 հազար քառակուսի մետր։*

*Պետական և անհատական բնակարանային շինարարության զարգացման այս և մյուս միջոցառումները լայն հնարավորություններ են ստեղծում մոտակա 10—12 տարում բնակարանային պակասին վերջ տալու մասին պարտիայի և կառավարության առաջադրած կարևորագույն խնդիրը հաջող լուծելու համար։*

*Բնակարանային նոր շինարարության ծավալման հետ միասին ամեն տարի խոշոր միջոցներ են հատկացվում արդեն ստեղծված բնակելի ֆոնդի պահպանման և նրանց բարեկարգության բարձրացման համար։ Այսպես, օրինակ, միայն տեղական Սովետներին պատկանող և առ 1-ը հունվարի 1957 թվականի դրությամբ 457 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն ունեցող բնակելի տների կապիտալ վերանորոգման համար 1957 թվականին հատկացվեց 12 միլիոն 165 հազար ռուբլի, որը մոտ երկու անգամ ավելի է, քան 1956 թվականին այդ նույն նպատակին հատկացված միջոցները։*

*Պետական բնակարանային ֆոնդի կապիտալ վերանորոգման աշխատանքների իրականացման համար Երևանում ստեղծված են 5 շրջանային, իսկ Լենինականում և Կիրովականում՝ մեկական քաղաքային վերանորոգման-շինարարական գրասենյակներ։ Ռեսպուբլիկայի մնացած քաղաքներում և շրջաններում այդ աշխատանքների կատարումը դրված է համապատասխան տեղական Սովետների գործկոմներին կից կոմունալ սպասարկման և բարեկարգման գրասենյակների վրա։*

*Վերջին երկու տարում որոշակի փոփոխություններ են կատարված նաև տեղական Սովետների բնակարանային ֆոնդի կառավարման գործում։ Երևանի և Կիրովականի քաղսովետների գործկոմների տնային կառավարչությունների խոշորացման հետևանքով նրանց թիվը կրճատվեց մոտ կրկնակի անգամ, իսկ Լենինականում նախկինում գործող 11 տնային կառավարչությունների փոխարեն կազմակերպվեց միայն մեկ խոշորացված տնային կառավարչություն։ Խոշորացված տնային կառավարչությունները ապահովված լինելով որակյալ ինժեներա-տեխնիկական աշխատողներով, ի վիճակի են պատշաճ բարձրության վրա դնել բնակարանային ֆոնդի շահագործման և պահպանման գործը, սեփական ուժերով ժամանակին ու որակով կատարել բոլոր ընթացիկ և կապիտալ վերանորոգումները։ Այդ նպատակով խոշորացված տնային կառավարչություններում պետք է կազմակերպվեն սեփական արհեստանոցներ և ստեղծվեն տարբեր մասնագիտության բանվորների վերանորոգման հատուկ բրիգադաներ, որոնք ապահովված լինեն անհրաժեշտ մեխանիզմներով և սարքավորումներով։*

*Բնակարանային ֆոնդի պահպանումն ու շահագործումը բարելավելու հետ մեկտեղ առաջիկայում մեծ ուշադրություն պետք է դարձնել այնպիսի կարևո-*



*րագույն միջոցառումների վրա, ինչպիսիք են՝ բնակելի շենքերի միացումը ջրմուղի և կոյուղու քաղաքային ցանցին, կենտրոնական ջեռուցում չունեցող տներում այդպիսի ջեռուցման անցկացումը, բակերի բարեկարգումը և այլն։*

***

*1920 թվականին Հայաստանում ջրմուղ ունեին միայն 9 բնակավայր՝ ընդամենը 15,8 կմ ջրաբաշխիչ ցանցով։ Հազվագյուտ էին այն տները, որոնք միացված էին ջրմուղի ցանցին կամ բակում խմելու ջուր ունեին։ Ազգաբնակչության ճնշող մեծամասնությունն օգտվում էր առուների ջրից, որի հետևանքով, մանավանդ Արարատյան դաշտավայրում, վարակիչ հիվանդություններով տառապողների թիվը հասնում էր խոշոր չափերի։*

*Նկատի ունենալով ջրի կենսական նշանակությունը աշխատավորության կենցաղային պայմանների բարելավման գործում՝ անցած 37 տարիների ընթացքում խոշոր ներդրումներ կատարվեցին քաղաքները և ռեսպուբլիկայի մնացած բնակավայրերը լեռնային աղբյուրների սառնորակ ջրով ապահովելու ուղղությամբ։*

*Ջրմուղների շինարարությունը մեր ռեսպուբլիկայում առանձնապես մեծ ծավալ ընդունեց 1935—1936 թվականներից սկսած, երբ մեկը մյուսի հետևից սկսեցին շահագործման հանձնվել նոր ջրմուղներ Էջմիածնում, Ստեփանավանում, Գորիսում, Աշտարակում, Արտաշատում և մի շարք այլ քաղաքներում ու շրջկենտրոններում։ 1941 թվականի աշնանը, այսինքն՝ Հայրենական պատերազմի ամենադժվար օրերին, ավարտվեց և շահագործման հանձնվեց մեր ռեսպուբլիկայի ամենախոշոր ջրմուղներից մեկը՝ Լենինականի նոր ջրմուղը, որը սկիզբ է առնում քաղաքից մոտ 40 կմ հեռու գտնվող աղբյուրներից։ Պատերազմի տարիներին շահագործման հանձնվեց նաև Ալավերդու ջրմուղը, որն իր կարողությամբ չի զիջում Լենինականի ջրմուղին և, բացի Ալավերդի քաղաքից, խմելու ջուր է մատակարարում նաև նույն շրջանի մի շարք գյուղերին և բանվորական ավաններին։ Վերջին տասնամյակում Երևան, Կիրովական քաղաքների նոր ջրմուղների անցկացումը ավարտելուց, Եղեգնաձորում, Վեդիում, Նոր Բայազետում, Ղափանում, Ծաղկաձորում, Իջևանում, Քանաքեռում, Հոկտեմբերյանում, Կրասնոսելսկում և Ամասիայում նոր ջրմուղներ կառուցելուց, ինչպես նաև Լենինականի, Էջմիածնի, Աշտարակի, Մարտունու, Բասարգեչարի և մի քանի այլ ջրմուղների ջրատար գծերի վերակառուցումից հետո միայն 31 կոմունալ ջրմուղների գլխավոր ջրատարների երկարությունը 1958 թվականի հունվարի մեկին հասավ 435 կիլոմետրի, իսկ նրանց փողոցային ցանցի երկարությունը՝ 928 կիլոմետրի, ընդ որում Արտաշատի, Էջմիածնի, Ալավերդու և Աշտարակի կոմունալ ջրմուղները բացի շրջկենտրոնից, խմելու ջուր են մատակարարում նաև բազմաթիվ գյուղերի։ Դրանցից առանձնապես պետք է նշել Արտաշատի միջշրջանային ջրմուղը, որն ունի 352 կմ ընդհանուր ցանց և ջուր է մատակարարում Արտաշատի, Շահումյանի և Վեդու շրջանների 77 բնակավայրի։*

*Անցած տարիների ընթացքում ջրմուղներ են կառուցել նաև ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլտնտեսություններ և արդյունաբերական ձեռնարկություններ։*

*Նախահեղափոխական Հայաստանում ոչ մի քաղաք կոյուղի չուներ, իսկ ներ-*

կայումս կոյուղի ունեն ռեսպուբլիկայի 5 քաղաքներ՝ 127 կմ փողոցային
ցանցով։

Ժողովրդական տնտեսության զարգացման վեցերորդ հնգամյա պլանի
համաձայն մեր ռեսպուբլիկայում ջրմուղների և կոյուղիների կառուցման
գծով կատարվելու է խոշոր աշխատանք։ Նոր ջրմուղների կառուցման աշխա-
տանքները կավարտվեն Հոկտեմբերյանում, Շամշադինում, Թալինում, Արթի-
կում, Նոր Բայազետում և Ազիզբեկովում, կավելացվի Լենինականի, Արտա-
շատի և Ալավերդու ջրմուղների կարողությունը, կվերակառուցվի Կիրովականի
Երկրորդ ջրատարը, քաղաքներում և շրջկենտրոններում միայն պետական կա-
պիտալ ներդրումների հաշվին կկառուցվի ավելի քան 160 կմ ջրմուղի նոր
ցանց։ Շահագործման կհանձնվեն նոր կոյուղիներ Ղափանում, Ծաղկաձորում,
Ստեփանավանում և Դիլիջանում։ Գոյություն ունեցող կոյուղիների ցանցը
կընդարձակվի մոտ 115 կիլոմետրով։

Ազգաբնակչության կենցաղային սպասարկման գործում խոշոր դեր ունի
բաղնիք-լվացքատնային տնտեսությունը։ Մինչև ռևոլյուցիայի հաղթանակը
մեր ռեսպուբլիկայում կային փոքր կարողության միայն մի քանի, մեծ մա-
սամբ գետնափոր և հարմարություններից զուրկ բաղնիքներ, իսկ լվացքա-
տներ բոլորովին չկային։ Պետական ներդրումների շնորհիվ միայն աշխատա-
վորների դեպուտատների տեղական Սովետների գործկոմների տնօրինության
տակ գտնվող ընդհանուր օգտագործման բաղնիքների թիվը 1957 թվականի
վերջին հասավ 49-ի՝ 2213 տեղ միաժամանակյա տարողությամբ, իսկ լվաց-
քատների թիվը 8-ի՝ 3490 կգ կարողությամբ (8 ժամյա հերթափոխությու-
նում)։ Բացի դրանից, իրենց բաղնիքներն ու լվացքատներն ունեն նաև ռես-
պուբլիկայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ և կոլտնտեսու-
թյուններ։

1957 թվականի ընթացքում բացի Երևանից, բաղնիքների նոր շենքեր շա-
հագործման հանձնվեցին Ջերմուկում և Արտաշատում, իսկ հնգամյակի հա-
ջորդ տարիներին շահագործման կհանձնվեն Արթիկում, Աշտարակում, Կիրո-
վականում, Լենինականում և Մարտունիում։

Մինչև ռևոլյուցիան Հայաստանում հյուրանոցներ բառիս բուն իմաստով
չկային։ Երևանում և մյուս քաղաքներում եղած քարվանսարաները, որոնք
գործում էին եկվորների հյուրընկալության համար, միանգամայն զուրկ էին
տարրական հարմարություններից և գտնվում էին չափազանց հակասանիտա-
րական պայմաններում։

Սովետական իշխանության հաստատումից հետո ձեռնարկվեց ռեսպուբ-
լիկայի քաղաքներում և մյուս վարչական կենտրոններում հյուրանոցների
կազմակերպման և հյուրանոցային նոր շենքերի կառուցման աշխատանքը։
Ռեսպուբլիկայում եղած հյուրանոցների թիվը 1928 թվականին արդեն հասավ
18-ի՝ 845 մահճակալ-տեղ միաժամանակյա տարողությամբ։ Հյուրանոցային
նոր շենքեր կառուցվեցին Երևանում, Լենինականում, Արթիկում, Էջմիածնում,
Հոկտեմբերյանում, Ղափանում, Նոր Բայազետում, Ստեփանավանում, Արտա-
շատում, Իջևանում, Սիսիանում և մի շարք այլ քաղաքներում ու շրջկենտրոն-
ներում։ 1958 թվականի հունվարի մեկի դրությամբ մեր ռեսպուբլիկայի քա-
ղաքներում ու շրջկենտրոններում գործում են 37 հյուրանոց՝ 1728 մահճակալ-
տեղ ընդհանուր տարողությամբ։

Ներկայումս հյուրանոցային նոր շենքեր են կառուցվում Երևանում, Ալա-



վերդում և Մարտունիում, իսկ առաջիկա մի քանի տարիներում հյուրանոցային
նոր շենքեր կկառուցվեն նաև Կիրովականում, Կրասնոսելսկում, Աշտարակում,
Աղինում, Շամշադինում, Ամասիայում, Կալինինոյում և Ազիզբեկովում։

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո անցած ժամա-
նակամիջոցում հսկայական աշխատանք է կատարված քաղաքների ու շրջկենտ-
րոնների էլեկտրիֆիկացման և քաղաքային էլեկտրատրանսպորտի զարգաց-
ման ուղղությամբ։ Եթե 1919 թվականին Հայաստանի ամբողջ տերիտորիա-
յում ազգաբնակչության կոմունալ-կենցաղային կարիքների համար գործա-
դրվել է ընդամենը 800 հազար կվժ էլեկտրաէներգիա, ապա 1957 թվականի
ընթացքում միայն տեղական Սովետների գործկոմների էլեկտրացանցերը քա-
ղաքների և շրջկենտրոնների կուլտ-կենցաղային և մյուս կարիքների համար
օգտագործել են 278 միլիոն կվժ։

Վերջին մի քանի տարիներում զգալի աշխատանք է կատարված քա-
ղաքների ու շրջկենտրոնների էլեկտրացանցերի վերակառուցման և լայնաց-
ման ուղղությամբ։ Այդ նպատակի համար ընթացիկ հնգամյակում ծախսվե-
լու է ավելի քան 10 միլիոն ռուբլի և շահագործման կհանձնվի մոտ 150 կմ
նոր ցանց, ինչպես նաև էլեկտրատնտեսության մի շարք այլ կառուցվածքներ։
Նախառևոլյուցիոն Հայաստանում քաղաքային էլեկտրատրանսպորտ
(տրամվայ, տրոլեյբուս) բոլորովին գոյություն չուներ։ Երևանում գործող
ձիաքարշը անցնում էր միայն մեկ փողոցով և գտնվում էր խղճուկ վիճակում։
Իսկ ներկայումս Երևանի տրամվայի և տրոլեյբուսի գծերի ընդհանուր երկա-
րությունը կազմում է 107 կմ, և նրանով օրական փոխադրվում է մոտ 220
հազար ուղևոր։ Բացի դրանից, Երևանում, ինչպես նաև Լենինականում, Կիրո-
վականում, Ալավերդում, Ստեփանավանում և Գորիսում գործում է մարդա-
տար ավտոտրանսպորտ (ավտոբուսներ, տաքսիներ)։

Առաջիկա մի քանի տարիների ընթացքում տրամվայի ու տրոլեյբուսի
գծերը կընդարձակվեն 26 կիլոմետրով, և Երևանի կենտրոնական մասի
հետ հաղորդակցության այդ միջոցներով կկապվի նաև Զեյթունի, Այգեստանի
և Նոր Արեշի բնակչությունը։

Հնից ժառանգություն մնացած անբարեկարգ, նեղ և ծուռումուռ փողոց-
ների փոխարեն անցած 37 տարիների ընթացքում Երևանում, Լենինականում,
Կիրովականում և ռեսպուբլիկայի մյուս քաղաքներում ու շրջկենտրոններում
բացվեցին և բարեկարգվեցին բազմաթիվ նոր ու գեղեցիկ հրապարակներ,
պողոտաներ և փողոցներ։ Մեծ թվով ասֆալտապատ փողոցներ ու մայթեր ներ-
կայումս մենք ունենք այնպիսի քաղաքներում ու շրջանային կենտրոններում,
ինչպիսիք են՝ Հոկտեմբերյանը, Շահումյանը, Արթիկը, Արտաշատը, Բասար-
գեչարը, Ապարանը և այլն, որոնք մինչև սովետական կարգերի հաստատումը
իրենցից ներկայացնում էին հետամնաց և կոմունալ ամեն կարգի հարմա-
րություններից զուրկ գյուղեր։

Շնորհիվ բարեկարգման ուղղությամբ տարեցտարի կատարված խոշոր
ներդրումների, ռեսպուբլիկայի միայն 12 քաղաքներում բարեկարգված փո-
ղոցների ընդհանուր մակերեսը 1957 թվականի հունվարի 1-ի դրությամբ
կազմում էր արդեն մոտ 4920 հազար քառակուսի մետր, այդ թվում ասֆալ-
տապատված մասերի մակերեսը՝ 3360 հազար քառակուսի մետր։ Ռեսպուբլի-
կայի մյուս շրջկենտրոններում բարեկարգված փողոցների մակերեսը 1957

թվականի հունվարի 1-ի դրությամբ կազմում է մոտ 390 հազար քառակուսի
մետր, որից 246 հազար քառակուսի մետրը ասֆալտապատված է։

Խոշոր աշխատանք է կատարված նաև քաղաքների և շրջկենտրոնների
կանաչապատման և փողոցների ու հրապարակների էլեկտրալուսավորման
գծով։ Եթե ռեսպուբլիկայի քաղաքների և շրջկենտրոնների հասարակական
օգտագործման կանաչ մասիվների տարածությունը 1932 թվականին կազմել
է ընդամենը 19 հեկտար, ապա 1957 թվականի հունվարի մեկին այն հասավ
ավելի քան 2390 հեկտարի։ Բնակավայրերի կանաչապատման և անտառ-պու-
րակների ստեղծման գծով առանձնապես մեծ աշխատանք է կատարված Երև-
վանում, Լենինականում, Կիրովականում և Շահումյանում։

Եթե Սովետական կարգերի հաստատման նախօրեին էլեկտրական լուսա-
վորության բացակայության պատճառով մեր քաղաքներն ու մնացած բնակա-
վայրերը գիշերները թաղվում էին խավարի մեջ, ապա ներկայումս մեր ռես-
պուբլիկայի միայն քաղաքներում ու շրջկենտրոններում էլեկտրական լուսա-
վորությամբ լուսավորվում են ավելի քան 554 կմ երկարություն ունեցող փո-
ղոցներ։

Խոսելով ազգաբնակչության կոմունալ կենցաղային պայմանների հետա-
գա բարելավման մասին, չի կարելի հատկապես չնշել այն խոշոր դերը, որ
այդ գործում կունենա մեր ռեսպուբլիկայի քաղաքների ու բանվորական
ավանների առաջիկա գազիֆիկացումը։

Ինչպես նշել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի Հոբել-
յանական սեսիայում 1957 թվականի նոյեմբերի 6-ին տված իր զեկուցման
մեջ, «Երկրում ծավալված հսկայական բնակարանային շինարարության հետ
միասին կենցաղի մեջ գազի լայն կիրառումը կլինի ժողովրդի բարեկեցության
բարելավմանը նպաստող կարևորագույն գործոն։ Դա նույնպես թույլ կտա վե-
րացնել քաղաքների և բանավանների օդի աղտոտումը ածխափոշով ու մոխ-
րով և խիստ բարելավել բնակչության կյանքի սանիտարա-հիգիենիկ պայ-
մանները»։

Ղարադաղ-Աղստաֆա-Երևան գազամուղի շինարարությունը, որի նախա-
գծման աշխատանքներն արդեն սկսվել են, իսկ շահագործման հանձնումը նա-
խատեսվում է 1960 թվականի առաջին կիսամյակում, մեկ անգամ ևս ցույց
է տալիս, թե ինչպիսի հետևողականությամբ է իրականացվում ՍՄԿԿ XX հա-
մագումարի որոշումը՝ գազի արդյունաբերության լայն զարգացման և ժո-
ղովրդական տնտեսությունում գազի օգտագործման ավելացման վերաբերյալ։

Ղարադաղ-Երևան մագիստրալային գազամուղի կառուցումով լայն հե-
ռանկարներ են ստեղծվում ոչ միայն մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երև-
վանի, այլև Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի, Ալավերդու և մի շարք
այլ քաղաքների ու բնակավայրերի գազիֆիկացման համար։

Եղբայրական Ադրբեջանից ստացվող բնական գազը բնակելի տներին,
ինչպես նաև կոմունալ և արդյունաբերական ձեռնարկություններին տալու
համար անհրաժեշտ կլինի կառուցել հարյուրավոր կիլոմետր երկարության
փողոցային ցանց, որը հնարավորություն կտա բարելավելու աշխատավորու-
թյան կենցաղը և նրանց աշխատանքն ու ժամանակը խնայելու հետ միաժա-
մանակ զգալի չափով կկրճատի ջեռուցման ծախսերը և երկրի տրանսպորտը
կազատվի այդ նպատակի համար օգտագործվող վառելիքի կարծր և հեղուկ
տեսակների փոխադրումներից։ Պետական բնակարանային ֆոնդի տներից



բացի կիրականացվի նաև քաղաքացիների անձնական բնակելի տների գազի-
ֆիկացումը։ Գազը կդառնա մեր աշխատավորության բնակարանների բարե-
կարգման անբաժանելի մասը։

Ռեսպուբլիկայի քաղաքների գազիֆիկացման հետ պետք է լուծվեն մի
շարք այնպիսի կարևոր խնդիրներ, ինչպիսիք են՝ գազամատակարարման նա-
խագծման և շինարարական-մոնտաժային հատուկ կազմակերպությունների
ստեղծումը, անհրաժեշտ սարքավորումների արտադրության կազմակերպումը
և այլն, որոնց մասին մեր մամուլում արդեն նշվել է։ Առաջիկա 2—3 տա-
րում մեծ աշխատանք պետք է կատարվի նաև քաղաքներում գազ մատակարա-
րելու նպատակով կազմակերպվելիք կոմունալ ձեռնարկությունների համար
հատուկ դասընթացների միջոցով որակյալ կադրեր պատրաստելու ուղղու-
թյամբ։

Ռեսպուբլիկայի քաղաքների գազիֆիկացման վերը նշված այդ և մնա-
ցած պրակտիկ հարցերի լուծման գործում պետք է լայն չափով օգտագործ-
վի եղբայրական մյուս ռեսպուբլիկաներում և, մասնավորապես, ՌՍՖՍՌ-ում
այդ ուղղությամբ երկար տարիների ընթացքում կուտակված փորձը և տեխ-
նիկական նվաճումները։

***

Մեծ են այն նվաճումները, որոնք կոմունալ-բնակարանային տնտեսու-
թյան զարգացման բնագավառում անցած 37 տարում ձեռք են բերվել մեր
ռեսպուբլիկայում։ Սակայն աշխատավորության կոմունալ-բնակարանային
սպասարկման գործում դեռևս կան մի շարք լուրջ թերություններ։

Պետական բնակարանային նոր շինարարության և գոյություն ունեցող
բնակելի տների կապիտալ վերանորոգման համար պետության կողմից հատ-
կացված դրամական և նյութական միջոցների արդյունքը էլ ավելի մեծ կլի-
ներ, եթե ապահովվեր առանձնացված այդ միջոցների լրիվ իրացումը։ Չնա-
յած բնակարանային այն պակասին, որը դեռևս գոյություն ունի մեր ռեսպուբ-
լիկայում, շինարարական աշխատանքների և նյութա-տեխնիկական մատա-
կարարման գործի վատ կազմակերպման հետևանքով պետական բնակարա-
նային շինարարության պլանները տարեցտարի շարունակում են թերակա-
տարվել։ Այսպես, օրինակ, 1956 թվականին ռեսպուբլիկայի քաղաքներում և
շրջկենտրոններում աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների
գծով պետք է կառուցվեր և շահագործման հանձնվեր 29 նոր բնակելի շենք՝
28,8 հազար քառակուսի մետր բնակելի տարածությամբ, սակայն փաստորեն
շահագործման հանձնվեց միայն 15 շենք՝ 12,9 հազար քառակուսի մետր տա-
րածությամբ։ Բնակարանային շինարարությունն անբավարար ընթացավ նաև
անցած տարի։

Վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարված տեղական Սովետ-
ների վերանորոգման-շինարարական գրասենյակային արտադրական բազա-
ներն ընդլայնելու և նրանց անհրաժեշտ մեխանիզմներով ապահովելու ուղղու-
թյամբ։ Սակայն, չնայած դրան, բնակելի տների կապիտալ վերանորոգումները
շարունակում են կատարվել մեծ ձգձգումներով, իսկ շատ հաճախ էլ անո-
րակ, որը տեղիք է տալիս աշխատավորության կողմից արդարացի բողոք-
ների։ Անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում տնային կառավարչություննե-

րին կից կենցաղային սպասարկման ձեռնարկությունների (տնային լվացքատների, տնային իրերի ու հագուստի վերանորոգման արհեստանոցների և այլն), ինչպես նաև ներբնակարանային վերանորոգումներ կատարող բանվորների բրիգադաների կազմակերպմանը, որով խոշոր չափով կթեթևացվի բնակիչների և, մասնավորապես, տնային տնտեսուհիների աշխատանքը։

ՍՄԿԿ XX համագումարի կողմից վեցերորդ հնգամյակի վերաբերյալ ընդունված Դիրեկտիվներում նախատեսված է բարելավել բնակչության կոմունալ սպասարկումը, մինչդեռ այդ սպասարկման այնպիսի կարևորագույն օբյեկտներ, ինչպիսիք են՝ ջրմուղները, էլեկտրացանցը, բաղնիքները, հյուրանոցները և քաղաքային տրանսպորտը, մեզ մոտ դեռևս աշխատում են մեծ թերություններով և չեն ապահովում ազգաբնակչության օրավուր աճող պահանջները։

Առանձնապես խոշոր թերություններ գոյություն ունեն ռեսպուբլիկայի բաղնիքների և հյուրանոցների զգալի մասում, որոնցում, չնայած տնտեսական նորմալ գործունեության համար առկա անհրաժեշտ պայմաններին, դեռևս ցածր է սպասարկման կուլտուրան, իսկ շատ հաճախ նաև սանիտարական վիճակը։ Առանձին բաղնիքներ (Ապարանի, Սևանի, Բասարգեչարի, Սիսիանի, Վեդիի, Թալինի) աշխատում են մեծ ընդհատումներով և անկանոն։

Երևանի քաղաքային էլեկտրատրանսպորտի աշխատանքում նույնպես կան մի շարք թերություններ։ Այստեղ դեռևս մեծ չափերի է հասնում շարժական կազմի վերադարձը գծից՝ տեխնիկական անսարքությունների հետևանքով, հաճախակի տեղի են ունենում տրամվայի, գնացքների և տրոլեյբուսային մեքենաների շարժման սահմանված գրաֆիկների խախտումներ, տրամվայի վագոններում վատ է սանիտարական դրությունը և բացակայում է պատշաճ կարգ ու կանոնը։

Լուրջ թերություններ կան նաև քաղաքների ու շրջկենտրոնների բարեկարգման աշխատանքներում։ Շատ հաճախ հատուկ ուշադրություն դարձնելով նոր փողոցների կառուցման և բարեկարգման աշխատանքներին, աչքաթող է արվում արդեն բարեկարգված փողոցների ու մայթերի ժամանակին վերանորոգումն ու պահպանումը։

Վատ են պահպանվում ծառատունկերը և կանաչ մասսիվները, որի հետևանքով, չնայած ամեն տարի կանաչապատման գծով կատարվող խոշոր ծախսերին, մեր քաղաքներում ու շրջկենտրոններում կանաչը դեռ շատ քիչ է։

Մեծ աշխատանք պետք է կատարվի քաղաքների ու շրջկենտրոնների սանիտարական մաքրման գծով։ Կոմունալ տնտեսության օրգանների թույլ հսկողության հետևանքով ժամանակին չի կատարվում հասարակական վայրերի, ինչպես նաև հիմնարկություններին, ձեռնարկություններին, կազմակերպություններին և անձնական սեփականության իրավունքով անհատ քաղաքացիներին պատկանող շենքերի տերիտորիաների ամենօրյա մաքրումը և կուտակված աղբի ժամանակին փոխադրումը քաղաքից դուրս։

Աշխատավորությունը միշտ էլ մեծ ակտիվություն է ցուցաբերում իրենց բնակավայրերի բարեկարգման գործում, սակայն մի շարք շրջկենտրոններում անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում այդ կարևոր խնդրի վրա։ Դեռ ավելին, համաձայն ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1948 թվականի օգոստոսի 26-ի «Անհատական բնակելի տներ գնելու և կառուցելու վերաբերյալ քաղաքացիների իրավունքի մասին» Հրամանագրի և այդ Հրամանագրի



կիրառման կարգի մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ընդունած որոշման, անհատական բնակելի տների շրջակայքի կանաչապատումը և բարեկարգումը դրված է տնատերերի վրա, մինչդեռ տեղական Սովետների գործկոմները հսկողություն չեն սահմանում, որպեսզի տնատերերը լրիվ ավարտեն շինարարական աշխատանքները և բարեկարգեն իրենց տերիտորիաները։ Անհատական բնակելի տների մեծ մասը շահագործման է հանձնվում առանց արտաքին պատերը սվաղելու կամ նախագծով նախատեսված մնացած աշխատանքները կատարելու, որպիսի հանգամանքը խիստ բացասաբար է անդրադառնում քաղաքի կամ շրջկենտրոնի բարեկարգ տեսքի վրա։ Հարկ եղած ուշադրություն չի դարձվում նաև հիմնարկությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների կողմից զբաղեցրած շենքերի և նրանց շրջակայքի բարեկարգման աշխատանքների վրա. հոգ չի տարվում այդ շենքերին արտաքին գեղեցիկ տեսք տալու ու նրանց տերիտորիաները ցանկապատելու և ծառազարդելու ուղղությամբ։

Կոմունալ տնտեսության ձեռնարկություններում ու բարեկարգման աշխատանքներում գոյություն ունեցող վերոհիշյալ և մյուս թերությունները հիմնականում հետևանք են այն բանի, որ շատ քաղաքներում ու շրջկենտրոններում (Սևան, Հոկտեմբերյան, Եղեգնաձոր և այլն) տեղական պարտիական օրգանները և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործկոմները հարկ եղած ուշադրություն չեն դարձնում ազգաբնակչության կուլտկենցաղային պայմանները բարելավելու վրա։

Անհրաժեշտ է, որպեսզի կոմունալ-բնակարանային տնտեսության զարգացման և ազգաբնակչության կուլտ-կենցաղային սպասարկման հարցերը գտնվեն պարտիական և սովետական կազմակերպությունների ամենօրյա ուշադրության կենտրոնում և կոնկրետ միջոցներ ձեռք առնվեն այդ գործում եղած թերությունները վերացնելու համար։

Հայկական ՍՍՌ Տեղական տնտեսության մինիստրությունը իր հերթին պետք է ուժեղացնի օպերատիվ կապը տեղական Սովետների գործկոմների հետ և լայն օգնություն ցույց տա նրանց՝ կոմունալ ձեռնարկությունների աշխատանքներն արմատապես բարելավելու և քաղաքների ու շրջկենտրոնների բարեկարգման աշխատանքներին լայն թափ հաղորդելու համար։

Մեր ռեսպուբլիկան, Սովետական մեծ Միության բազմազգ ժողովուրդների համերաշխ ընտանիքում, Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության շնորհիվ տնտեսության և կուլտուրայի զարգացման բոլոր բնագավառներում գնում է դեպի նորանոր հաղթանակներ։

Կոմունալ-բնակարանային տնտեսության աշխատողները, որոնք սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին մեծ ոգևորությամբ լծված են Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշումների իրականացման գործին, ոչ մի ջանք չպետք է խնայեն բնակչության բնակարանային և կոմունալ-կենցաղային պահանջները բավարարելու ուղղությամբ իրենց առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։

# ՊԱՐՏԻԱՅԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԸ

Վ. ՍՄԲԱՏՅԱՆ

Այժմ, երբ ամբողջ երկրով մեկ պայքար է ծավալված Սովետական Միու-
թյան Կոմունիստական պարտիայի XX համագումարի պատմական որոշում-
ների կատարման համար, ավելի ու ավելի է մեծանում պարտիայի շրջանա-
յին կոմիտեների դերը: Նրանք քաղաքական ու կազմակերպական աշխատան-
քի միջոցով մոբիլիզացնում են բանվորների, կոլտնտեսականների, ինտելի-
գենցիայի ողջ ուժերը, գլխավորում են մասսաների աշխատանքային ու քա-
ղաքական խանդավառությունը՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղե-
րում նորանոր հաջողությունների հասնելու համար:

Լինելով քաղաքական և տնտեսական գործունեության կազմակերպման ու
ղեկավարման կարևորագույն օրգան, պարտիայի շրջանային կոմիտեն ուղ-
ղություն է ցույց տալիս շրջանի պետական, տնտեսական օրգաններին ու
հասարակական կազմակերպություններին, բազմաթիվ ձևերով ու մեթոդնե-
րով օգնում է նրանց՝ պատվով կատարելու Կոմունիստական պարտիայի ու
Սովետական կառավարության առաջադրած բոլոր խնդիրները: Այստեղից էլ
պարզ է, որ շրջանի աշխատանքների հաջողությունը ամբողջապես պայմա-
նավորվում է այն բանով, թե պարտիայի շրջանային կոմիտեն ինչպես է
կազմակերպում ու ղեկավարում աշխատանքը, արդյո՞ք կարողանում է
պարտիական-քաղաքական աշխատանքը ճշտորեն զուգակցել տնտեսականի
հետ, անդուլ կերպով կատարելագործելով պարտիական աշխատանքի ձևերն
ու մեթոդները, դրանք համարեցնելով փոփոխվող իրադրությանը:

Պարտիական աշխատանքում հսկայական դեր ունի շրջկոմի պլենումը:
Չէ՞ որ կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում շրջանի ամբողջ
պարտիական աշխատանքի պատասխանատվությունը դրվում է շրջանային
կոմիտեի պլենումի վրա: ՍՄԿՊ XX համագումարը սահմանել է շրջկոմի
պլենումների հրավիրման նոր ժամկետ, որը թելադրված է պարտիական կո-
միտեների դերը բարձրացնելու և ղեկավարությունը պարտիական կազմա-
կերպություններին մոտեցնելու անհրաժեշտությունից:

Մեր ռեսպուբլիկայում պարտիայի շրջանային կոմիտեները բավականին
դրական փորձ են կուտակել պլենումները լավ նախապատրաստելու և բարձր
մակարդակով անցկացնելու ուղղությամբ: Նրանց մեծամասնությունը լուրջ
պատասխանատվությամբ է մոտենում պլենումների հրավիրման և քննարկ-
վող հարցերի նախապատրաստման գործին: Այսպես, օրինակ, պարտիայի
Երևան քաղաքի Ստալինյան շրջկոմը, Ախուրյանի, Բասարգեչարի, Մարտու-
նու, Շամշադինի շրջկոմները ՍՄԿՊ Կանոնադրությամբ նախատեսված ժամ-
կետներին հրավիրում են պլենումներ: Նախքան պլենումների հրավիրումը,
նրանք գլխավոր ուշադրությունը դարձնում են քննարկվող հարցերի նախա-



պատրաստման վրա և այդ գործում ընդգրկում են մեծ թվով կոմունիստներ,
պլենումի անդամներ: Ուսումնասիրված նյութերը նրանք մեխանիկորեն չեն
հրամցնում պլենումին. դրանք բյուրոյի անդամների և ստուգող ընկերների
մասնակցությամբ ուշադիր վերլուծվում ու ամփոփվում են, որից հետո կազմ-
վում է զեկուցում՝ իր եզրակացություններով ու հետևություններով, նախա-
պատրաստվում են առաջարկություններ և նշվում կատարման ժամկետներ:
Այսպիսով, ապահովվում է պլենումի անդամների մասնակցությունը քննարկ-
վող հարցերի նախապատրաստմանը, որի շնորհիվ էլ պլենումներն անցնում
են աշխույժ և գործնական մթնոլորտում: Բերենք միայն մեկ օրինակ. 1957
թվականի օգոստոսին պարտիայի Երևան քաղաքի Ստալինյան շրջկոմի պլե-
նումը լսեց շրջկոմի քարտուղար ընկ. Ե. Մարտիրոսյանի զեկուցումը «Շըր-
ջանի արդյունաբերական ձեռնարկություններում Հոկտեմբերյան Սոցիալիս-
տական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորու-
թյունների կատարման ընթացքի և պարտիական կազմակերպությունների
խնդիրների մասին»:

Այս հարցի նախապատրաստմանը մասնակցեցին շրջկոմի պլենումի ան-
դամները, պարտկազմակերպությունների քարտուղարները, դիրեկտորները,
գլխավոր ինժեներները, պրոֆ. և կոմերիտական աշխատողները, թվով մոտ
40 հոգի: Ստեղծված էր 12 բրիգադա, որոնք պարտիայի շրջանային կոմի-
տեի քարտուղարի կողմից հրահանգավորում ստանալուց հետո շրջանի 30
կազմակերպություններում ուսումնասիրեցին սոցիալիստական մրցությունում
ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը և ինֆորմացիա
ներկայացրին շրջկոմ, որի հիման վրա էլ կազմվեց պլենումում տրված զե-
կուցումը: Զեկուցումը արտահայտեց գործի իրական վիճակը, նպաստեց
քննադատության ծավալմանը և բացահայտեց արդյունաբերական ձեռ-
նարկություններում եղած թերությունները: Պլենումում խիստ քննադատու-
թյան ենթարկվեց շրջանի էլեկտրալուսավորման արմատուրայի, Ջերժինսկու
անվան հաստոցաշինական, ավտոպահեստամասերի, կոմպրեսորների գործա-
րանների, ծխախոտի ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունների և
տնտեսական ղեկավարների անբավարար աշխատանքը: Այդ բոլորից հետո
կոնկրետ միջոցառումներ մշակվեցին ետ մնացող ձեռնարկությունները առա-
ջավորներին հասցնելու և սոցիալիստական մրցությունում ստանձնած պար-
տավորությունները պատվով կատարելու համար:

Շրջանային կոմիտեի պլենումի որոշումից հետո, որը քննարկվեց շրջա-
նի բոլոր պարտիական կազմակերպությունների ժողովներում, որոշակի
բեկում ստեղծվեց վերցրած պարտավորությունների կատարման ուղղու-
թյամբ: Եթե 1957 թվականի առաջին կիսամյակում շրջանի 22 ձեռնարկու-
թյուններ չէին կատարել պետական պլանները, ապա անցած 10 ամիսների
ընթացքում նրանց թիվը կրճատվեց և հասավ 17-ի: Կոմպրեսորների գործա-
րանի, ծխախոտի ֆաբրիկայի կոլեկտիվները վերջին մի քանի ամիսներում
զգալի չափով գերակատարում են իրենց պլանները:

Սակայն պարտիայի ոչ բոլոր շրջկոմներն են, որ պլենումներում քըն-
նարկվող հարցերը այդպես լավ են նախապատրաստում: Հաճախ, երբ մոտե-
նում է պլենումների հրավիրման ժամանակը, առանձին շրջկոմներում ասում
են, որ այսինչ հարցը բավական ժամանակ չի քննվել, եկեք այդ հարցը պլե-
նումում քննենք: Եվ սկսվում է այդ հարցի հապճեպ նախապատրաստումը:

Մինչեռ առաջին հերթին շրջկոմում պետք է հոգ տարվի պլենումում քննարկվող հարցը ընտրելու մասին, որովհետև շրջկոմի պլենումը հրավիրվում է երեք ամիսը մեկ անգամ և քննարկվում է մեկ կամ երկու հարց, հետևապես, հնարավոր չէ պատահական ամեն հարց քննարկման դնել։ Երբեմն պլենումներում քննարկվում են այնպիսի հարցեր, որոնք կարող են քննարկվել շրջկոմի բյուրոյում, սովետական օրգաններում կամ զանազան խորհրդակցություններում։ Ուրեմն, երբ շրջկոմի բյուրոն անհրաժեշտ է գտնում ընտրված հարցը պլենումում քննարկել, պետք է բավարար չափով ժամանակ հատկացնի այդ հարցը նախապես ուսումնասիրելու, ամփոփելու և զեկուցումն ու առաջարկությունները կազմելու համար։

Պլենումի նախապատրաստման գործում անվիճելի է շրջկոմի ապարատի դերը, և դա հասկանալի է։ Շրջկոմի աշխատակիցներն ավելի մոտ են կանգնած սկզբնական կազմակերպություններին, ծանոթ են նրանց աշխատանքի տարբեր բնագավառներին։ Սակայն սխալ կլիներ ամբողջ ծանրությունը թողնել միայն շրջկոմի աշխատակիցների, կամ, ինչպես հաճախ տեղի է ունենում, միայն հրահանգիչների վրա։ Այստեղ է, որ շրջկոմին օգնության պետք է գան պլենումի անդամները և ակտիվը, որոնց պարտիական հանձնարարությունների կարգով շրջկոմը պետք է լայնորեն օգտագործի պլենումում քննարկվող հարցերը նախապատրաստելու համար։ Դա այն լավագույն միջոցներից մեկն է, որով պարտիական կոմիտեն աճեցնում է պլենումի անդամներին ու ակտիվին, նրանց ճանաչում է գործնական աշխատանքում և կադրերի առաջքաշման ժամանակ սխալներ թույլ չի տալիս։

Ակտիվի այդ կարգի օգտագործումը բխում է պարտիայի պահանջից։ Ակտիվի օգտագործումը պետք է կատարվի նպատակահարմարությունից ելնելով, նայած քննարկվող հարցի բնույթին։ Չպետք է մոռանալ նաև տեղական Սովետների և պրոֆմիությունների ներկայացուցիչներին օգտագործելը։ Այսպես, եթե շրջկոմի պլենումում քննարկման է դրվում անասնաբուծության մթերատվության բարձրացման հարցը, անվիճելիորեն այս հարցի նախապատրաստմանը պետք է մասնակից դարձնել շրջանի զոոտեխնիկներից, անասնաբույժներից, ագրոնոմներից, լավագույն պրակտիկ աշխատողներից, մարդիկ, որոնք տեղերում կոնկրետ հարցը ուսումնասիրելով, կարող են արժեքավոր առաջարկություններ անել գործի հետագա բարելավման համար։

Բայց որոշ շրջկոմներ այդպիսի կադրերին լավ չեն օգտագործում։ Լինում են դեպքեր, երբ շրջկոմը կազմում է հարցացուցակ, որն իր մեջ պարունակում է 20—25 և ավելի հարց։ Դրանք բաժանվում են ստուգող ընկերներին, թող ներվի ասել, այդ «անկետան» լրացնելու համար։ Իսկ թե այդ հարցերից ո՞րն է գլխավորը և ինչպիսի՞ խորությամբ պետք է այն ուսումնասիրել և վերլուծել, այդ մասին ո՛չ մի խոսք չի ասվում։ Հասկանալի է, որ այդպիսի դեպքում ստացվում է ձևական, անկենդան փաստերի և թվերի հավաքում։ Նման կարգի ստուգումը չի՛ բացահայտում թերությունները, դրանց բուն պատճառները և չի՛ էլ կարող էական որևէ օգուտ տալ գործին։ Կամ լինում է այլ կերպ։ Հարցը լավ ուսումնասիրում են և քննարկման դնում, բացահայտում են թերությունները և համապատասխան որոշում ընդունում, բայց պլենումից հետո անհրաժեշտ կազմակերպական միջոցներ ձեռք չեն առնվում ընդունած որոշումը կատարելու համար։



Ահա մի օրինակ. 1957 թվականի մարտ ամսին պարտիայի Աղինի շրջկոմը իր պլենումում քննության է առել «1957 թվականի գյուղատնտեսական տարվա արդյունքների և 1957 թվականին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու խնդիրների մասին, կապված ՀԿՊ Կենտկոմի չորրորդ պլենումի որոշման հետ» հարցը։ Պլենումը արդարացիորեն նշեց, որ շրջանի կոլտնտեսություններում դատապարտելիորեն ետ են մնում թռչնաբուծությունը և խոզաբուծությունը. այդ ճյուղերի աշխատանքը անուշադրության մատնելու պատճառով նրանք դարձել են ոչ եկամտաբեր։ Մսի ընդհանուր արտադրության մեջ խոզի մսի տեսակարար կշիռը 100 հեկտարի հաշվով 1956 թվականին կազմել է 2,4 ցենտներ, իսկ Ջորակապ, Մարալիկ, Սառնաղբյուր գյուղերի կոլտնտեսություններում՝ 40—50 կգ.։ Թվում էր, թե պլենումի արձանագրած այս կարգի փաստերը պետք է մոբիլիզացնող վիճակ ստեղծեին պարտիական կազմակերպություններում՝ դրությունը շտկելու համար։ Սակայն այդպես չեղավ։ Շրջկոմը հետագայում տարվելով այլ խնդիրներով, մոռացավ իր որոշման մասին, հետամուտ չեղավ նրա կատարման մեջ։ Այդ է պատճառը, որ խոզի մսի նորմալ արտադրության ավելացման, թռչնաբուծության վիճակը բարելավելու գործում շոշափելի բան չարվեց։

Մի շարք տեղերում պահանջված պատասխանատվությամբ չեն վերաբերվում դեպի շրջկոմների պլենումները։ Ավելին, որոշ շրջկոմներ խախտում են պլենումների հրավիրման ժամկետները։ ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն շրջկոմների պլենումները պետք է հրավիրվեն ոչ սակավ, քան 3 ամիսը մեկ անգամ։ Բայց Սևանի, Կրասնոսելսկի, Սիսիանի շրջկոմները խախտում են այդ ժամկետները, պլենումներ սակավ են հրավիրում։ Օրինակ՝ Սևանի շրջկոմը 1957 թվականին հրավիրել է 2 պլենում, Կրասնոսելսկի շրջկոմը՝ 3 պլենում, Սիսիանինը՝ 3 պլենում և այլն։ Անհրաժեշտ է խիստ կերպով հետևել Կանոնադրության պահանջներին և թույլ չտալ պլենումների հրավիրման ժամկետների խախտումներ։ Շրջկոմների ղեկավար ընկերները չպետք է մոռանան, որ պլենումների ժամանակին հրավիրումը նպաստում է ներպարտիական դեմոկրատիայի ծավալմանը, կոմունիստների ինքնագործունեության զարգացմանը և քննադատության ու ինքնաքննադատության ծավալմանը։

Սակայն պլենումների միայն ժամանակին հրավիրումով չի վերջանում ամբողջ գործը։ Ամենակարևորը այն է, թե ինչպես է նախապատրաստվում և անցկացվում պլենումը, քաղաքական ինչպիսի մակարդակով են քննարկվում հարցերը, ինչպիսի որոշումներ են ընդունվում և, վերջապես, ինչ արդյունք է ստացվում քննարկվող հարցերից։

Պրակտիկ աշխատանքից հայտնի է, թե որքան կարևոր նշանակություն ունի պլենումում տրվող զեկուցման նախապատրաստումը։ Գաղտնիք չէ, որ գլխավորապես զեկուցումով է պայմանավորված պլենումի հետագա ընթացքը։ Պարտիական կազմակերպություններում դրական շատ օրինակներ կան պլենումներում տրվող զեկուցումները նախապատրաստելու ուղղությամբ։

Այդպիսի դրական օրինակ կարող են ծառայել Մարտունու պարտշրջկոմի պլենումներում տրվող զեկուցումները։

Բայց այն շրջկոմներում, ուր վատ են նախապատրաստվում պլենումներում քննարկվող հարցերը, վատ են կազմվում նաև զեկուցումները։ Այդպես է լինում այն դեպքում, երբ շրջկոմում հավաքված փաստերի և թվերի կույտը հանձնվում է մի բաժնի վարիչի՝ ամփոփելու և զեկուցման «կմախքը» կազ-

մելու, հարկ չհամարելով նախօրոք բյուրոյի անդամների և ստուգող ընկերների հետ մտքերի փոխանակություն կատարել։

Սովորաբար այդպիսի դեպքերում զեկուցումը կազմվում է սխեմատիկ ձևով. նախ՝ զեկուցման առաջին բաժնում տեղավորվում են դրական փաստերը, այնուհետև՝ մի քիչ որակող բառերով շարադրվում են բացասական փաստերը, ըստ որում այնքան անուններ և թվեր են մեջ բերվում, որ ձանձրույթ են պատճառում լսողներին և, վերջապես, զեկուցման երրորդ բաժինը վերաբերում է առաջիկա խնդիրներին, կոչ անելով հետագայում վերացնելու թերությունները և հասնելու խոշոր հաջողությունների։ Իսկ ինչո՞ւ է այդպես ստացվում։ Այդպես է ստացվում նրա համար, որ զեկուցողը պլենումի առջև բարձր պատասխանատվություն չի զգում։ Որոշ ընկերներ գտնում են, որ իրենք գործին ծանոթ են, միայն հարկավոր են մի քանի բացասական և դրական փաստեր, որպեսզի այդ մասին երկար խոսեն։ Հարկ չկա ապացուցելու այդպիսի մոտեցման սխալ լինելը։

Վ. Ի. Լենինն ամեն անգամ, երբ հարկ էր լինում որևէ տեղ ելույթ ունենալ, նախօրոք խնամքով պատրաստվում էր ելույթի, ընտրում մոմենտի կարևորագույն հարցերը, գլխավորը և պարտիայի ուշադրությունը բևեռում էր դրանց վրա։ Վ. Ի. Լենինի խստապահանջ մոտեցումը ելույթների պատրաստման գործում պետք է ուղեցույց հանդիսանա բոլոր նրանց համար, ովքեր պետք է զեկուցումներով հանդես գան և մոբիլիզացնող խոսք ասեն։

Զեկուցողը անձամբ պետք է մասնակցի հարցի նախապատրաստմանը. այսպիսի դեպքում զեկուցումը կլինի ավելի բովանդակալից, կենդանի, աշխույժ և հաճելի լսողի համար։ Եթե զեկուցումը կազմվի կոնկրետ, խոր ուսումնասիրությունների հիման վրա, համապատասխան հետևություններով և առաջիկա խնդիրներով հանդերձ, պլենումի աշխատանքներն էլ լավ և հաջող կընթանան։

Մի քանի խոսք էլ ժամանակի կամ ռեգլամենտի մասին։ Զեկուցումը պետք է կազմվի հակիրճ, բովանդակալից, չկրկնվող ֆրազներով, պարզ և հասկանալի լեզվով, ասենք՝ 40—60 րոպե տևողությամբ։ Զեկուցումը առանձին բառերի, անկապ նախադասությունների կույտ չպետք է լինի։ Շատ խոսելու սիրահարները հաճախ գլխավոր խնդիրները շաղախելով մանրուքների մեջ, աշխատում են երկարացնել զեկուցումը, ձգտելով ոչ մի բան բաց չթողնել, ամեն ինչի մասին խոսել. «ընդգրկեցի բոլոր հարցերը»,— մտածում են նրանք։ Պատահական չէ, որ այդպիսի դեպքում զեկուցումից հետո խոսողներ չեն լինում և լսվում են բացականչություններ՝ «պարզ է», «ամեն ինչ պարզ է»։ Ելույթներ եթե լինում են, լինում են քիչ թվով, այն էլ «մշտական» խոսողների կողմից։ Ցավոք սրտի այսպիսի արատավոր ոճը դեռևս գոյություն ունի մի շարք շրջաններում։

Պարտիական շրջկոմների պլենումները պետք է անցկացնել այնպես, որպեսզի նրանք չնմանվեն արտադրական խորհրդակցությունների։ Այստեղ բարձր պատասխանատվության մթնոլորտում պետք է քննվի հարցը։ Շրջկոմի պլենումի ամբողջ աշխատանքը պետք է ընթանա այնպես, որ նրա ավարտումից հետո յուրաքանչյուրի համար պարզ և որոշակի լինեն վաղվա անելիքները։ Պլենումի որոշումների ճիշտ գրառումը և անթերի խմբագրումը կարևոր գործ է, մի բան որ հաճախ չի արվում։

Պլենումում ընդունված որոշումը պետք է արտացոլի մտքերի փոխանա-



կության վիճակը և լինի կոնկրետ, ցույց տա քննարկվող հարցերի լուծման միջոցները, նշի ժամկետները և կատարող անձնավորությունները։ Այս դեպքում հեշտ կլինի որոշման կատարման ստուգումը։ Պլենումում որոշում ընդունելուց հետո շրջկոմը պետք է հոգ տանի այն մաքուր տպագրելու և ժամանակին պարտիական կազմակերպություններ ուղարկելու և քննելու մասին։ Դա կարևոր նշանակություն ունի, որովհետև ամեն մի ձգձգում նսեմացնում է հարցի կարևորությունը և սպասած արդյունքը չի տալիս։ Ապարդյուն են նաև այն որոշումները, որոնք գրված են անխնամ, իրենց մեջ պարունակում են ոչ ճիշտ դրույթներ։ Օրինակ, ինչ արժեք կարող է ունենալ պարտիայի Կրասնոսելսկի շրջկոմի պլենումի միակողմանի որոշումը, որը փոխանակ պարտիական կազմակերպություններից պահանջելու հանրային հոտի վերարտադրության հաշվին ապահովելու անասունների գլխաքանակի աճեցման պլանների կատարումը, խորհուրդ է տալիս անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել գնումների միջոցով մինչև նոյեմբերի մեկը կատարելու անասունների բոլոր տեսակների գլխաքանակի աճեցման պլանները։ Կամ ինչ արժեք ունի այն որոշումը, որը պարտկազմակերպություններ է ուղարկվում մեծ ուշացումով և հետագայում չի ստուգվում, թե ինչպես քննվեց այն, ինչպիսի միջոցառումներ ձեռնարկվեցին նրա կատարման համար։

Լինում է նաև այսպես. պլենումի որոշման կատարման ամբողջ պատասխանատվությունը դրվում է շրջկոմի ապարատի վրա։ Դա, իհարկե, ճիշտ է։ Շրջկոմը պետք է անհրաժեշտ կազմակերպական միջոցառումների դիմի պլենումի որոշումը լրիվ կենսագործելու համար։ Սակայն ո՞ւմ միջոցով, ո՞վ պետք է պայքարի այդ որոշումների կատարման համար։ Այս գործում մեծ անելիքներ ունեն շրջկոմի պլենումի անդամները, որոնք պետք է մասսայականացնեն պլենումի որոշումները, ակտիվությամբ մասնակցեն շրջկոմի ընթացիկ աշխատանքներին, սերտ կապ պահպանեն պարտիական սկզբնական կազմակերպությունների հետ և հետևեն, որպեսզի պլենումի, ինչպես նաև բյուրոյի որոշումները անշեղորեն կատարվեն։ Պետք է այնպիսի պայմաններ ստեղծել, որ պլենումի անդամները պլենումից պլենում միայն չմտնեն շրջկոմ, այլ նրանք ամենօրյա մասնակցություն ունենան շրջանի պարտիական կազմակերպության աշխատանքներին, ապրեն նրա կյանքով և ակտիվորեն մասնակցեն պարտիայի կողմից անցկացվող բոլոր միջոցառումներին։ Այս բոլորը, իհարկե, չեն նվազեցնում, այլ բարձրացնում են շրջկոմի քարտուղարների, բաժնի վարիչների և հրահանգիչների պատասխանատվությունը։ Նրանք պետք է հենվեն սկզբնական պարտկազմակերպությունների վրա և նրանց միջոցով ապահովեն որոշումների կատարումը։

Շրջկոմի ապարատի աշխատանքի ճիշտ կազմակերպման գործում խոշոր պատասխանատվություն է կրում պարտիայի շրջկոմի քարտուղարը։ Պետք է ընդունել, որ պարտիայի շրջկոմների աշխատանքում դեռևս կան լուրջ թերություններ։ Ամենաէական թերությունը այն է, որ անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում կատարման ստուգման վրա։ Չի ստեղծված այնպիսի դրություն, որ որոշումն ընդունելուց հետո շրջկոմների աշխատողները գնան և կազմակերպեն նրանց կատարումը, ամենօրյա կապ պահպանեն սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ, և ոչ թե ամբողջ ուշադրությունը դարձնեն միայն առանձին հանձնարարությունների կատարման վրա։

Շրջկոմի աշխատողները չպետք է բավարարվեն միայն այն բանով, որ

պարտիական կազմակերպություններին հաղորդեն պարտիական կոմիտեի որոշումը։ Նրանք պարտավոր են լինել տեղերում և բուն արտադրության մեջ պարտիական ու անպարտիական մասսաներին մոբիլիզացնել՝ ընդունված որոշումը մինչև վերջ կենսագործելու համար։ Չի կարելի անտեսել այն, որ մեր մի շարք շրջաններում պատշաճ բարձրության վրա չի գտնվում պարտիական-կազմակերպական աշխատանքը, թույլ է սկզբնական պարտիական կազմակերպությունների ղեկավարման մակարդակը։

Պարտիայի XX համագումարը պահանջեց ամրապնդել շրջանային օղակի ղեկավար կադրերը՝ ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում։

Շրջաններում աճել են շատ ընդունակ մարդիկ, որոնց որոշ տեղերում լավ չգիտեն ու վախենում են առաջ քաշել, ընտրել կոմիտեների կազմում կամ հանձնարարություններ տալ։ Հարկավոր է համարձակորեն առաջ քաշել ընդունակ և թարմ ուժեր, հատկապես երիտասարդներից, կանանցից։ Պետք է ազատվել նրանցից, ովքեր անընդունակ են տվյալ գործում և իրենց պրակտիկ աշխատանքով չեն ապահովում տրված հանձնարարությունների կատարումը։ Միաժամանակ պետք է բացառիկ հոգատարություն ցուցաբերել այն փորձառու կադրերի նկատմամբ, որոնք լավ գիտեն գործը, սիրում են աշխատել մարդկանց հետ և հասկանում են նոր պահանջները։ Դրանք տարբեր պրոֆեսիայի տեր մարդիկ են, ունեն կյանքի հարուստ փորձ և կազմում են այն ղեկավար կորիզը, որը իսկապես լավ է կապված կյանքի հետ, կարող է բազմակողմանիորեն մոտենալ հարցերի լուծմանը։

Վերջին տարիների ընթացքում խիստ կերպով փոխվել է պարտիական կադրերի որակական կազմը. պարտիայի շրջանային օղակներում աշխատում են քաղաքականապես պատրաստված, պարտիական մասսաների վստահությունը վայելող մարդիկ, որոնք դուրս են եկել բանվորների, գյուղացիների և սովետական ինտելիգենցիայի ծոցից, մինչև վերջ նվիրված են կոմունիզմի մեծ գործին։ Դրանց մի զգալի մասը պարտիական կոնֆերանսներում ընտրըվում են պարտիական կոմիտեների կազմում։

Այժմ, երբ վեր ենք առնում պարտիական կոմիտեների կազմը, պարզ երևում է, թե կոնֆերանսներում պատգամավորները ինչպիսի լրջությամբ են վերաբերվել պարտիական ղեկավար օրգաններ ընտրելու գործին։ Նրանք պարտիական և սովետական ղեկավար աշխատողների հետ միասին պարտիական կոմիտեների կազմում են ընտրել բանվորների, կոլտնտեսականների, գյուղատնտեսության մասնագետների և ինտելիգենցիայի առաջավոր ներկայացուցիչների, որոնք պատվով են կատարում իրենց պարտականությունները և աշխատանքում օրինակ ծառայում մյուսների համար։

1957 թվականի վերջերին տեղի ունեցած շրջանային ու քաղաքային պարտիական կոնֆերանսները պլենումների կազմում ընտրել են անհամեմատ ավելի շատ շարքային մարդիկ, քան նախորդ տարիներին։ Պլենումների կազմում շատացել է նաև կանանց թիվը։ Բայց պարտիայի շրջկոմների ու քաղկոմների կազմն ուսումնասիրելիս պարզ երևում է, որ բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների թիվը կոմիտեների կազմում դեռևս քիչ է։ Այսպես, օրինակ, եթե նախորդ ընտրությունների ժամանակ ՀԿՊ քաղկոմների ու շրջկոմների կազմում ընտրված 2480 անդամից ու թեկնածուից բանվորներ են եղել 84 հոգի, ապա վերջին ընտրությունների ժամանակ կոմիտեների կազմում ընտրված 2677 հոգուց



բանվորներ են 126-ը։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ կոմիտեների կազմի աճի հետ միասին նրանցում ինչպես հարկն է չի աճել բանվորների տոկոսը։ Մի՞թե նորմալ երևույթ է, երբ պարտիայի Կիրովականի քաղկոմի կազմում ընտրված 78 անդամներից ու թեկնածուներից բանվորներ են միայն 8 հոգի, Ալավերդում՝ 74-ից 4 հոգի, Երևանի Ստալինյան շրջանում՝ 84-ից 9 հոգի։ Ախտայի շրջանում, որտեղ մեծ թվով առաջավոր կոմունիստ բանվորներ կան, շրջկոմի անդամ են ընտրվել ընդամենը 2 բանվոր։ Իրենց կոմիտեների կազմում մեկական բանվորներ են ընտրել՝ Շահումյանի, Իջևանի, Ապարանի, Մեղրիի, Շամշադինի և այլ շրջանների պարտիական կոնֆերանսները, իսկ Արտաշատի շրջկոմի պլենումի կազմում ոչ մի բանվոր չի ընտրվել, չնայած նրան, որ շրջանում եղած բանվորներից 148-ը կոմունիստներ են։

Դրությունն առանձնապես անբավարար է ինժեներա-տեխնիկական աշխատողներից և գյուղատնտեսության մասնագետներից պարտիական կոմիտեների կազմում ընտրելու գործը։ Բավական է ասել, որ նախորդ ընտրությունների հետ համեմատած ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը կոմիտեների կազմում կրճատվել է ավելի քան երեք անգամ, իսկ գյուղատնտեսության մասնագետներինը՝ 21 հոգով։ Սա, իհարկե, լուրջ թերություն է, որից պարտիական շրջանային օրգանները պետք է համապատասխան եզրակացություն անեն։

Կոմիտեների կազմում անհրաժեշտ է ավելի շատ բանվորներ, կոլտնտեսականներ առաջադրել ոչ թե սոսկ ներկայացուցչության համար, այլև պարտիական ակտիվ աշխատանքի համար։ Հարկավոր է հոգ տանել, որպեսզի ընտրությունները բարձրացնեն կոմիտեների անդամների պատասխանատվության զգացումը։ Ճիշտ վարվեցին Նոր Բայազետի, Մարտունու և ուրիշ շրջանների պարտկոնֆերանսների դելեգատները, որ վատ աշխատանքի համար մի քանի ընկերների հանեցին պլենումի կազմից կամ փոխադրեցին պլենումի անդամության թեկնածու։

Մեր պարտիան այժմ լուծում է կոմունիստական շինարարության բարդ և լուրջ խնդիրներ։ Այդ խնդիրների լուծման պրոցեսում աճում է պարտիական և անպարտիական մասսաների ակտիվությունը, նրանց հետաքրքրությունը դեպի մեր ժամանակի բազմաբովանդակ հարցերը։ Նրանց հետաքրքրում է ամեն ինչ՝ մեր պետության ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, պատերազմի և խաղաղության հարցերը, առաջիկա տարիներին մեր պարտիայի վիթխարի նախագծումների կենսագործման հարցերը։ Պարտիական կոմիտեները իրենց անդամների միջոցով պետք է պատասխաններ տան աշխատավորներին հետաքրքրող բոլոր հարցերին և նրանց ուժերը մոբիլիզացնեն պարտիայի XX համագումարի որոշումները պատվով կատարելու համար։

# ԿԻՐԱՌԵԼ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հ. ՊՈՂՈՍՅԱՆ

Քննադատության և ինքնաքննադատության ծավալումը, կոմունիստների արժեքավոր դիտողությունների և առաջարկությունների հետևողական կենսագործումը պարտիական կազմակերպություններին օգնում են ժամանակին բացահայտելու աշխատանքի այս կամ այն բնագավառում տեղ գտած թերությունները և միջոցառումներ նշելու դրանք վերացնելու համար։ Այդ առումով էլ կոմունիստների քննադատական դիտողություններին ունկնդրելը ներպարտիական կյանքում դիտվում է որպես պարտիական կազմակերպությունների կարևոր խնդիրներից մեկը և հզոր միջոց է հանդիսանում աշխատավորական լայն մասսաների ուժերի մոբիլիզացման համար։

ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեն, ուսումնասիրելով կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, հարկ եղած դեպքում դրանք քննարկում է բյուրոյի նիստերում, օգնում պարտիական կազմակերպություններին՝ ապահովելու ձեռնարկված միջոցառումների կենսագործումը։

Պարտիայի քաղաքային կոմիտեի պլենումներում և ակտիվի քաղաքային ժողովներում բազմիցս խոսվել է ետ մնացող արդյունաբերական ձեռնարկությունների մասին։ Կոմունիստներ Ա. Հակոբյանը և Ա. Ռեազովը իրենց ելույթներում նշել էին կաշույքի ֆաբրիկայի տևականորեն ետ մնալու պատճառները։ Քաղաքային կոմիտեն, հաշվի առնելով կոմունիստների իրավացի քննադատությունը, քաղկոմի արդյունաբերության ու տրանսպորտի բաժնին հանձնարարեց ուսումնասիրել հարցը և այն մտցնել քաղկոմի բյուրո։ Ուսումնասիրությունից պարզվեց, որ տարիներ շարունակ չի լուծվում ֆաբրիկային անհրաժեշտ չափով հումք մատակարարելու հարցը, լուրջ թերություններ կան աշխատանքի և արտադրության կազմակերպման գործում, արտադրության մեջ դանդաղ է ներդրվում առաջավոր տեխնիկան։

Հարցը բազմակողմանիորեն քննելուց հետո բյուրոն գործնական քայլերի դիմեց՝ կարգավորելու մատակարարման գործը, օգնեց ֆաբրիկայի դիրեկցիային՝ կարճ ժամանակում ավարտելու ստացած նոր մեքենաների տեղադրումը, վերանայելու և վերադասավորելու արտադրության հրամանատարների կազմը։ Արդյունքը եղավ այն, որ կաշույքի ֆաբրիկան անցավ առաջավոր ձեռնարկությունների շարքը և այժմ կատարում է պետական առաջադրանքները։

Քաղաքային կոմիտեի բյուրոն, իր աշխատանքի պլանի համաձայն, սիստեմատիկաբար լսում է սկզբնական պարտիական կազմակերպությունների



բյուրոների և քարտուղարների հաշվետվությունները, պարզում, թե պարտիական կազմակերպությունները և նրանց բյուրոները ինչպե՞ս են ունկնդրում և ուսումնասիրում կոմունիստների ահազանգումները, ինչպե՞ս են ապահովում քննադատական ճիշտ դիտողությունների կատարումը։

Քաղաքային կոմիտեի բյուրոն քննության առավ կոմունիստների քննադատական դիտողությունների կենսագործման ընթացքը մահճակալի գործարանում։ Քաղկոմի բյուրոն նշեց, որ գործարանի սկզբնական պարտիական
կազմակերպությունը և նրա բյուրոն (քարտուղար Ա. Ալեքսանյան) հետևողականորեն չեն զբաղվում հաշվետու-ընտրական ժողովի որոշումների և կո-
մունիստների քննադատական դիտողությունների կենսագործման հարցով։
Կոմունիստներ Վ. Խաչատրյանը, Կ. Ժամկոչյանը, Ն. Բաղդասարյանը գոր-
ծարանի պարտկազմակերպության բյուրոյին և դիրեկցիային պարտիական
ժողովում քննադատել են այն բանի համար, որ նրանք ուշադրություն չեն
դարձնում աշխատանքային կարգապահության ամրապնդման և գործարանը
ժամանակին հում նյութով ապահովելու հարցերի վրա, կոմունիստներից
ոմանք չեն գտնվում ավանգարդային դերում։ Կոմունիստներ Վ. Թումանյանը,
Հ. Հովհաննիսյանը, Ս. Կարճիկյանը, Զ. Եղոյանը ահազանգել են այն մասին,
որ գործարանում հաշվառման գործը բարվոք վիճակում չէ, վատ է կազմա-
կերպված ցուցադրական ագիտացիան և որոշ մարդիկ ձեռք են մեկնում
սոցիալիստական սեփականությանը։ Այս և նման շատ դիտողություններ չեն
արժանացել պարտբյուրոյի ուշադրությանը։ Գործարանի պարտիական կազ-
մակերպության բյուրոն ձևականության համար քննելով արտադրական պլան-
ների կատարման հարցերը, ոչ մի անգամ ընթացք չի տվել կոմունիստների
կողմից արված ահազանգումներին։ Ավելին, թե՛ ժողովներում, թե՛ բյուրոյի
նիստերում ընդունված որոշումները մնացել են թղթի վրա, դրանց կատարման
գործով ոչ ոք չի զբաղվել։

Պարտիայի քաղաքային կոմիտեի բյուրոն բացահայտելով մահճակալի
գործարանի պարտբյուրոյի աշխատանքում տեղ գտած թերությունները, կոնկ-
րետ որոշում ընդունեց և գործարանի պարտիական կազմակերպությանը ու
դիրեկցիային պարտավորեցրեց գործարանը ապահովել հում նյութով, բարձ-
րացնել աշխատանքային կարգապահությունը և հասնել այն բանին, որպեսզի
գործարանը աշխատի ռիթմիկ կերպով։ Որոշումից հետո քաղկոմի օգնությամբ
բարձրացվեց պարտիական-մասսայական աշխատանքի մակարդակը, պար-
տիական ուժերը վերադասավորվեցին ըստ ցեխերի, բարելավվեց հում նյու-
թի մատակարարման գործը, ավելի մեծ ուշադրություն հատկացվեց աշխա-
տանքային կարգապահության և հաշվառման գործին։ Այդ բոլորի շնորհիվ
անցյալ տարվա արտադրական պլանները գերակատարված են։

Կոմունիստների քննադատական դիտողությունները հաշվի առնելու և
կենսագործելու բնագավառում հետևողական աշխատանք են կատարում քա-
ղաքի արդյունաբերական և տրանսպորտի ձեռնարկությունների մի շարք
սկզբնական պարտիական կազմակերպություններ։ Այդ տեսակետից ուսանելի
շատ բան կա Ձերժինսկու անվան մանվածքային ֆաբրիկայի պարտբյուրոյի
աշխատանքում (քարտուղար՝ Խ. Հակոբյան)։ Այսպես, օրինակ, սկզբնական
պարտիական կազմակերպության անդամներ Գ. Հովսեփյանը, Ա. Ավետիս-
յանը, Ա. Ղազարյանը աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու
նպատակով առաջարկեցին ավելացնել մանող բանվորուհիների կողմից սպա-

սարկվող իլիկների քանակը։ Պարտբյուրոյի ուսումնասիրությունից պարզվեց, որ պետական պլանների կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է կենսագործել վերոհիշյալ ընկերների առաջարկությունները և անցնել բարձր խտացված աշխատանքի։ Դա նշանակում է, որ ֆաբրիկայի յուրաքանչյուր մանող բանվորուհի 720 իլիկի փոխարեն պետք է սպասարկի 1080 իլիկ։ Պարտբյուրոյի նախաձեռնությամբ այդ հարցը քննության առնվեց ինժեներատեխնիկական աշխատողների խորհրդակցությունում, որը մշակեց կոնկրետ միջոցառումներ՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման այդ նոր մեթոդը արտադրության մեջ արմատավորելու համար։

Պարտբյուրոյի որոշման առաջին կենսագործողները հանդիսացան մանող բանվորուհիներ ու բրիգադիրներ, պարտիայի անդամներ՝ Ս. Առաքելյանը, Ջ. Նահապետյանը, Ջ. Ալեքսանյանը, Լ. Պետրոսյանը և ուրիշներ։ Նրանցից յուրաքանչյուրը սկսեց սպասարկել 1080 իլիկ և ցույց տվեց, որ տեխնոլոգիական պրոցեսները ճիշտ կիրառելու և բանվորական ժամանակը ռացիոնալ օգտագործելու դեպքում ամեն մի մանող բանվորուհի կարող է աշխատել բարձր խտացմամբ։

Աշխատանքի նոր մեթոդը արտադրության մեջ արմատավորելու գործում ֆաբրիկայի պարտբյուրոյին և դիրեկցիային մեծ օգնություն ցույց տվին մանող ցեխի պարտիական կազմակերպությունը և ինժեներա-տեխնիկական աշխատողները, որոնք կարճ ժամանակամիջոցում ստեղծեցին բոլոր անհրաժեշտ պայմանները աշխատանքի առաջավոր մեթոդները արտադրության մեջ արմատավորելու համար։ Դրանից հետո ֆաբրիկայի տասնյակ մանող բանվորուհիներ անցան բարձր խտացված աշխատանքի։ Այդ միջոցառման շնորհիվ ֆաբրիկան 1957 թվականին աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարեց 111,2 տոկոսով, լրացուցիչ կերպով տվեց ավելի քան 60 տոննա բարձրորակ մանվածք և երկու անգամ առաջնություն շահեց համամիութենական սոցիալիստական մրցությունում։ Ֆաբրիկայի պարտիական կազմակերպության բյուրոն լուրջ ուշադրություն է դարձնում կոմունիստների այն քննադատական դիտողություններին, որոնք վերաբերում են նոր տեխնիկան ներդնելու հարցերին։ Կենսագործելով այդ ուղղությամբ եղած առաջարկությունները, ձեռնարկվեցին միջոցառումներ, որոնց շնորհիվ կարճ ժամանակամիջոցում շահագործման հանձնվեցին բարձր արտադրողականություն ունեցող դզող, սանրող, ժապավենող, նախամանող և փաթաթող հարյուրավոր մեքենաներ։

Կոմունիստներ Ա. Գրիգորյանը և Շ. Մկրտչյանը ֆաբրիկայի պարտբյուրոյին քննադատել էին այն բանի համար, որ նա հետևողականորեն չի զբաղվում թողարկվող արտադրանքի որակի բարձրացման խնդրով, որի հետևանքով էլ ֆաբրիկան չի ապահովում մանվածքի համար սահմանված պետական ստանդարտները և անորակ արտադրանք թողարկելու համար վճարել է մեծ գումարների հասնող տույժեր ու տուգանքներ։ Այդ դիտողություններից հետո պարտբյուրոն մի շարք միջոցառումներ ձեռնարկեց մանվածքի որակը բարելավելու համար, բայց դրությունը շատ քիչ փոխվեց և միայն 1957 թվականի առաջին կիսամյակում ֆաբրիկան զանազան կազմակերպությունների վճարեց 62 հազար ռուբլի տույժ և տուգանք։ Պարտբյուրոն հանձնարարեց մի խումբ կոմունիստների՝ ցեխերում մանրամասն ստուգել կիսաֆաբրիկատների և մանվածքի որակը, պարզել պետական ստանդարտին չհամապատասխանող



մանվածք թողարկելու պատճառները և ներկայացնել իրենց առաջարկությունները։ Դրանից հետո արտադրանքի որակի հարցը քննության առնվեց պարտբյուրոյի նիստում։ Նիստին հրավիրվեցին ցեխերի պետերը, հերթի վարպետները և ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարները։ Ինչպես ստուգումից, այնպես էլ քննարկումից պարզվեց, որ ցածրորակ արտադրանք թողարկելու պատճառներից մեկն այն է, որ վարպետները ժամանակին չեն վերացնում մեքենաների տեխնիկական թերությունները, իսկ ցեխերի պետերը և վարպետները թուլացրել են հսկողությունը տեխնոլոգիական պրոցեսները ճիշտ կիրառելու վրա։

Պարտբյուրոն նպատակահարմար գտավ հրավիրել ցեխային պարտիական կազմակերպությունների գռնրաց ժողովներ և քննության առնել յուրաքանչյուր ցեխի թողարկած արտադրանքի որակի հարցը ու համապատասխան միջոցառումներ մշակել ինչպես կիսաֆաբրիկատների, այնպես էլ մանվածքի որակը բարելավելու համար։ Միաժամանակ հարց բարձրացրեց գործարանի վարչության առջև՝ կազմակերպչական միջոցներ ձեռք առնել վատորակ ապրանքներ արտադրողների նկատմամբ։ Բյուրոյի նիստից և ցեխային կազմակերպությունների ժողովներից հետո ֆաբրիկայի աշխատանքի արդյունքները ցույց տվին, որ պարտբյուրոն միանգամայն ճիշտ որոշում է ընդունել։

Արտադրանքի որակը բարելավելու գործում խոշոր նշանակություն ունեցավ ցեխերի, հերթափոխությունների բրիգադաների և բանվորների միջև սոցիալիստական մրցության ծավալումը։ Բազմաթիվ մանածագործուհիներ ստանձնեցին նոր, լրացուցիչ պարտավորություններ, կրկնակի չափով ավելացավ գերազանց որակի համար պայքարող բրիգադաների թիվը։ Ֆաբրիկայում ներկայումս գործում են գերազանց որակի համար պայքարող 45 բրիգադա, որոնք սիստեմատիկաբար թողարկում են միայն առաջին տեսակի մանվածք և իրենց լավագույն աշխատանքով օրինակ են հանդիսանում մյուս բրիգադաների համար։

Պարտբյուրոն զգալի աշխատանք է կատարել կոմունիստների այն քննադատական դիտողությունների կենսագործման ուղղությամբ, որոնք նպաստում են կոլեկտիվի շրջանում տարվող քաղդաստիարակչական աշխատանքների բարելավմանը։

Կոմունիստների քննադատական դիտողությունները և առաջարկությունները Կոմունիստների քննադատական դիտողությունները և ահազանգումները գույպայի ֆաբրիկայի պարտկազմակերպության բյուրոյին հնարավորություն տվին պարտիական-լուսավորության այս ուսումնական տարում վերացնել կոմունիստների քաղաքական ուսուցման գործում եղած թերությունները, բարելավել աշխատավորների շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքը։ Հաշվի առնելով եղած դիտողությունները, պարտբյուրոն 1957— 1958 ուսումնական տարում կոմպլեկտավորեց էկոնոմիկայի և ընթացիկ մոմենտի հարցերն ուսումնասիրող խմբակները։ Բացի վերոհիշյալ խմբակներից, ցածր կրթական մակարդակ ունեցողների համար կազմակերպվեց քաղդպրոց։ Ֆաբրիկայի պարտիական կազմակերպությանը կից գործող 4 խմբակներում և ԼԿԵՄ կազմակերպությանը կից գործող 12 խմբակներում ընդգրկվեցին պարտիայի 94 անդամներ, 250 կոմերիտականներ և 70-ից ավելի անկուսակցականներ։ Պարտբյուրոն լուրջ ուշադրություն դարձրեց խմբակները որակյալ պրոպագանդիստներով ապահովելու և պարապմունքներից անհարգելի պատճառով բացակայող ունկնդիրների թիվը մինիմումի հասցնելու գործի վրա։

Պարտբյուրոն լուրջ ուշադրություն է դարձնում նաև դասախոսական պրոպա-
գանդայի, բանվորների և բանվորուհիների տեխնիկական ու հանրակրթական
ուսուցումը բարելավելու գործին։ Ֆաբրիկայի 23 աշխատողներ հեռակա սո-
վորում են միջնակարգ և բարձրագույն տեխնիկական ուսումնական հաստա-
տություններում։ Պարտբյուրոն հոգ է տանում, որպեսզի կոմունիստների,
բանվոր-բանվորուհիների և արտադրության հրամանատարների քաղաքական,
տեխնիկական ուսուցումը սերտորեն կապվի արտադրության խնդիրների հետ։
Գուլպայի ֆաբրիկայում սոցիալիստական մրցությունը ծավալելու, առա-
ջավոր փորձը ուսումնասիրելու և արտադրության ետ մնացող ճյուղերի աշ-
խատանքը բարելավելու ուղղությամբ խրախուսելի գործ է կատարում նաև
ագիտկոլեկտիվը։ Կոմունիստների քննադատական դիտողությունները հաշվի
առնելով՝ պարտիական կազմակերպությունը զգալի աշխատանք է տարել ցե-
խերում, հերթափոխություններում և բնակչության հետ տարվող քաղաքական
ագիտացիան կոնկրետ և բովանդակալից դարձնելու ուղղությամբ։ Ավելի քան
60 ագիտատորներ աշխատավորներին ծանոթացնում են պարտիայի և կառա-
վարության որոշումներին, միջազգային կյանքի կարևոր իրադարձություննե-
րին։ Ֆաբրիկայի պարտբյուրոյի քարտուղար, ագիտկոլեկտիվի ղեկավար Ն.
Գյուլնազարյանը շաբաթական մեկ անգամ անց է կացնում սեմինար պա-
րապմունք, տալիս է մեթոդական ցուցումներ, հաշվի առնում ագիտատորների
պահանջը, մշակում զրույցների թեմաներ։ Սեմինար պարապմունքներում հա-
ճախ ելույթ են ունենում ագիտատորները, պատմում իրենց փորձի մասին։
Հետաքրքրական ու բովանդակալից զրույցներ են անցկացնում բանվորների
հետ ագիտատորներ՝ Հ. Խանբեկյանը, Ս. Խաչատրյանը, Բ. Ղաբուզյանը և
Ա. Զաքարյանը։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը արտադրության կոնկրետ խըն-
դիրների հետ կապելը մեծ չափով նպաստեց աշխատանքում տեղ գտած թե-
րությունների վերացմանը, պետական առաջադրանքների հաջող կատարմանը։
Եթե ֆաբրիկան 1957 թվականի տնտեսական տարում, ինչպես նաև ըն-
թացիկ տարվա հունվար ամսին տեխնիկա-տնտեսական հիմնական ցուցա-
նիշներով սիստեմատիկաբար կատարում և գերակատարում է պետական
առաջադրանքները, ապա դա պետք է բացատրել նրանով, որ կոմունիստները
իրենց քննադատական դիտողություններով և գործնական աշխատանքով ակ-
տիվորեն մասնակցում են ֆաբրիկայի առջև դրված խնդիրների լուծմանը։
Կոմունիստների քննադատական դիտողությունների հետևողական կենսագոր-
ծումը բարձրացնում է նրանց ակտիվությունը և մոբիլիզացնում նրանց ուժերը
պարտիայի և կառավարության որոշումները անթերի կատարելու համար։
Ֆաբրիկան 1957 թվականին պլանից դուրս տվել է ավելի քան հինգ միլիոն
ռուբլու արտադրանք և յուրացրել է արտադրանքի մի շարք նոր տեսակների
թողարկումը։

Պետական առաջադրանքները սիստեմատիկաբար կատարում և գերակա-
տարում է շոգեքարշային դեպոյի կոլեկտիվը։ Այստեղ մասսայական բնույթ է
ստացել ծանրաքարշ գնացքների տեղափոխումը, նորոգման ցեխերում լայնո-
րեն արմատավորվում են աշխատանքի առաջավոր ձևերն ու մեթոդները։ Դե-
պոյի կոլեկտիվը շոգեքարշների վազքի նորման զգալիորեն գերակատարել է,
ժամկետից շուտ կատարվել է տեխնիկա-տնտեսական բոլոր հիմնական ցու-
ցանիշների առաջադրանքը։ Դեպոյի կոմունիստները ակտիվորեն մասնակցում



են ձեռնարկության առջև դրված խնդիրների լուծմանը, իրենց առաջարկու-
թյուններով նրանք օգնում են տնտեսական ղեկավարներին՝ արագ կերպով
լուծելու արտադրության առջև դրված կարևոր խնդիրները։ Կոմունիստները
շատ արժեքավոր առաջարկություններ են անում հատկապես արտադրական
խորհրդակցություններում։ Պարտիական կազմակերպության բյուրոն, ուսում-
նասիրելով բարձրացված հարցերը, միջոցառումներ է ձեռնարկում արտադը-
րության այս կամ այն բնագավառում տեղ գտած թերությունները վերացնելու
համար։

Վերանորոգման ցեխերում վեց ժամով բարձր էր նորոգման կանգնած
շոգեքարշների պարապուրդը, արձանագրվել էր կրկնակի նորոգման 63 դեպք։
Կոմունիստներ Վ. Զաիմցյանը, Գ. Գրիգորյանը և ուրիշներ այդ մասին ահա-
զանգեցին պարտբյուրոյին և ժողովներից մեկում քննադատեցին դեպոյի
տնտեսական ղեկավարությանը, որը միջոցներ ձեռք չէր առնում՝ վերացնե-
լու այդ աղաղակող թերությունները։ Պարտբյուրոն հանձնարարեց կոմու-
նիստներ Գ. Գրիգորյանին, Կ. Հովիվյանին և Վ. Զաիմցյանին ուսումնասիրել
նորոգման աշխատանքներում եղած թերությունների պատճառները, միաժա-
մանակ ցույց տալ դրանց վերացման ուղիները։ Այդ առթիվ հրավիրվեց
պարտբյուրոյի նիստ, որին մասնակցում էին՝ դեպոյի ինժեներա-տեխնիկա-
կան աշխատողները, վարպետները, բրիգադիրները և առաջավոր բանվորները։
Հարցը բազմակողմանիորեն քննարկելուց հետո պարտիական բյուրոն իր ըն-
դունած որոշումով պարտավորեցրեց ցեխերի պետերին և ինժեներա-տեխնի-
կական աշխատողներին՝ խիստ կերպով հետևելու վերանորոգման որակին.
մեքենավարներին խորհուրդ տրվեց անձամբ հետևել նորոգման ընթացքին ու
որակին. սոցիալիստական մրցության ծավալման միջոցով ամրապնդել աշ-
խատանքային կարգապահությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողա-
կանությունը։ Ցեխային պարտիական կազմակերպությունները գործի վերա-
ծելով այս որոշումը, հասան այն բանին, որ այժմ ցեխերում կանգնած շոգե-
քարշների պարապուրդները կրճատվել են 8 ժամով, իսկ միջգնացքային նորո-
գումները՝ 50 տոկոսով։

Հաշվի առնելով կոմունիստների քննադատական դիտողությունները՝
պարտբյուրոն զգալիորեն բարելավել է առաջավոր փորձի ուսումնասիրումն
ու պրոպագանդումը։ Դրա շնորհիվ նորոգումների ինքնարժեքը իջեցվել է
5—6 տոկոսով։ Շոգեքարշների օրական միջին վազքը գերակատարվել է 4,4
կիլոմետրով, իսկ տեխնիկական արագությունը՝ 2 կիլոմետրով։

Դեպոյի պարտիական կազմակերպության բյուրոն հասել է այն բանին,
որ յուրաքանչյուր կոմունիստ տեսնում է իր քննադատական դիտողության ու
առաջարկության կենսագործումը։

Վագոնային դեպոյում կոլեկտիվի յուրաքանչյուր 5 աշխատողից մեկը
ռացիոնալիզատոր է։ Դա արդյունք է այն բանի, որ պարտբյուրոն ղեկավա-
րում է բանվորների, ինժեներների, տեխնիկների ստեղծագործական նախա-
ձեռնությունները և ուղղություն տալիս դրանց, ունկնդրում է շարքային մարդ-
կանց քննադատական դիտողությունները, ժամանակին միջոցառումներ է ձեռ-
նարկում վեր հանված թերությունները վերացնելու համար։ Հետևողական և
պլանավորված աշխատանքի շնորհիվ միայն անցած տարի արտադրության
մեջ ներդրվել է ավելի քան 65 ռացիոնալիզատորական առաջարկություն։
Տասնյակ նոր մեխանիզմների ու հարմարանքների հեղինակներ են՝ Տ. Գյոն-

չյանը, Պ. Ջեյրանյանը, Ք. Ղարագյոզյանը և ուրիշներ։ Ստացված յուրա-
քանչյուր նոր առաջարկությանը ժամանակին ընթացք տալը, նրա կենսագործ-
ման համար անհրաժեշտ պայմաններ ստեղծելը ավելի են բարձրացնում ար-
տադրության մեջ աշխատողների ակտիվությունը, նրանց ուժերը մոբիլիզաց-
նում պետական առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Ար-
տադրության տեխնոլոգիայի կատարելագործման, նոր տեխնիկայի արմատա-
վորման հարցերը միշտ գտնվում են դեպոյի պարտիական կազմակերպության
ուշադրության կենտրոնում։

Սակայն պետք է խոստովանել, որ Լենինական քաղաքի ոչ բոլոր պար-
տիական կազմակերպություններն են լրջորեն զբաղվում կոմունիստների քըն-
նադատական դիտողությունների ու առաջարկությունների կենսագործման
հարցով։ Հացի առաջին և երկրորդ գործարաններում խախտում են տեխնոլո-
գիական պրոցեսները, ցածր է արտադրանքի որակը, կոմունիստներից ոմանք
խախտում են աշխատանքային կարգապահությունը։ Այս և բազմաթիվ հարցերի
մասին կոմունիստները ասել են իրենց քննադատական խոսքը, ահազանգել
են պարտբյուրոներին, բայց պարտբյուրոները գործնական հետևություններ
չեն արել։

Արդտոի, սննդտոի, ճաշարանների տրեստի, երկաթգծի օրս-ի Լենինա-
կանի ֆիլիալի սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովնե-
րում կոմունիստները շատ անգամ են քննադատել պարտբյուրոներին և նրանց
քարտուղարներին, տնտեսական ղեկավարներին այն բանի համար, որ նրանք
անբավարար են զբաղվում սովետական կուլտուրական առևտրի կազմակերպ-
ման, ֆոնդերի իրացման, կադրերի դաստիարակության հարցերով։ Այստեղ
ոչ միայն չեն ունկնդրում ներքևից եկող ձայնին, այլև չեն ապահովում հաշ-
վետու-ընտրական ժողովներում ընդունված որոշումների կատարումը։

Ճաշարանների տրեստի պարտիական կազմակերպության ժողովներից
մեկում կոմունիստները պարտբյուրոյին ու նրա քարտուղար ընկ. Լ. Կարա-
պետյանին քննադատեցին կադրերի ընտրության, տեղաբաշխման գործով ան-
բավարար զբաղվելու, սովետական առևտրին խորթ բարքերի դեմ թույլ պայ-
քար ծավալելու համար։ Բայց պարտբյուրոն ձեռնամուխ չի եղել կոմունիստ-
ների առաջարկությունների կենսագործմանը։ Միայն վերջին մեկ տարում ար-
ձանագրվել է առևտրի կանոնների խախտման մոտ 200 դեպք։

Գլավտորգաշյոժդայի Լենինականի բազայի առանձին կոմունիստներ
իրենց ելույթներում բազմիցս ահազանգել են այն մասին, որ վատ հիմքերի
վրա է դրված սոցիալիստական սեփականության պահպանության գործը։
Բազայի կառավարիչ Ա. Հարությունյանը փոխանակ դատական-դատախազա-
կան օրգանների միջոցով, օրենքի ամբողջ ուժով պատժի հանցավորներին,
հանդես է բերում ներողամտություն, հնարավորություն է տալիս, որ համա-
ժողովրդական բարիքը խժռող անձինք հետագայում զանազան միջոցներով
լրացնեն պակասորդը և աշխատանքի անցնեն առևտրական այլ հիմնարկնե-
րում։ Դրա հետևանքը եղել է այն, որ վերջին մեկ տարում հափշտակում-
ների գումարը հասել է ավելի քան 131 հազար ռուբլու։ Այս ամենին տեղյակ
է եղել պարտբյուրոյի քարտուղար Հ. Հարությունյանը, բայց գործնական մի-
ջոցների չի դիմել, հաշտվել է այդ աննորմալ երևույթների հետ։

Պարտիայի յուրաքանչյուր անդամ, առավել ևս պարտկազմակերպության
քարտուղարը, պետք է լինի պարտիական որոշումների կատարման համար



ակտիվ մարտնչող։ «Պարտիայի անդամի համար,— ասված է ՍՄԿՊ Կանոնա-
դրության մեջ,— բավական չէ միայն պարտիական որոշումներին համաձայն
լինելը, պարտիայի անդամը պարտավոր է պայքարել այդ որոշումները կեն-
սագործելու համար»։ Այս պահանջն անտեսել են որոշ կազմակերպություննե-
րի ղեկավարներ։

Կոմունիստական պարտիան մասսաներին և իր անդամներին դաստիա-
րակում է բարձր պահանջկոտության, թերությունների նկատմամբ անհաշտե-
լիության ոգով։ Չհաշտվելով թերությունների հետ և ծավալելով սկզբունքային
քննադատություն ու ինքնաքննադատություն, կոմունիստները հաղթահա-
րում են շատ դժվարություններ և հասնում տնտեսական-պարտիական խնդիր-
ների կատարմանը։ Անտարբերությունը կոմունիստների քննադատական դի-
տողությունների նկատմամբ, կամ նրանց ձևական ընդունումը քննադատու-
թյան յուրատեսակ ճնշում է, որը միշտ էլ դատապարտվել է պարտիայի
կողմից։

Սկզբնական պարտիական կազմակերպությունների բյուրոներն ու քար-
տուղարները, տնտեսական ու սովետական կազմակերպությունների ղեկավար-
ները պետք է ուշի-ուշով հաշվի առնեն, ուսումնասիրեն և ապահովեն կոմու-
նիստների քննադատական դիտողությունների ու արժեքավոր առաջարկու-
թյունների կենսագործումը։ Կոմունիստների քննադատական դիտողություննե-
րի և դրանց հիման վրա ընդունված որոշումների կենսագործումը յուրաքան-
չյուր ղեկավար աշխատողի, յուրաքանչյուր կոմունիստի անմիջական պար-
տականությունն է։

Պետք է միշտ հիշել, որ կոմունիստների քննադատական դիտողություն-
ների և առաջարկությունների կենսագործումը բարձրացնում է պարտիայի բո-
լոր անդամների, մեր կադրերի ակտիվությունը, նրանց նախաձեռնությունն
ու ինքնագործունեությունը, նրանց դաստիարակում է ընդունված որոշումների
կատարման նկատմամբ բարձր պատասխանատվության, սկզբունքայնության
ու թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով։ Այս ամենը
նպաստում են պետական ու պարտիական կարգապահության ամրապնդմանը,
մեր աշխատանքում տեղ գտած թերությունների արագ վերացմանը։

# ՀԵԳԵԼԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ

Ռևոլյուցիոն հեղաշրջում կատարելով փիլիսոփայության մեջ, մարքսիզմի կլասիկները քննադատորեն յուրացրին այն ողջ լավագույնը, ինչ ստեղծել էր մարդկային միտքը հատկապես փիլիսոփայության, քաղաքատնտեսության և սոցիալիզմի բնագավառում։ Հայտնի է, որ Լենինն ընդգծում է գերմանական կլասիկ փիլիսոփայության և, առաջին հերթին, հեգելյան դիալեկտիկայի դերը մարքսիստական փիլիսոփայության առաջացման գործում։ Առանց Հեգելի փիլիսոփայության, ասել է Էնգելսը, «երբեք չէր ստեղծվի գերմանական գիտական սոցիալիզմը, միակ գիտական սոցիալիզմը, որը երբևիցե գոյություն է ունեցել» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, ռուս., Մ., 1949, էջ 604)։ Լենինը հաճույքով է բերում Գերցենի խոսքերն այն մասին, որ Հեգելի դիալեկտիկան ռևոլյուցիայի հանրահաշիվն է (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 13)։

Հեգելի փիլիսոփայության ճիշտ ըմբռնումը կարևոր նշանակություն ունի մարքսիզմի յուրացման համար։

***

Իր արգասավոր գործունեության շուրջ 25 տարվա ընթացքում Հեգելը (1770—1831) տվել է այնպիսի աշխատություններ, որոնք խոշոր ազդեցություն են ունեցել հետագա շրջանի փիլիսոփաների վրա։ Հեգելից հետո չի կարելի պատկերացնել փիլիսոփայության պատմության որևէ դասընթաց, որտեղ նրա փիլիսոփայությունը մի նոր էջ չհամարվի փիլիսոփայական մտքի պատմության մեջ։ Այդ խոստովանում են ինչպես Հեգելի հետևորդները, այնպես էլ նրա քննադատները։

Լինելով արտակարգ էրուդիցիայի տեր փիլիսոփա, Հեգելը քննադատորեն վերանայեց նախորդ ողջ փիլիսոփայությունը՝ սկսած միլեթական դպրոցի ներկայացուցիչ Թալեսի ուսմունքից և վերջացրած իր ժամանակակից Շելլինգի փիլիսոփայությամբ։ Նա մարտահրավեր նետեց մետաֆիզիկային փիլիսոփայության պատմության բոլոր փուլերում։ Ի հակադրություն մետաֆիզիկայի, Հեգելը մշակեց դիալեկտիկական մեթոդ։ Սակայն, հասնելով դիալեկտիկական մեթոդի հաղթանակին իր փիլիսոփայության իդեալիստական սիստեմի հիմքի վրա, Հեգելն ընկավ անլուծելի հակասության մեջ։ Նրա դիալեկտիկան՝ ռևոլյուցիոն մեթոդը, կաշկանդվեց իր իսկ փիլիսոփայության իդեալիստական սիստեմով, որն, ըստ էության, մետաֆիզիկական բնույթի էր։ Մինչև իր կյանքի վերջն էլ Հեգելը չկարողացավ հաղթահարել այդ հակասությունը։



Այդ, իհարկե, չի կարելի բացատրել միայն Հեգելի անձնավորության թույլ և ուժեղ հակումներով։ Հեգելն իր ժամանակի զավակն էր, նրա փիլիսոփայությունը՝ ժամանակաշրջանի ծնունդը, այն իրականության ցայտուն արտահայտությունը, որտեղ ապրել և ստեղծագործել է մեծ փիլիսոփան։ Գերմանիան XVIII դարի վերջում մի երկիր էր, ուր «ամեն ինչ նեխել էր, երերում էր, պատրաստ էր փուլ գալ, և նույնիսկ չէր կարելի բարեբար փոփոխության հույս ունենալ, որովհետև ազգի մեջ չկար մի այնպիսի ուժ, որը կարողանար սրբել-տանել դարն ապրած հիմնարկների նեխող դիակները... Բայց հանկարծ ֆրանսիական ռևոլյուցիան որոտի սլաքի նման հարվածեց այդ քաոսին, որ Գերմանիա էր կոչվում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 2, ռուս. երկրորդ հրատ., էջ 562)։

Մեծ էր ֆրանսիական ռևոլյուցիայի ազդեցությունը պրուսական պետությունների վրա։ Ֆրանսիական ռևոլյուցիոն բանակը մտավ Գերմանիա՝ իր դրոշակի վրա ունենալով ազատության և հավասարության բուրժուական լոզունգները։ Ֆրանսիական ռևոլյուցիայի նկատմամբ սկզբնական խանդավառությանը Գերմանիայում հաջորդեց արիստոկրատական դժգոհությունը։ Երբ ռևոլյուցիայի հետևանքով պրուսական ազնվականությունը մասամբ զրկվեց իր արտոնություններից, այն նույն մարդիկ, որոնք Գերմանիայում հանդես էին եկել որպես ռևոլյուցիայի խանդավառ բարեկամներ, դարձան նրա կատաղի թշնամիները։ Ռևոլյուցիայի այս փոթորկոտ ժամանակաշրջանի հակասական տենդենցներն իրենց արտացոլումն են գտել հեգելյան փիլիսոփայության մեջ։

Հեգելի ողջ փիլիսոփայությունն իրենից ներկայացնում է երկու հակադիր տենդենցների պայքարի մարմնացում, որն արտահայտված է նրա իդեալիստական փիլիսոփայական սիստեմի և դիալեկտիկական մեթոդի հակասական միասնությամբ։ Այդ փիլիսոփայության ռեակցիոն կողմը իդեալիստական սիստեմն է իր մետաֆիզիկական սահմանափակությամբ, առաջադեմը՝ դիալեկտիկական մեթոդը, զարգացման վերաբերյալ «ռացիոնալ հատիկով», որից անխուսափելիորեն բխում են ռևոլյուցիոն եզրակացություններ։

Հեգելի փիլիսոփայությունը օբյեկտիվ իդեալիզմի փիլիսոփայությունն է։ Հեգելի կարծիքով, գոյություն ունեցող ամեն ինչի հիմքում ընկած է բացարձակ իդեան, որն իբր թե նախորդում է աշխարհի գոյությանը։ Իրականության բոլոր երևույթների արարիչը Հեգելը համարում է միտքը, մտածողությունը, գիտակցությունը, իդեան, որն իդեալիստ փիլիսոփաների համար, վերջին հաշվով, աստծո փիլիսոփայական արտահայտությունն է։

Հեգելի փիլիսոփայական սիստեմը բաղկացած է երեք բաժնից՝ տրամաբանությունից, բնության փիլիսոփայությունից և ոգու փիլիսոփայությունից, որոնք, հեղինակի մտահղացման համաձայն, բացարձակ իդեայի զարգացման երեք հաջորդական աստիճաններն են։ Զարգացման սկզբնական շրջանում բացարձակ իդեան հանդես է գալիս մաքուր մտքի ոլորտներում, այն զարգանում է հասկացության, դատողության, մտահանգման ձևով։ Հակասական զարգացման հետևանքով, ինքն իրեն բացասելու շնորհիվ իդեան, Հեգելի ըմբռնմամբ, վերածվում է իր հակադրության՝ բնության երևույթների։ Բնության բոլոր առարկաները, Հեգելի փիլիսոփայության համաձայն, իդեայի զարգացման արգասիքն են։ Զարգացումը դիտելով որպես հավիտենական հակասական պրոցես, Հեգելը գտնում է, որ բնության երևույթների տեսքով

*զարգանալով, իդեան նորից բացասվում է ինքն իր կողմից և բացասման բացասումի շնորհիվ կրկին վերածվում է իդեայի: Բայց այս վերջինս ոչ թե նախկին իդեան է, այլ զարգացման մի նոր աստիճանի բարձրացված իդեա՝ բացարձակ ոգի: Լենինը դիպուկ նկատում է, որ բացարձակ իդեան իդեալիստ Հեգելի մտահնարանքն է:*

*Հեգելի փիլիսոփայության ռեվոլյուցիոն կողմը՝ դիալեկտիկան, մշակված է «Տրամաբանության գիտությունը» աշխատության մեջ, որտեղ, թեև իդեալիզմի դիրքերից, մշակված են դիալեկտիկայի մի շարք կարևորագույն օրենքներն ու կատեգորիաները:*

*Հատկապես նշանակալից է այն, որ Հեգելն առաջինը խորամուխ եղավ դիալեկտիկայի երեք կարևոր օրենքների՝ քանակի և որակի փոխարկման, հակադրությունների պայքարի ու փոխադարձ ներթափանցման և բացասման բացասումի օրենքների բազմակողմանի ուսումնասիրությանը: Իհարկե, այս դեպքում ևս այս օրենքները Հեգելը զարգացրեց, Էնգելսի խոսքերով ասած, իր իդեալիստական մաներայով, որպես լոկ մտածողության օրենքներ:*

*Քանակական փոփոխությունների անցումը որակական փոփոխությունների և հակառակը, օբյեկտիվ իրականության մեջ գործող կարևորագույն օրինաչափություններից մեկն է: Սակայն Հեգելի մոտ քանակը և որակը հանդես են գալիս լոկ որպես հասկացություններ: Քանակի անցումը որակին նա ներկայացնում է որպես բացարձակ իդեայի զարգացման ձև: Ինչպես և դիալեկտիկայի մյուս օրենքները, քանակի անցումը որակի Հեգելը համարում է մտածողության օրենք և հայտարարում, որ բնությունը պետք է ենթարկվի այդ օրենքին՝ որպես մտածողության օրենքի, հետևաբար աշխարհը պետք է ենթարկվի տրամաբանության հեգելյան սիստեմին: Պատահական չէ, որ Լենինը քանակը որակի փոխանցվելու հեգելյան ուսմունքի որոշ տեղեր համարում է այնքան խրթին, որ հնարավոր չէ որևէ բան հասկանալ: Միևնույն ժամանակ պետք է նշել, որ գիտության և բնության տարբեր բնագավառներից Հեգելի բերած մի շարք օրինակներ, նրա կամքից անկախ, ցույց են տալիս, որ հենց օբյեկտիվ իրականության մեջ է տեղի ունենում զարգացումը՝ որպես աննկատ, քանակական փոփոխություններից թռիչքաձև անցում արմատական, որակական փոփոխությունների:*

*Հեգելը բացարձակ իդեայի զարգացումը դիտում է որպես առաջընթաց շարժում, որը տեղի է ունենում բացասման բացասումի միջոցով: Բացարձակ իդեան՝ մաքուր մտքի ոլորտներում զարգանալով, բացասվում և վերածվում է իր հակադրության՝ բնության երևույթների, իսկ վերջիններիս բացասման հետևանքով էլ իդեան վերածվում է բացարձակ ոգու, որը բացարձակ իդեայի զարգացման բարձրագույն աստիճանն է: Դրականը այստեղ այն է, որ Հեգելը շարժումը չի դիտում որպես պարզ, ուղղագիծ փոփոխություն, այլ քննում է որպես վերընթաց գծով ընթացող զարգացում, որտեղ բացասման հետևանքով զարգացման յուրաքանչյուր փուլ նախկինի համեմատությամբ որակական մի նոր աստիճանի է բարձրացված: Բայց այս դեպքում ևս Հեգելը, հավատարիմ իր փիլիսոփայության իդեալիստական ելակետին, միստիկական քողով է վարագուրում բացասման բացասումի օրենքը, այն կտրում է իր օբյեկտիվ հիմքից՝ իրականությունից և ներկայացնում որպես լոկ իդեայի զարգացման օրենք:*

*Մարքսիզմի կլասիկները ցույց են տվել, որ բացասման բացասումի օրեն-*



*քը ևս, նախ և առաջ, օբյեկտիվ իրականության զարգացման հիմնական օրենքներից է և մտածողության օրենք է այնքանով, որքանով արտացոլում է մարդու գիտակցությունից և կամքից անկախ գործող համապատասխան օրինաչափությունը: Էնգելսը նկատում է. «Ըստ էության, դա ամենուրեք և ամեն օր տեղի ունեցող մի վերին աստիճանի հասարակ պրոցեդուրա է, որը յուրաքանչյուր երեխա կարող է հասկանալ, եթե միայն դրա վրայից հեռացվի այն ամբողջ միստիկական հնոտին, որով հին իդեալիստական փիլիսոփայությունը քողարկում էր այն...» («Անտի-Դյուրինգ», Հայպետհրատ, 1952, էջ 174):*

*Զարգացման աղբյուրը Հեգելը տեսնում էր հակադրությունների պայքարի մեջ: «Հակասությունը՝ ահա թե ինչն է իրականում շարժում աշխարհը», գրում է Հեգելը: Միասնականի երկատումն ու նրա հակասական մասերի իմացությունը դիալեկտիկայի էությունն է և, ինչպես Լենինն է նշում, հենց այսպես էլ Հեգելը դնում է հարցը:*

*Հեգելյան դիալեկտիկայի անհետևողականությունը երևան է գալիս նաև դիալեկտիկայի կարևորագույն օրենքի՝ հակադրությունների միասնության և պայքարի օրենքի մեկնաբանության հարցում: Հեգելի կարծիքով, հակադրու-*
*թյունների պայքարը հանգեցնում է հակադրությունների հաշտեցմանը. բարձր*
*ձևը առաջանալով ցածրից՝ նրանում պարփակված հակադրությունների պայ-*
*քարի շնորհիվ, իրենից ներկայացնում է այդ հակադրությունների սինթեզը:*
*Ուստի Էնգելսը շեշտում է, որ իր փիլիսոփայությամբ Հեգելն ավելի շատ*
*հակված էր դեպի պահպանողական կողմը: Մինչդեռ, ինչպես ցույց է տալիս*
*մարքսիստական դիալեկտիկան, հակադրությունների պայքարը զարգացման*
*մշտատև աղբյուրն է, հակադրությունների պայքարի ընթացքում վերանում է*
*հին հակադրամիասնության հակասությունը և նոր հակասությունների բազայի*
*վրա ստեղծվում է նոր հակադրամիասնություն:*

*Ինչպես նախորդ օրենքների, այնպես էլ հակադրությունների փոխադարձ*
*ներթափանցման օրենքի դեպքում Հեգելը գլխիվայր է շրջում իրերի, օբյեկտիվ*
*հարաբերությունների և նրանց մտածական պատկերների միջև եղած փոխ-*
*հարաբերությունները՝ դիալեկտիկական օրինաչափություններին միստիկական*
*բնույթ տալով և դրանք վերագրելով լոկ բացարձակ իդեայի ինքնազարգաց-*
*մանը: Բայց, «եթե մենք շրջենք այդ հարաբերությունը, ապա ամեն ինչ կըն-*
*դունի շատ պարզ տեսք, և իդեալիստական փիլիսոփայության մեջ խիստ*
*խորհրդավոր թվացող դիալեկտիկական օրենքները իսկույն կդառնան պարզ*
*ու պայծառ, ինչպես ցերեկը:*
*Ի դեպ, նա, ով թեկուզ մի փոքր ծանոթ է Հեգելին, գիտե, որ Հեգելը*
*հարյուրավոր տեղերում կարողանում է բերել բնության և պատմության բնա-*
*գավառից վերցրած վերին աստիճանի դիպուկ օրինակներ՝ ի հաստատումն*
*դիալեկտիկական օրենքների» (Ֆ. Էնգելս, «Բնության դիալեկտիկա», Հայպետ-*
*հրատ, 1950, էջ 55—56):*

*Փիլիսոփայության պատմության մեջ Հեգելն առաջինն է, որ ստեղծեց*
*դիալեկտիկական տրամաբանությունը: Հեգելը գտնում է, որ տրամաբանությու-*
*նը լոկ գիտություն չէ մտածողության արտաքին ձևերի մասին, այլ ուսմունք*
*է բոլոր նյութական, բնական և հոգևոր երևույթների զարգացման օրենքների*
*մասին: Տրամաբանությունը, Հեգելի ըմբռնման համաձայն, աշխարհի իմա-*
*ցության պատմության հանրագումարն է, արդյունքը, եզրակացությունը:*

Հայտնի է, որ մինչև Հեգելը կատեգորիաները, այսինքն՝ օբյեկտիվ իրականության իրերի հարաբերությունների մասին մարդու ամենաընդհանուր հասկացությունները քննարկվել են իրարից անջատ, անշարժ վիճակում, մետաֆիզիկորեն։ Մինչդեռ կատեգորիաների դերի ճիշտ ըմբռնումը կարևոր նշանակություն ունի իմացության պրոցեսի համար։ Լենինը նկատում է, որ կատեգորիաները բնությունից մարդու առանձնացման, հետևաբար աշխարհի ճանաչման հիմնական աստիճաններն են, հանգուցային կետերը։ Կատեգորիաները հետազոտելիս Հեգելը ելնում է նրանից, որ կատեգորիաների միջև պետք է գոյություն ունենա անհրաժեշտ կապ։ Դա, իհարկե, դիալեկտիկայի կարևորագույն պահանջներից մեկն է, սակայն Հեգելի կողմից միստիկ ձևով ներկայացված։ Իրոք, կատեգորիաների միջև անհրաժեշտ կապ կա, սակայն այդ հատկանիշը ոչ թե կատեգորիաների ներքին բնույթից է բխում, այլ օբյեկտիվ իրականության իրերի և առարկաների միջև եղած անհրաժեշտ կապերի լոկ արտացոլումն է մարդու գիտակցության մեջ։

Հանդես գալով աբստրակտ մտածողության դերի ջերմեռանդ պաշտպանի դերում, Հեգելը քննադատում է Կանտի ագնոստիցիզմը։ Էնգելսը և Լենինը ընդգծել են Հեգելի դրական դերը կանտյան ագնոստիցիզմի քննադատման գործում։ Նշելով այն, որ Հեգելը ըստ էության Կանտի դեմ ճիշտ է, Լենինը ձևակերպում է իմացության դիալեկտիկան։ «Կենդանի հայեցողությունից դեպի աբստրակտ մտածողությունը և նրանից դեպի պրակտիկան,— այսպիսին է ճշմարտության ճանաչման, օբյեկտիվ ռեալականության իմացության դիալեկտիկական ուղին» («Փիլիսոփայական տետրեր», ռուս. լեզվով, Մ., 1947, էջ 146—147)։

Միևնույն ժամանակ Լենինը նշում է այն կարևոր տարբերությունը, որ գոյություն ունի հեգելյան իդեալիզմի և մատերիալիզմի միջև ագնոստիցիզմի գնահատման հարցում։ Կանտը նվաստացնում է գիտության դերը հավատքին տեղ տալու համար և կանգնում է ագնոստիցիզմի պաշտպանության դիրքերում։ Հեգելը բարձրացնում է գիտելիքի դերը, հավատացնելով, որ գիտելիքը աստծուն գիտենալն է։ Այլ կերպ ասած, Հեգելը քննադատում է կանտյան իդեալիզմը աջից, հետևողական իդեալիզմի դիրքերից։ Ագնոստիցիզմը մատերիալիստը քննադատում է գիտության դիրքերից, գտնելով, որ գիտելիքը մատերիայի, բնության, օբյեկտիվ իրականության երևույթների կապերի և հարաբերությունների, զարգացման օրինաչափությունների իմացությունն է։ Մատերիալիստորեն վերամշակելով Հեգելին, Լենինը գտնում է, որ նրա տրամաբանական ուսմունքի իսկական իմաստը, նշանակությունն ու դերը այն է, որ նա հասկացությունների դիալեկտիկայի մեջ կռահեց օբյեկտիվ իրականության զարգացման դիալեկտիկան, այն, որ արդեն ամենապարզ հասկացության առաջացումը, հեգելյան տրամաբանության համաձայն, ցույց է տալիս բնության ավելի ու ավելի խոր, օբյեկտիվ կապերի իմացությունը մարդու կողմից։

Հեգելը իմացությունը դիտում է որպես երևույթից դեպի էությունը խորացող պրոցես։ «Տրամաբանության գիտությունը» աշխատության էջերում Հեգելն ունի մի շարք կարևոր մտքեր էության և երևույթի դիալեկտիկայի մասին, որոնք Լենինի հավանությանն են արժանացել։ Լենինը հատկապես ընդգծում է Հեգելի այն միտքը, որ «երևույթը ոչ թե էությունից զրկված մի ինչ-որ բան է, այլ էության արտահայտությունն է» (Հեգել, Երկեր, հ. 6, էջ 22)։



Էության կատեգորիայի հետ սերտ առնչություն ունի օրենքի կատեգորիան։ Հեգելի կարծիքով օրենքը և էությունը միևնույն կարգի, միևնույն աստիճանի հասկացություններ են և արտահայտում են մարդու իմացության խորացումը շրջապատող աշխարհի ճանաչման պրոցեսում։ Հեգելի կողմից օրենքի սահմանումը՝ որպես առարկաների մնայուն, հաստատուն կողմերի արտացոլումը և հատկապես որպես երևույթների հանգիստ արտացոլումը Լենինը անվանում է հիանալի դիպուկ, մատերիալիստական սահմանում։

Հասկացությունը, Հեգելի կարծիքով, արտացոլում է երևույթների էական, անհրաժեշտ կապերը։ Հեգելը հատուկ ուշադրություն է դարձնում հասկացության, ինչպես նաև մտքի մյուս ձևերի դիալեկտիկայի վրա։ Բայց այս դեպքում ևս մտքի ձևերի դիալեկտիկան Հեգելը զարգացնում է արատավոր հիմքից ելնելով՝ օբյեկտիվ իդեալիզմի բազայի վրա։ Հասկացությունը, Հեգելի կարծիքով, կեցության և էության հիմքն է, իսկ «կեցությունը և էությունը.... հասկացության իրականացման մոմենտները» (հ. 6, էջ 5)։

Միանգամայն պարզ է, որ Հեգելը գլխիվայր է շրջում հասկացության և օբյեկտիվ իրականության փոխհարաբերությունը։ Ուստի Լենինն առաջարկում է շրջել հեգելյան այդ դրույթը։ «Փիլիսոփայական տետրեր»-ում այդ մասին կարդում ենք. «Շրջել. հասկացությունը մատերիայի բարձրագույն արդյունքի՝ ուղեղի բարձրագույն արդյունքն է» (էջ 143)։

Հասկացությունը, ինչպես և մտքի մյուս ձևերը, Հեգելը դիտում է փոխադարձ կապի մեջ, շարժման պրոցեսում, որով և Հեգելի տրամաբանությունը արմատապես տարբերվում է մետաֆիզիկական տրամաբանությունից։ Հասկացությունը, դատողությունը, մտահանգումը Հեգելի կարծիքով իրենցից ներկայացնում են եզակիի, մասնավորի և համընդհանուրի դիալեկտիկական միասնությունը։ Դա նոր խոսք էր իմացաբանության մեջ։ Սակայն, ճիշտ նկատելով եզակիի, մասնավորի և համընդհանուրի դիալեկտիկական միասնությունը, Հեգելը որպես իդեալիստ չկարողացավ մինչև վերջ գիտականորեն բացատրել դիալեկտիկական այդ կարևորագույն օրինաչափությունը։ Նա չհասկացավ, որ մտքի ձևերի մեջ եզակիի, մասնավորի և համընդհանուրի միասնությունը պայմանավորված է նրանով, որ ռեալ, օբյեկտիվ, մեր գիտակցությունից անկախ իրականության մեջ «առանձինը գոյություն չունի այլ կերպ, քան այն կապակցությամբ, որը տանում է դեպի ընդհանուրը։ Ընդհանուրը գոյություն ունի միայն առանձինում, առանձինի միջոցով։ Ամեն մի առանձին (այսպես թե այնպես) ընդհանուր է։ Ամեն մի ընդհանուր առանձինի (մասնիկը կամ կողմը կամ էությունը) է» (Վ. Ի. Լենին, «Մարքս, Էնգելս, մարքսիզմ», Հայպետհրատ, 1950, էջ 385)։ Կանգնած լինելով հետևողական իդեալիզմի դիրքերում, չհասկանալով, որ եզակիի, մասնավորի և համընդհանուրի միասնությունը մտքի ձևերի մեջ լոկ արտացոլումն է այն հարաբերությունների, որ գոյություն ունեն մարդու գիտակցությունից անկախ, Հեգելը միստիկական ուժ վերագրեց ընդհանուրին։ Նրա կարծիքով ընդհանուրն է հանդիսանում մասնավորի ու եզակիի ստեղծողը, արարիչը։

Դիալեկտիկական տրամաբանության բնագավառում Հեգելի մեծագույն ծառայությունն այն է, որ նա տվեց մտքի ձևերի նոր դասակարգում՝ ելնելով իմացության պրոցեսում նրանց ունեցած դերից։ Մտքի ձևերը Հեգելը բխեցրեց մեկը մյուսից, ավելի բարձր ձևերը զարգացրեց ստորիններից, ցույց տվեց, թե իմացության տրամաբանական ու պատմական զարգացման ընթաց-

քում մտքի այս կամ այն ձևը ինչպես է ընդարձակում մարդկային իմացու-
թյան սահմանները շրջապատող իրականության մասին։ Այդ պատճառով էլ
Հեգելի մոտ տրամաբանությունը հանդես չի գալիս որպես սոսկ գիտություն
մտածողության ձևերի և օրենքների մասին։ Իր ուսումնասիրման օբյեկտի
տեսակետից Հեգելի տրամաբանությունը արմատապես տարբերվում է ձևա-
կան տրամաբանությունից։ Հեգելյան տրամաբանությունը համընկնում է իմա-
ցաբանության հետ, որ արժանացել է Լենինի հատուկ ուշադրությանն ու հա-
վանությանը։ Լենինը նկատում է, որ Հեգելի «Տրամաբանության գիտությունը»
աշխատության «Սուբյեկտիվ տրամաբանություն» բաժնում «հանճարեղորեն
ցույց է տրված... տրամաբանության և իմացության համընկնումը» («Փիլի-
սոփայական տետրեր», էջ 165)։ Միևնույն ժամանակ Հեգելի մոտ իմացա-
բանությունը համընկնում է դիալեկտիկայի հետ։ Մարքսիզմ-լենինիզմի կլա-
սիկները ոչ միայն հավանություն են տվել Հեգելի այդ տեսակետին, այլև
այն զարգացրել են մատերիալիզմի հիմքի վրա։ «Դիալեկտիկայի հարցի շուր-
ջը» նշանավոր ֆրագմենտում Լենինը գրում է, որ «հենց դիալեկտիկան է
(Հեգելի և) մարքսիզմի իմացաբանությունը»։ Մարքսը, Լենինի պնդմամբ,
վերցնելով Հեգելից տրամաբանության, դիալեկտիկայի, իմացաբանության
համընկնման գաղափարը, զարգացրել և կիրառել է այն «Կապիտալ»-ում քա-
ղաքատնտեսության նկատմամբ։ Ուստի Լենինը գտնում է, որ հարկավոր չէ
երեք բառ. տրամաբանությունը (խոսքը վերաբերում է դիալեկտիկական
տրամաբանությանը), դիալեկտիկան և իմացաբանությունը միևնույն բանն են։

Չնայած դիալեկտիկայի կատեգորիաների, մտածողության ձևերի և
օրենքների մասին Հեգելի ողջ ուսմունքը խարսխվում է իդեալիզմի բազայի
վրա, այնուամենայնիվ հեգելյան դիալեկտիկան հակասության մեջ գտնվե-
լով իդեալիզմի հետ, չի կարողանում միշտ պարփակված մնալ իդեալիզմի
շղարշով և հանդես է գալիս որպես օբյեկտիվ իրականության իրերի, երև-
վույթների դիալեկտիկական զարգացման արտացոլումը մարդու գիտակցու-
թյան մեջ։ Լենինը գտնում է, որ Հեգելը հանճարեղորեն կռահեց, թե «տրա-
մաբանության ձևերն ու օրենքները դատարկ թաղանթ չեն, այլ օբյեկտիվ աշ-
խարհի արտացոլումը» («Փիլիսոփայական տետրեր», էջ 155)։

Այսպիսով, Հեգելի «Տրամաբանության գիտությունը» աշխատության մեջ
իդեալիստական հիմքի վրա մշակված են դիալեկտիկայի կարևորագույն կա-
տեգորիաները և օրենքները։ Լենինը հատկապես ընդգծում է, որ Հեգելի տրա-
մաբանության արդյունքը, հանրագումարը, վերջին խոսքը, էությունը դիալեկ-
տիկական մեթոդն է, և այդ համարում է չափազանց հիանալի։

Ինչպես Էնգելսն է բնորոշում, Հեգելի փիլիսոփայության մեծագույն ծա-
ռայությունն այն է, որ նա վերադարձավ դիալեկտիկային՝ որպես մտածողու-
թյան բարձրագույն ձևի, և առաջին անգամ բնական, պատմական և հոգևոր
ամբողջ աշխարհը ներկայացրեց որպես դիալեկտիկական զարգացման
պրոցես։

Բնության երևույթների կապակցությունները, զարգացումը ուսումնասի-
րելիս Հեգելը որոշ դեպքերում, անգամ Կանտի համեմատությամբ, հետա-
դարձ քայլ է կատարում։ «Բնության փիլիսոփայությունը» աշխատության մեջ
Հեգելը բնությունը ներկայացնում է որպես մի մշտապես ինքնահավասար
ամբողջություն, որը շարժվում է միևնույն նեղ շրջանակների մեջ։ Հեգելի
կարծիքով բնության երևույթները գտնվում են փոխգոյակցության մեջ, ծա-



վալվում են տարածության մեջ, բայց ոչ մի զարգացում չեն ապրում
ժամանակի ընթացքում։ Բնության երևույթների նկատմամբ Հեգելի այս հա-
յացքները Էնգելսը բացատրում է ոչ միայն բնագիտության այն ժամանակվա
ընդհանուր վիճակով, այլև այն բանով, որ պատմական առաջընթաց զարգա-
ցումը Հեգելը միայն «ոգուն» էր վերագրում։

Միայն մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն էին, որ հաղթահարելով հեգելյան
դիալեկտիկայի անհետևողականությունը, ստեղծեցին գիտական ուսմունք
զարգացման մասին, ցույց տվեցին, որ հակադրությունների պայքարի մի-
ջոցով, վերընթաց գծով տեղի ունեցող զարգացումը հատուկ է ոչ միայն
մարդկային մտածողությանը, այլև բնության և հասարակության բոլոր երև-
վույթներին։ Լենինը նշում է, որ «մեր ժամանակում զարգացման, էվոլյուցիա-
յի իդեան գրեթե ամբողջապես թափանցել է հասարակական գիտակցության
մեջ, բայց այլ ճանապարհներով, ոչ Հեգելի փիլիսոփայության միջոցով»
(Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 54)։ Այլ կերպ չէր էլ կարող լինել։ Ինչքան
էլ առաջադեմ քայլ լինի Հեգելի դիալեկտիկան նրա նախորդների ուսմունքի
համեմատ, որքան էլ մեծ լինի Հեգելի դերը դիալեկտիկայի՝ որպես զարգաց-
ման մասին ուսմունքի մշակման գործում, այնուամենայնիվ, պետք է ընդ-
գծել, որ Հեգելը չէր էլ կարող ստեղծել մինչև վերջ հետևողական, գիտական
ուսմունք զարգացման մասին հենց այն պատճառով, որ իր դիալեկտիկան
նա խարսխում էր արատավոր հիմքի վրա՝ իդեալիզմի վրա։ Ահա թե ինչու
մարքսիզմի կլասիկներն անհրաժեշտ համարեցին փրկել գիտակցական դիա-
լեկտիկան (իդեալիզմով և այդ թվում հեգելականությամբ խորտակվելուց) և
այն փոխադրել բնության մատերիալիստական ըմբռնման բնագավառը
(տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 52)։

Հեգելի փիլիսոփայական սիստեմում ոգին հանդես է գալիս որպես
մտածողության և բնության սինթեզը։ Բացարձակ իդեայի զարգացման այս
երրորդ փուլին նվիրված «Ոգու փիլիսոփայությունը» աշխատության մեջ Հե-
գելը ոգին բնորոշում է «ոչ միայն որպես ինքնին աննյութական, այլև որպես
բնության համընդհանուր աննյութականություն և միևնույն ժամանակ որպես
սուբստանց, որպես մտածողության և կեցության միասնություն» (հ. 3, ռուս.
հրատ, էջ 58)։

«Ոգու փիլիսոփայություն» աշխատության մեջ շարադրված են Հեգելի
հայացքները պատմության, մարդու հասարակական կյանքի, անթրոպոլոգիայի
և հոգեբանության վերաբերյալ։ Այստեղ ևս Հեգելը հանդես է գալիս որպես
դիալեկտիկ և, ինչպես Էնգելսն է նկատում, «Հեգելը պատմության ըմբռնումն
ազատեց մետաֆիզիկայից, նա այն դարձրեց դիալեկտիկական, բայց պատ-
մության ըմբռնումը իրեն՝ Հեգելի կողմից ըստ էության իդեալիստական էր»
(«Անտի-Դյուրինգ», էջ 33)։

Պետությունը Հեգելը դիտում է որպես «բարոյական գաղափարի իրա-
կանություն»։ «Պետությունը ատվածային գաղափար է»,— ասում է Հեգելը։
Պարզ է, որ նման մեկնաբանությունը ոչ մի ընդհանուր բան չունի հասարա-
կության պատմության, պետության առաջացման և դերի գիտական բացա-
տրության հետ։ Քննադատելով Հեգելին, Էնգելսը նշում է, որ պետությունը
ոչ թե «բանականության պատկերն ու իրականությունն է», այլ հասարակու-
թյան արդյունքն է զարգացման որոշ աստիճանի վրա։ Պատմության մատե-
րիալիստական ըմբռնման համաձայն, պետությունը առաջ է եկել որպես դա-

սակարգային հակասությունների անհաշտելիության արդյունքը։ Անտագոնիստական դասակարգերի բաժանված հասարակություններում պետությունը մի օրգան է, որի միջոցով մի դասակարգ ճնշում է մյուսին, պաշտպանում և օրինականացնում է իր դասակարգային տիրապետությունը։

Հեգելյան փիլիսոփայության հակասական բնույթը ցայտուն կերպով հանդես է գալիս նաև նրա «Պատմության փիլիսոփայությունը» աշխատության մեջ։ Մի կողմից, ելնելով իր դիալեկտիկական մեթոդից, Հեգելը փորձում է տալ հասարակության զարգացման հակասալի ընթացքը, մյուս կողմից էլ հասարակության պատմությունը նա կտրում է իր օբյեկտիվ հիմքից, այն ներկայացնում է որպես բացարձակ իդեայի զարգացման արդյունք։ Հասարակության զարգացման պատմությունը Հեգելը դիտում է որպես վերընթաց մի պրոցես, որտեղ զարգացման նախորդ փուլը ներքին անհրաժեշտությամբ պայմանավորում է հաջորդ փուլի երևան գալը։

Սակայն Հեգելի «Պատմության փիլիսոփայությունը», ինչպես և ընդհանրապես պատմության հեգելյան ըմբռնումը, հիմնականում ներծծված է աստծո, կրոնի, իդեալիզմի գաղափարով։ Ընդգծելով Հեգելի՝ հասարակության պատմության բնագավառին վերաբերող հարցադրումներից մի քանիսի արժեքավոր լինելը, Լենինը նշում է, որ հասարակության պատմության հեգելյան ըմբռնումը, Հեգելի պատմության փիլիսոփայությունն ամբողջությամբ վերցրած շատ ավելի պակաս արժեք է ներկայացնում, քան Հեգելի ուսմունքի մյուս բաժինները։ Այս բնագավառում Հեգելը շատ ավելի է հնացել։ Նրա մոտ մարդկային պատմությունն աստվածային բանականության մարմնացումն է։ Նա անհիմն կերպով բացասում էր Արևելքի ժողովուրդների փիլիսոփայությունը։

Հասարակության մասին ուսմունքը առաջին անգամ դարձավ գիտություն մարքսիզմի կլասիկների շնորհիվ։ Քննելով հասարակությունը նրա առաջացման ու զարգացման պատմական պայմանների տեսանկյունից, Մարքսը և Էնգելսը ցույց են տվել, որ հասարակության զարգացումը, մի հասարակարգից մյուս հասարակարգին անցումը պայմանավորված է նյութական բարիքների արտադրության եղանակների զարգացմամբ։

Իր փիլիսոփայական սիստեմով Հեգելը արդարացնում էր գոյություն ունեցող պրուսական կարգերը՝ խիստ չափավոր բարելավումներով։ Բացարձակ իդեայի իրականացումը ի վերջո հանգում է Ֆրիդրիխ-Վիլհելմ երրորդի դասային ներկայացուցչությամբ սահմանափակված միապետությանը, որը բխում էր Գերմանիայի տվյալ ժամանակաշրջանի մանր բուրժուական հարաբերություններից և ազնվականության պահանջներից։ Ահա թե ինչու «Հեգելի սիստեմը.... մի որոշ չափով նույնիսկ բարձրացվում է արքայական-պրուսական պետական փիլիսոփայության աստիճանի» (Ֆ. Էնգելս, «Լ. Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը», Հայպետհրատ, 1948, էջ 8)։ Հակասելով իր իսկ սեփական սկզբունքին՝ դիալեկտիկական մեթոդին, Հեգելը հասարակության զարգացման վերջնական ձևը տեսնում էր պրուսական միապետության հասարակական սիստեմի մեջ, իսկ իր սեփական փիլիսոփայությունն էլ դիտում էր որպես ճշմարտությունների ավարտուն սիստեմ, գիտությունների գիտություն։

Հեգելյան փիլիսոփայական սիստեմի դոգմատիկ բովանդակության դեմ ըմբոստացավ դոգմատիկ սիստեմ չճանաչող, հավերժական զարգացման պա-



հանջով հանդես եկող դիալեկտիկական մեթոդը։ Դիալեկտիկան, ինչպես ինքը Հեգելն է ընդգծում, ամեն ինչ դիտում է ծագման, փոփոխման ու զարգացման, հնի մահացման ու նորի առաջացման անվախճան պրոցեսում, որը տեղի է ունենում երևույթներին ներքնապես հատուկ հակադրությունների պայքարի շնորհիվ։ Հեգելի մոտ դիալեկտիկական մեթոդը չի կարող ճանաչել իր իսկ հեղինակի կողմից ստեղծված փիլիսոփայական սիստեմի մշտնջենական գոյությունը և նրանից բխող մետաֆիզիկական ու ռեակցիոն-քաղաքական հետևանքները։

Վ. Ի. Լենինը նշում էր, որ թեև ինքը՝ Հեգելը, որպես Բեռլինի համալսարանի պրոֆեսոր, ծառայում էր պրուսական ինքնակալական պետությանը, հանդես էր գալիս վերջինիս երկրպագուի դերում, այնուամենայնիվ նրա ուսմունքը ռևոլյուցիոն ուսմունք էր։ Համալսարանական իր ունկնդիրներին Հեգելը քարոզում էր պրուսական ինքնակալության բանական և հավերժական լինելը։ Բայց այն ունկնդիրները, ովքեր չէին ցանկանում հաշտվել գոյություն ունեցող պրուսական իրականության հետ, Հեգելի քարոզած դիալեկտիկայից միևնույն ժամանակ այն եզրակացությանն էին հանգում, որ եթե ամեն ինչ փոփոխվում է ու զարգանում, ապա պրուսական ինքնակալությունն էլ ներքին հակասությունների շնորհիվ իր տեղը պիտի զիջի զարգացման ավելի բարձր աստիճանի հասարակարգի։ Ինքը՝ Հեգելը ընդգծում է, որ այն ամենը, ինչ շրջապատում է մեզ, կարելի է դիտել որպես դիալեկտիկայի նմուշ։

Լինելով մատերալիզմի համոզված հակառակորդը, Հեգելը միաժամանակ կրոնի մոլի պաշտպանն էր։ Փիլիսոփայության պատմության իր դասընթացում նա թշնամաբար էր վերաբերվում դեպի հին աշխարհի մատերիալիզմը, որի առնչությամբ Լենինը շեշտում է, թե դա իդեալիստի կողմից մատերիալիզմի խեղաթյուրման և զրպարտման օրինակ է։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մեծ նշանակություն են տվել Հեգելի դիալեկտիկական մեթոդին։ Մարքսը և Էնգելսը հեգելյան դիալեկտիկան համարել են գերմանական կլասիկ փիլիսոփայության մեծագույն նվաճումը։ Նրանք իրենց փիլիսոփայությունը երբեք չեն դիտել որպես «համաշխարհային քաղաքակրթության զարգացման մեծ ճանապարհից հեռու ծագած ինչ-որ կղզիացած, քարացած» գիտություն։ Անցյալի մտքի կոթողներից մարքսիզմի համար առանձնակի դեր է կատարել հեգելյան դիալեկտիկան։ Մարքսի կարևոր ծառայություններից մեկը Էնգելսը համարում է այն, որ նա առաջին անգամ լույս աշխարհ հանեց «մոռացված դիալեկտիկական մեթոդը, նրա կապը հեգելյան դիալեկտիկայի հետ, ինչպես նաև նրա տարբերությունն այս վերջինից, և, միևնույն ժամանակ, «Կապիտալ»-ում տվեց այդ մեթոդի կիրառումը որոշ էմպիրիկ գիտության, քաղաքատնտեսության փաստերի նկատմամբ» («Անտի-Դյուրինգ», էջ 430)։ Զարգացնելով Էնգելսի միտքը, Լենինը նշում է, որ չի կարելի լրիվ հասկանալ Մարքսի «Կապիտալ»-ը, առանց մշակելու և հասկանալու Հեգելի ողջ Տրամաբանությունը։

Ամեն անգամ, երբ Լենինը խոսում է մարքսիստական փիլիսոփայության առաջացման մասին, նա անպայման անդրադառնում է Մարքսի և Էնգելսի վրա Հեգելի գործած ազդեցությանը։ Միևնույն ժամանակ մարքսիզմ-լենինիզմի կլասիկները ընդգծել են մարքսիստական դիալեկտիկայի և հեգելյան դիալեկտիկայի հակադրությունը։ Մարքսիստական դիալեկտիկան մատերիա-

լիստական է, մինչդեռ հեգելյան դիալեկտիկան՝ իդեալիստական: Այդ իսկ պատճառով Մարքսը նշում է. «Իմ դիալեկտիկական մեթոդը ո՛չ միայն արմատապես տարբեր է հեգելյան դիալեկտիկական մեթոդից, այլև նրա ուղղակի հակադրությունն է: Հեգելի համար մտածողության պրոցեսը, որը նա իդեայի անվան տակ դարձնում է նույնիսկ ինքնուրույն սուբյեկտ, դեմիուրգն է [արարիչ, ստեղծող] իրականի, որը լոկ նրա արտաքին արտահայտությունն է: Իսկ ինձ մոտ, ընդհակառակը, իդեալականը ոչ այլ ինչ է, քան մարդկային գլխի մեջ փոխադրված և այնտեղ փոխակերպված նյութականը» («Կապիտալ», հ. I, Հայպետհրատ, 1954, էջ 20):

Դիալեկտիկան ինքնաբավ նշանակություն չունի, այն սերտ կապի մեջ է մարքսիզմի մյուս բաղկացուցիչ մասերի հետ: Դիալեկտիկան մարքսիզմի ռևոլյուցիոն ոգին է: Այդ պատճառով էլ մարքսիզմի կլասիկները ցույց են տվել այն հսկայական նշանակությունը, որ ունեցել է Հեգելի դիալեկտիկան մարքսիզմի համար: Իր կյանքի վերջին շրջանում գրած «Մարտնչող մատերիալիզմի նշանակության մասին» հոդվածում Լենինը առաջարկել է կազմակերպել Հեգելի դիալեկտիկայի սիստեմատիկ ուսումնասիրություն՝ մատերիալիստական տեսակետից, բազմակողմանիորեն ցույց տալ, թե ինչպես էր կործադրում Մարքսը իր իսկ բացահայտած մատերիալիստական դիալեկտիկան: Այդ ունի խոշոր պրակտիկ նշանակություն: «Իր ռացիոնալ կերպարանքով դիալեկտիկան բուրժուազիային ու նրա դոկտրինյոր-իդեոլոգներին լոկ գայրույթ ու սարսափ է ազդում... նա ոչ մի բանի առաջ չի խոնարհվում և իր բուն էությամբ քննադատական է ու ռևոլյուցիոն» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. I, էջ 20):

Այժմ, երբ Սովետական Միությունում և աշխարհի մի շարք երկրներում սոցիալիզմը լավագույն երազից վերածվել է իրականության, և երբ կապիտալիստական երկրներում է՛լ ավելի է սրվում պայքարը սոցիալիզմի համար, կարևորագույն նշանակություն է ստանում մատերիալիստական դիալեկտիկայի ըմբռնումն ու կիրառումը: Մեր օրերում բուրժուական աշխարհում կամ լիովին ժխտում են Հեգելի փիլիսոփայության, այդ թվում և դիալեկտիկայի արժեքը և կամ էլ, բացարձակացնելով նրա իդեալիստական սիստեմը, ամենևին մոռացության են տալիս նրա դիալեկտիկան: Իմպերիալիզմի գաղափարախոսները աշխատում են հեգելյան փիլիսոփայությունը ամեն կերպ հարմարեցնել իմպերիալիստական շրջանների շահերին: Այդ նպատակով նրանք դիմառում են Հեգելի այն դրույթները, որոնք վերաբերում են պատերազմների գովերգմանը, պրուսական պետության կառուցվածքին և այլն:

Անցյալի մտքի կոթողների լավագույն ժառանգորդը սոցիալիստական հասարակարգի մարդիկ են: «Մատերիալիստորեն կարդալով» Հեգելին, մենք պետք է Հեգելի փիլիսոփայությունից վերցնենք այն ամենը, ինչ արժեքավոր է, ինչ նպաստում է մեր հասարակարգի առաջընթացին:

---



# ՀԱԿՈԲ ԿԱՄԱՐԻ

## Ա. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Հակոբ Կամարին պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ էր, գրական-հասարակական գործիչ, իր համոզմունքներով ու աշխարհայացքով՝ աննկուն մարքսիստ-լենինյան, և իբրև այդպիսին էլ նրա անունը իր ժամանակին հայտնի է եղել Անդրկովկասի քաղաքական ոլորտներում, բանվոր դասակարգի և ինտելիգենցիայի լայն շրջաններում:

Հակոբ Կամարին կարճատև կյանք ունեցավ, բայց լուրջ գործ կատարեց: Հասարակական-քաղաքական գործունեության ասպարեզ իջնելով ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին, նա իր ողջ կյանքի ընթացքում բարձր պահեց լենինյան պարտիականության դրոշը, ոչ մի վայրկյան չվառանեց ռևոլյուցիոն դիրքերում, անհաշտ պայքար մղելով մարքսիզմի բոլոր թշնամիների դեմ: Նա մեծ ընդունակությունների տեր տրիբուն էր և հրապարակախոս: Եվ այդ էր, որ միանալով նրա բյուրեղյա մաքրության սկզբունքայնության հետ, դարձնում էր նրան մասսաների սիրելին:

***

Հակոբ Միրզաջանի Բեջանյան-Կամարին ծնվել է 1889 թվականին, Լեռնային Ղարաբաղի Ջրաբերդ գավառի (այժմ Մարտակերտի շրջան) Կուսապատ գյուղի ուսումնարանում, որն ավարտելուց հետո մեկնում է Շուշի և ընդունվում ռեալական դպրոցը:

Երկար չի տևում նրա ուսումը Շուշում: Կյանքի դաժան պայմանները քայքայել էին նրա առողջությունը, և նա ստիպված էր առժամանակ ընդհատել ուսումը: Սակայն ուսումնածարավ պատանին ձգտում է դեպի լույս, դեպի գիտություն: Մի տարի հետո, 1903 թվականին, Կամարին ընդունվում է Գորիի Անդրկովկասյան ուսուցչական սեմինարիան: Տակավին աշակերտական նստարանից նա կլանված ուսումնասիրում է մարքսիստական գրականությունը և հետևում Ռուսաստանում ու Անդրկովկասում ծավալվող ռևոլյուցիոն շարժմանը: Ընթերցասեր Հակոբը կենդանի հետաքրքրությամբ է ուսումնասիրում գեղարվեստական դեմոկրատական գրականությունը, որի էջերում արծարծվում էին ժողովրդին հուզող սոցիալական հարցերը: Մաքսիմ Գորկին, Հակոբ Հակոբյանը և Շուշանիկ Կուրղինյանը դառնում են նրա պաշտելի հեղինակները: Դասընկերների շրջանում Կամարին աչքի էր ընկնում իր գիտելիքներով, մարքսիզմի տեսական հարցերի խոր իմացությամբ, գրական և հռետորական ձիրքով: Այդ բոլորի շնորհիվ նա շատ վաղ հասա-

կից դառնում է մարքսիզմի համոզված պրոպագանդիստ-հրապարակախոս։

Կամարին 17 տարեկան էր, երբ մտավ ՌՍԴԲՊ-ի շարքերը և սկսեց ակտիվ կերպով մասնակցել Անդրկովկասում ծավալվող բանվորական ռևոլյուցիոն շարժումներին ու քաղաքական ցույցերին։ Եվ ահա, 1905 թվականի դեկտեմբերին, երբ ամբողջ Ռուսաստանում և Անդրկովկասում բռնկվել էր ռուսական առաջին ռևոլյուցիայի հրդեհը, Գորի քաղաքի ուսուցչական սեմինարիայի աշակերտական կոմիտեի կազմակերպած քաղաքական մեծ ցույցին եռանդուն մասնակցություն ունեցավ նաև Հակոբ Կամարին։ Խուսափելով ոստիկանական հետապնդումից, նա իրեն նետում է ջրանցքի մեջ։ Այստեղ էլ ստանում է թոքերի բորբոքում և ընկնում անկողին։

Շուտով Կամարին ոտքի է կանգնում, սակայն հիվանդության վարակն առմիշտ բույն է դնում նրա թոքերի մեջ։

Այդ շրջանում Հ. Կամարին արդեն հայտնի էր ցարական հետախուզությանն ու ոստիկանությանը, որոնք նրան առել էին իրենց հատուկ հսկողության տակ։ 1908 թվականին ուսուցչական սեմինարիան ավարտելուց հետո նա, որպես «անբարեհույս», ուսուցչական աշխատանքի չի նշանակվում։ Այստեղից էլ ահա սկսվում է նրա ռևոլյուցիոն «թափառումների» շրջանը։ Բաքուն, Թիֆլիսը, Ելիզավետպոլը (Կիրովաբադ), Շուշին, Զանգեզուրը և այլ բանվորական վայրեր դառնում են Հ. Կամարու համար պարտիական պրոպագանդայի, մանկավարժական, գրական աշխատանքի հարուստ փորձավայրեր, որտեղ նա ձեռք է բերում ռևոլյուցիոն պայքարի մեծ կոփվածություն։

Ռեակցիայի տարիներին, երբ «ռևոլյուցիոն պարտիական ինտելիգենտները» երես էին թեքել ռևոլյուցիայից և փորձում էին բանվոր դասակարգին շեղել իր պայքարի իսկական ուղուց, Հ. Կամարին մինչև վերջ հավատարիմ մնաց բանվորական շարժման և նրա պայքարի մեծ գործին։ Նրա գրած շատ ու շատ քաղաքական հոդվածներն ու պամֆլետները լույս էին տեսնում Թիֆլիսի բոլշևիկյան ընդհատակյա մամուլում։ 1908 թվականից Հ. Կամարին սկսում է աշխատակցել Թիֆլիսում հրատարակվող երկշաբաթյա «Գործ» հանդեսին, որտեղ հոդվածներով հանդես էր գալիս Ստ. Շահումյանը։

Նա մոտիկից ծանոթանում է հայ պրոլետարական պոեզիայի հիմնադիր Հակոբ Հակոբյանին և դառնում նրա գաղափարական զինակիցներից մեկը։ «Դուք իմ ուսուցիչն եք, ես ձգտում եմ գրել Ձեզ նման»,— ասել է նա հայ ականավոր բանաստեղծին։ 1909 թվականին, երբ լույս է տեսնում Հակոբ Հակոբյանի «Նոր առավոտ» պոեմը, Հ. Կամարին առաջիններից մեկն է լինում, որ այդ առթիվ ողջունում և շնորհավորում է իր ուսուցիչ-պոետին։ «Մյուս կողմից նամակներով շնորհավորում էին ինձ կուսակցական ընկերներ Հակոբ Բեջանյան-Կամարին, որն ինձ համարում է իր ուսուցիչը»,— գրել է Հակոբ Հակոբյանն իր նամակներից մեկում։

Հակոբ Հակոբյանի երկերի ռևոլյուցիոն տրամադրության անմիջական ազդեցությունն է զգացվում Հ. Կամարու արձակ ու չափածո շատ երկերում։ Նրա «Մետաղագործը», «Մեքենավարը», «Նոր ուղի», «Ազատության ժամին», «Հացի երգը», «Փողոցի տագնապը» և այլ բանաստեղծությունների մեջ Կամարին պրոլետարիատին կոչ է անում պայքարի դուրս գալ ցարական ինքնակալության դեմ։

1909 թվականին Հ. Կամարուն արդեն տեսնում ենք Զանգեզուրում։ Իր



երկու տարվա մանկավարժական գործունեության ընթացքում նա շատ ու շատ բարեփոխություններ է մտցնում Գորիսի շրջանի Տեղ գյուղի ծխական դպրոցում, որտեղ ուսուցչական աշխատանքի էր նշանակվել։

Ռևոլյուցիոներ Կամարին չէր հանդուրժում դպրոցում տիրող դոգմատիզմը, կրոնի ուսուցումը, սխոլաստիկան, խստավարժությունը։ Եվ նա այս բոլորին հակադրում է հայ մեծ լուսավորիչ Աբովյանի, ռուս մեծ ռևոլյուցիոն դեմոկրատներ՝ Չերնիշևսկու, Գերցենի, Դոբրոլյուբովի մանկավարժական ու գրականագիտական առաջադեմ հայացքները։

«Ռազմական երգեր առաջին անգամ մեզ սովորեցրել է Հակոբ վարժապետը»,— ասում են Կամարու նախկին աշակերտներ Ա. Իսախանյանը, Ն. Շահնազարյանը և Ա. Հակոբյանը, որոնք ներկայումս պատասխանատու աշխատանք են կատարում Գորիսում և Բաքվում։

Կամարին գաղափարական դաստիարակչական անխոնջ աշխատանք էր կատարում աշակերտության մեջ առանձնապես դասերից դուրս։ Երեկոները աշակերտներին հավաքում էր դպրոցում և հետաքրքրական անցքեր պատմում ռևոլյուցիոն-դեմոկրատների, մարքսիստների գործունեությունից։

Հ. Կամարին աչքի ընկնող քաղաքական աշխատանք էր տանում նաև Գորիսի ցարական ժանդարմական գյուղացիության մեջ։ Այդ տարիներին Գորիսի ցարական ժանդարմական վարչությունը գտնվում էր Տեղ գյուղում։ Եվ ահա ոստիկանապետ Նովիցկու համար Կամարին դառնում է «խիստ վտանգավոր» անձնավորություն, աշակերտներին «խելքահան անող խառնակիչ»։ Սկսվում են հետապնդումներն ու հալածանքները։ Տեղ գյուղում Հ. Կամարու համար ստեղծվում է ծանր դրություն և ժանդարմերիայի հետապնդումից խուսափելու համար նա 1911 թվականին հեռանում է Զանգեզուրից։

1911—1912 թթ. Հ. Կամարին աշխատում էր պարտիայի Թիֆլիսի, ապա Բաքվի կազմակերպություններում, իսկ այնուհետև պարտիայի հանձնարարությամբ մեկնում է Ելիզավետպոլ, որտեղ երեք տարի աշխատում է տեղական գիմնազիայում։ Ուսուցչական աշխատանքը Կամարին զուգակցում էր ռևոլյուցիոն գործունեության հետ։ Նրա ղեկավար մասնակցությամբ են անցնում Ելիզավետպոլի գինեգործ և երկաթուղային բանվորների ռևոլյուցիոն ելույթները։ Այդ տարիներին Ելիզավետպոլում ռևոլյուցիոն աշխատանք էին կատարում լենինյան գվարդիայի անվեհեր մարտիկ Ասքանազ Մռավյանը, բոլշևիկյան «Պրավդա»-ի և «Պրոսվեշչենիե» ամսագրի աշխատակից, Մոսկվայի բոլշևիկյան կազմակերպության ակտիվ գործիչ Սուրեն Հովսեփյանը։

Հ. Կամարին պարտիայի հանձնարարությամբ Ելիզավետպոլից մեկնում է Բաքու՝ ցարական զորքերի մեջ ռևոլյուցիոն-քաղաքական աշխատանք տանելու համար։

1915 թվականին Հակոբ Կամարու և Բագրատ Բորյանի նախաձեռնությամբ լույս տեսավ «Նոր ուղի» բոլշևիկյան ամսագրի առաջին համարը։ Ամսագրի հետագա գոյությունն արգելվեց ցարական իշխանությունների կողմից։

1917 թվականի փետրվարյան ռևոլյուցիայի հաղթանակի լուրը կայծակի արագությամբ տարածվեց ռևոլյուցիոն խանդավառություն ապրող Անդրկովկասում։

Հ. Կամարու ռևոլյուցիոն գործունեությունը նոր թափ ստացավ։ Բոլշևիկյան պարտիայի ընդհատակյա մարտերում կոփված բոլշևիկներ Ֆիոլետովի,

Ալիզբեկովի, Եգոր Սևյանի, Սերգո Մարտիկյանի, Սահակ Տեր-Գաբրիելյա-
նի, Գ. Ղազարյանի հետ միասին նա բանվորական մասսաներին բացա-
տրում էր փետրվարյան ռևոլյուցիայի բնույթը, այն սոցիալիստականի վերա-
ծելու լենինյան դրույթը: Կամարին իր ելույթներում մերկացնում էր ժամա-
նակավոր կառավարության սնանկությունը և բանվորներին կոչ էր անում
զինված նոր պայքարի:

1917 թվականի մայիսի մեկից Բաքվում Ստ. Շահումյանի խմբագրու-
թյամբ լույս էր տեսնում բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթը: Ստեփան
Շահումյանն անձամբ ծանոթ էր Հակոբ Կամարուն, գիտեր նրա հրապարա-
կախոսական-ժուռնալիստական կարողությունները և նրան հրավիրեց աշխա-
տելու թերթում որպես պատասխանատու քարտուղար: Ինչպես «Սոցիալ-դե-
մոկրատ»-ում, այնպես էլ Շուշիում, 1917 թվականի օգոստոսից Աշոտ Հով-
հաննիսյանի և Հակոբ Կամարու խմբագրությամբ լույս ընծայվող «Նեցուկ»
բոլշևիկյան ընդհատակյա թերթերում իրար հետևից լույս տեսան Հ. Կամա-
րու մարտական շնչով գրված բանաստեղծություններն ու հոդվածները. «Մենք
երգ կհյուսենք», «Մեծ տոնը», «Փողոցի տագնապը», «Ազատության ժամին»,
«Կարմիր գծեր», «Միջազգային պրոլետարիատը և միջազգային բուրժուա-
զիան», «Բանվորությունը և չքավորական գյուղացիությունը» և այլն:

«Նեցուկ»-ը, որն իր էջերից լայն կերպով տարածում էր բոլշևիզմի գա-
ղափարները, դարձել էր Ղարաբաղի աշխատավորների սիրելին: Թերթը մաս-
սաներին նախապատրաստում էր մասնակցելու սոցիալիստական ռևոլյու-
ցիայի հաղթանակի համար մղվող վճռական մարտերին: 1917 թվականի
օգոստոսի 31-ի համարում «Կարմիր գծեր» վերնագիրը կրող հոդվածում Հ.
Կամարին գրում էր. «Արյունահեղ պատերազմի երեք տարվա լրացման առ-
թիվ Ռուսաստանի Գերագույն պետը սրտագին ողջույն է ուղարկում անգլիա-
կան թագակիր ավազակին՝ պատերազմը հասցնելու մինչև վերջը... Սակայն
հեղափոխական պրոլետարիատը, պարզելով իր կարմիր դրոշը, տապալել է
ցարի միահեծան տիրապետությունը, և նույն դրոշի տակ կուռ կազմակերպ-
ված կմղի ուժեղ պայքար դավադիր երրորդ դասակարգի դեմ... Մեծ հեղա-
փոխությունը մտել է իր նոր շրջանի մեջ...»: Հեղինակը հոդվածն ավարտում
է՝ «Կեցցե՛ նոր հեղափոխությունը» խոսքերով:

«Բանվորությունը և չքավորական գյուղացիությունը» հոդվածում Հ. Կա-
մարին ցույց է տալիս, թե ինչպես ժողովրդի ամենալայն մասսաները կարի-
քի ու զրկանքի են մատնված, իսկ նրանց հաշվին հղփանում ու հարստանում
են խոշոր դրամատերերն ու կալվածատերերը: Հոդվածագիրը բանվորներին
կոչ է անում տապալել բուրժուազիայի տիրապետությունը և վերջ տալ թա-
լանչիական, իմպերիալիստական պատերազմին:

Ղարաբաղի աշխատավորության մեջ քաղաքական-մասսայական աշխա-
տանք էին տանում «Նեցուկ»-ի շուրջը համախմբված Ա. Հովհաննիսյանը,
Ս. Համբարձումյանը, Ս. Դանիելյանը (Սարգիս), Ա. Ղարագյոզյանը, Լևկա-
պոլ Իվան Խաղամովիչը, Հ. Հովհաննիսյանը (Բելուր) և ուրիշներ:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո, 1917 թվականի վեր-
ջերից պարտիայի նոր հանձնարարությամբ Հ. Կամարին աշխատում էր Թիֆ-
լիսում՝ Կովկասյան Երկրային Կոմիտեի օրգան «Բանվորի կռիվ» բոլշևիկյան
թերթում, որի էջերում նա կոչ էր անում պաշտպանել սոցիալիստական
ռևոլյուցիան:



1918 թվականի փետրվարին Հ. Կամարին նշանակվում է բոլշևիկյան
«Բանվոր» թերթի խմբագրության պատասխանատու քարտուղար: Նրա
էջերում հրապարակված մի շարք հոդվածներում բոցաշունչ ռևոլյուցիոները
մերկացնում է Անդրկովկասյան սեյմի կոնտրռևոլյուցիոն էությունը, բուր-
ժուա-նացիոնալիստական պարտիաների՝ դաշնակների, մենշևիկների, մու-
սավաթիստների հակաժողովրդական կործանարար քաղաքականությունը և
կոչ է անում աշխատավորներին անհաշտ պայքար մղել թշնամիների դեմ՝
հանուն սովետական կարգերի վերջնական հաղթանակի:

Ավելի ուշ, 1918 թվականի դեկտեմբերից, նա խմբագրում էր Կովկասյան
երկրային կոմիտեի օրգան «Կոմունա» թերթը (հայերեն լեզվով): Այդ թեր-
թում Կամարին հանդես էր գալիս քաղաքական հոդվածներով՝ ուղղված պա-
տերազմի հանցավորների, հատկապես թուրքական արշավանքները կազմա-
կերպողների դեմ: Նրա այդ շարքի հոդվածներից են՝ «Դասակարգային պա-
տերազմը», «Իմպերիալիզմը և Հոկտեմբերյան ռևոլյուցիան», «Մարտական
նացիոնալիզմը» և այլն:

Բոլշևիկյան ընդհատակյա գործունեության համար մենշևիկների կող-
մից հետապնդվող Կամարին 1919 թվականի գարնանը նորից է մեկնում
Լեռնային Ղարաբաղ, որտեղ Կատար Մամեդովի, Սալման Ալիբեկովի, Աստ-
րախանից վերադարձած Պատվական Վարդանովի և ուրիշների հետ միասին
մեծ աշխատանք է ծավալում հօգուտ սոցիալիստական ռևոլյուցիայի, հանդես
է գալիս զեկուցումներով ու դասախոսություններով՝ Սովետական Ռուսաս-
տանում և Անդրկովկասում տիրող դրության մասին:

1920 թվականի ապրիլի 28-ին Ադրբեջանում հաստատվեց Սովետական
իշխանություն: Հայաստանի աշխատավորությունը մեծ խանդավառությամբ
ընդունեց այդ լուրը:

Այդ շրջանում Հ. Կամարու ռևոլյուցիոն գործունեությունը առանձնակի
թափով ծավալվեց Զանգեզուրում, որտեղ բոլշևիկյան ընդհատակյա կազմա-
կերպությունները անհաշտ պայքար էին սկսել դաշնակցական տիրապետու-
թյան դեմ: Դաշնակ խմբապետների թիկունքում Հ. Կամարին ի մի է հավա-
քում Զանգեզուրի պարտիական կազմակերպությունների ուժերը, ռևոլյուցիոն
շարժման մեջ ընդգրկելով աշխատավոր լայն խավերին: Կամարու շուրջն են
համախմբվում Բաքվի բանվորական շարժումների ակտիվ մասնակիցներ,
ռևոլյուցիոն մարտերում կոփված այնպիսի մարդիկ, ինչպիսիք են՝ Բագրատ
Հարությունյանը, Քրիստափոր Մկրտչյանը, Սուրեն Շադունցը, Ավետիք Գու-
լոյանը (Սեյրին), Մակիչ Մաշուրյանը և շատ ուրիշներ:

Առանձնապես լայն աշխատանք է ծավալվում Խնձորեսկ, Տեղ, Աղյուշեն,
Քարահունջ, Շինուհայր, Բռնակոթ, Շաղաթ, Անգեղակոթ, Ծավ և Կեմանց
գյուղերում, Գորիսի կադրային գումարտակի զորքի մեջ:

Հ. Կամարին ձեռնամուխ է լինում կոմունիստական նոր բջիջներ կազ-
մակերպելու գործին: Չնայած մեծ դժվարություններին կոմունիստ-պրոպա-
գանդիստները հերոսաբար էին կատարում իրենց ռևոլյուցիոն պարտքը, գի-
շերները Սիսիան և Ղափան հասցնելով պարտիական կենտրոնի որոշումներն
ու հրահանգները, ինչպես և կենդանի կապ պահպանելով Շուշվա և Բաքվի
պարտիական օրգանների հետ: Այս գործում ակնհայտ է Ցաշա Մարտիրոս-
յանի, Ավանես Հակոբյանի և Արսեն Քարունցի կատարած աշխատանքը:

Պարտիական կազմակերպությունները անում էին ամեն բան մեղմաց-

*նելու և բարելավելու համար հայկական ու ադրբեջանական ազգաբնակչության միջև ստեղծված այն լարված փոխհարաբերությունները, որոնք ավելի էին բարդացել 1920 թվականի մարտի 21-ից, երբ դաշնակ ավանտյուրիստները ադրբեջանցիների ազգային տոնի—Նովրուզ բայրամի օրը (21 մարտի) կրակ բացեցին Շուշվա ադրբեջանական թաղամասի վրա։ Այդ առիթը բավական էր Շուշվա զորանոցներում տեղավորված մուսավաթիստական զորքին հարձակվելու հայկական թաղամասի վրա, ամբողջապես կրակի մատնելու հրաշագեղ քաղաքը և սրի քաշելու 11 հազար հայերին։*

*Առհասարակ դաշնակցական կառավարությունը կանգ չէր առնում ոչ մի նենգ միջոցի առջև, որպեսզի գժտեցներ հայ և ադրբեջանական ազգաբնակչությանը, անվստահություն սերմաներ հայ ժողովրդի մեջ ռուս մեծ ժողովրդի և հարևան մյուս ժողովուրդների նկատմամբ։*

*1920 թվականի օգոստոսի 31-ին դաշնակցության պառլամենտի անդամ Ե. Միրաքյանցը նախարարների խորհրդին ուղղված իր զեկուցագրերից մեկում գրում էր. «Աշխատել զանազան ճանապարհներով փոխադարձ անվստահություն առաջ բերել ռուս և հայ մեծամասնականների միջև։ Հարձակման նախօրյակին Զանգեզուրում կատարել ահաբեկումներ, պահեստների պայթյուններ և հրդեհներ։ Պետք է թշնամուն ջղայնացնել» (ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆոնդ 34, գործ 3, ինվենտար 1)։*

*Ազգամիջյան գժտություններին վերջ տալու և լարված դրությունը վերացնելու համար հայ կոմունիստների հետ միասին մեծ աշխատանք էին կատարում նաև ադրբեջանցի կոմունիստներ՝ Նազար Հեյդարովը, Օջախկուլի Մուսաևը և շատ ուրիշներ։*

*1920 թվականին Զանգեզուրի կոմիտեն Խնձորեսկ գյուղում հրավիրում է գավառի պարտիական բոլոր կազմակերպությունների ներկայացուցիչների լայն խորհրդակցություն, որտեղ զեկուցումով հանդես է գալիս Հակոբ Կամարին։ Նա հաղորդում է, որ խմբապետ Դրոյի զորքերը նահանջում են 11-րդ Կարմիր Բանակի հարվածների տակ, որ թշնամու զինված ուժերը այլ ճանապարհ չլինելու պատճառով կանցնեն Խնձորեսկի վրայով, ուստի պետք է պատրաստվել զինված ապստամբության, թույլ չտալով նրանց անցնել դեպի Գորիս։*

*Ապստամբությունը ղեկավարելու համար Հ. Կամարու գլխավորությամբ ընտրվեց ռազմահեղափոխական կոմիտե, որի մեջ մտան՝ Հ. Թաթարյանը, Ա. Ղավալյանը, Ա. Ջանունցը, Բ. Ղարագյոզյանը, Ա. Էքտիբարյանը, Դ. Յուզբաշյանը և Մ. Աղաբաբյանը։*

*Ռազմա-հեղափոխական կոմիտեի և անձամբ Կամարու հանձնարարությամբ Մարտիրոս Բարաթյանը պատրաստում է կարմիր դրոշ, որի վրա գրվում է.*

*«Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։*
*«Կեցցե՛ խորհրդային իշխանությունը Զանգեզուրում»։*
*«Կեցցե՛ կարմիր Խնձորեսկը»։*

*Զանգեզուրի աշխատավորությանը վճռական մարտերի կոչելու գործում խոշոր դեր էր կատարում «Կարմիր Զանգեզուրը» բոլշևիկյան ընդհատակյա թերթը, որը խմբագրում էր Հ. Կամարին։*

*Այն օրերին, երբ Դրոյի բանակը դեռ գտնվում էր Ղարաբաղում, Հակոբ*



*Կամարին ձերբակալվում է Զանգեզուրի գեներալ կոմիսար Մելիք Յոլչյանի հրամանով և Տեղ գյուղի վրայով ուղարկվում խմբապետ Դրոյի դատաստանին։*

*Սակայն Զանգեզուրի մի խումբ կոմունիստներ Աբել Ղավալյանի և Անտոն Շահնազարյանի գլխավորությամբ հետապնդում են ուղեկցող պահակախմբին և Տեղ ու Կոռնիձոր գյուղերի միջև ընկած ճանապարհին զինաթափելով պահակներին՝ ազատում են Կամարուն։*

*Հավատարիմ ընկերները Կամարուն փախցնում են Խնձորեսկ, որտեղից նա գյուղացու հագուստով Ա. Ջանունցի օգնությամբ անցնում է Քարահունջ գյուղը և ապա Ալիղուլիշեն։*

*Այդ օրերին Խնձորեսկում դաշնակ ջարդարարների դեմ նոր ապստամբություն էր հասունանում։ Կամարին գտեպնդում է ապստամբության կազմակերպիչներին, խելացի խորհուրդներ տալիս նրանց, թե ինչպես պետք է նախապատրաստել ապստամբությունը, որ նա հաջողությամբ պսակվի, որ հայ ժողովրդի ոխերիմ թշնամիները անակնկալի գան, որ ապստամբները թշնամու ուժերին հարվածեն այնտեղից, որտեղից նա չի սպասում։ Ահա թե ինչ էր գրում նա այդ մասին իր հրահանգչական նամակներից մեկում։*

*«Ընկերներ.*

*Ինձ հասած լուրերից արդեն երևում է, որ դուք վճռական գործի եք անցել։ Նախ իմացեք թշնամու մտադրությունը և նրա արվելիք քայլերը, հետո միայն վճռեցեք, թե ինչպես և երբ կռիվ հայտարարեք հակառակորդներին, քանի որ ամեն ինչ արված է և ես եղած փաստի առաջ եմ կանգնած։ Թող շարունակվի, բայց միայն պետք է մարդիկ ուղարկել իմանալու հակառակորդի շարժման մասին, նրանց պետք է խիստ կերպով հետևել։*

*Հայտնեցեք միևնույն Տեղ գյուղին, որ ամեն ինչ արված է, միայն պետք է ապստամբվեն, որպեսզի մենք ուժեղանանք, այլ ոչ թե զատ-զատ գործենք և տուժենք։*

*Ես այժմ կանցնեի Ձեզ մոտ, բայց կատարյալ թուլացած ընկած եմ մի ծառի տակ։ Հակոբ Կամարի։*

*27 մայիսի, 1920 թ.»։*

*Կարմիր Բանակի առաջխա-*
*Խնձորեսկը, ոգևորված Ղարաբաղի կողմից Կարմիր Բանակի առաջխաղացումով, ապստամբության դրոշը պարզեց այն ժամանակ, երբ Դրոյի բանակն արդեն մտել էր Զանգեզուր։ Կատարված փաստի առաջ կանգնած պարտիայի Զանգեզուրի կոմիտեն հաշվի առնելով ստեղծված իրադրությունը, ղեկավար ցուցումներ է ուղարկում Կյորու, Մաղանջուղ, Տեղ, Ալիղուլիշեն և այլ գյուղերի պարտիական կազմակերպություններին՝ համախմբելու զինված ուժերը։ Կոմիտեի անունից Կամարին գրում էր. «Որովհետև հեղափոխական շարժումը բռնկվել է Խնձորեսկ գյուղում, հրահանգում եմ գյուղի զինված ուժերը առանց ուշացնելու հավաքել և իմացում տալ Խնձորեսկի կոմիտեին։ Հ. Կամարի» (ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆոնդ 25, գործ 1, 7, 8 )։*

*Գիտակցելով Կարմիր Բանակի ուժը, առանց որի վճռական օգնության անհնարին էր հասնել լիակատար հաղթանակի, Հակոբ Կամարին մի այլ նամակով դիմում է նաև Ղարաբաղի կոմունիստներին, Կարմիր Բանակի արագ օգնության մասին։*

*Հ. Կամարու Զանգեզուրի գործունեության վերջին շրջանում, երբ Կարմիր*

Բանակի օգնությամբ ապստամբ ժողովուրդը գավառում հաստատում է սովետական կարգեր, ջախջախելով դաշնակ խմբապետների դիմադրությունը և մահվան գիրկն ուղարկելով նրանց պարագլուխներից պառլամենտի անդամներ Արշակ Շիրինյանին և Վահան Խորենուն, դաշնակցության օրգան «Հառաջ» թերթը ողբալով պառլամենտի երկու անդամի կորուստը, և առավելապես ցավակցելով Նժդեհին, որը ոտքից վիրավորվել էր բոլշևիկների արձակած գնդակից, իր 1920 թվականի սեպտեմբերի 10-ի համարում «Բոլշևիկյան շահատակությունները» վերնագիր կրող հոդվածի մեջ «պահանջադրում է» վրեժ լուծել բոլշևիկներից։ Թերթի այդ համարում տպագրվում են Զանգեզուրի բոլշևիկյան կազմակերպության ակտիվ գործիչներից և աչքի ընկնող ղեկավարներից 22 հոգու անուններ, այդ թվում՝ Հակոբ Բեջանյան (Կամարի), Միշա Մասումյան (Կամարու կնոջ՝ Մանյա Մասումյանի եղբայրը), Արմենակ Ղաբագյոզյան, Մակիչ Մաշուրյան, Լևոն Ափունց, օրիորդ Թամարա, Քրիստափոր Մկրտչյան, օրիորդ Արմենուհի, Արա Մուսայելյան, Մուշեղ Մկրտչյան և ուրիշներ։

Կարմիր Բանակի օգնությամբ հայ աշխատավորությունը 1920 թվականի նոյեմբերի 29-ին տապալեց դաշնակների արյունոտ լուծը և Հայաստանի տերիտորիայի մեծ մասում հաստատեց Սովետական իշխանություն։

Ս. Օրջոնիկիձեի և Ս. Կիրովի գլխավորությամբ գործող 11-րդ բանակի զորամասերը հաղթական երթով 1921 թվականի հուլիսի 13-ին վերջնականապես ազատագրեցին նաև Զանգեզուրը։ Հայ ժողովուրդը ընդմիշտ թոթափեց դաշնակցության ծանր լուծը և դուրս եկավ ազգային վերածնության լայն ճանապարհը։

Ռևոլյուցիայից հետո Հ. Կամարին աշխատանքի է նշանակվում Լեռնային Ղարաբաղի Ջիվանշիրի գավառում, որպես պարտիական գավառային կոմիտեի (հայկական մասի) առաջին քարտուղար։ 1926—1927 թվականներին Ստեփանակերտի պարտիական դպրոցում նա ավանդում է պարտիայի պատմության դասընթացը և մարքսիստական իր խոր գիտելիքները հաղորդում ունկնդիրներին։

Կամարին մինչև իր մահը, որտեղ էլ որ նա նշանակվել է աշխատանքի, ուժ ու եռանդ չի խնայել մասնակցելու նորաստեղծ Սովետական իշխանության ամրապնդման գործին։

Հ. Կամարին մահացավ 1930 թվականի դեկտեմբերի 4-ին, Դիլիջանում, թոքերի ծանր հիվանդությունից։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԻՆՔՆԱԿՐԹՈՒԹՅԱՄԲ ԶԲԱՂՎՈՂՆԵՐԻՆ

# ԻՆՉՊԵՍ ԱՇԽԱՏԵԼ ԳՐՔԻ ՎՐԱ

Մարքսիստական-լենինյան թեորիայի, մեր պարտիայի պատմական փորձի ստեղծագործական յուրացումը կոմունիստները, մեր կադրերը հիմնականում կատարում են ինքնուրույն ուսումնասիրման մեթոդով։ Նրանք պարտիական լուսավորության ցանցի ինչպիսի սեմինարում, խմբակում էլ ընդգրկված լինեն, անպայման պետք է ինքնուրույն աշխատանք կատարեն գրքի վրա։ Ահա թե ինչու կարևորագույն նշանակություն ունի գրքի վրա աշխատանք կատարելու էֆեկտիվ ձևերին ու մեթոդներին տիրապետելը։

Գրքի վրա ինքնուրույն աշխատանք կատարելու ուսանելի օրինակներ են տվել, հատկապես, մարքսիզմի կլասիկները, որոնց փորձից լայնորեն պետք է օգտվել։ Օրինակ, Էնգելսը վկայում է Մարքսի չտեսնված եռանդի ու աշխատասիրության, նրա գիտական բարեխղճության ու պատասխանատվության մասին. բավական է նշել, որ Մարքսը «Կապիտալ»-ի միայն առաջին հատորի վրա լարված աշխատել է 24 տարի, նախապես ուսումնասիրելով ու մշակելով 1500-ից ավելի գրքեր։

Էնգելսը նախքան «Անտի-Դյուրինգ», «Ընտանիքի, մասնավոր սեփականության և պետության ծագումը» և այլ աշխատություններ գրելը նախապես ուսումնասիրել, քննադատորեն մշակել է հսկայական գրականություն։

Վ. Ի. Լենինը «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» հանճարեղ աշխատությունը գրելու համար նախապես ուսումնասիրել է բնական գիտությունները, քննադատաբար մշակել մեծ քանակությամբ գրականություն։ Նույնիսկ ամենաաննպաստ պայմաններում Վ. Ի. Լենինը չէր դադարում գրքի վրա ինտենսիվ աշխատանք կատարելուց։ Հայտնի է, օրինակ, որ նա բանտի ու աքսորի պայմաններում է նախապատրաստել ու գրել «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում» իր հռչակավոր աշխատությունը, նախապես ուսումնասիրելով 583 անուն գիրք և բազմաթիվ վիճակագրական նյութեր։

Բազմազան են գրքի վրա ինքնուրույն աշխատանքի ձևերն ու մեթոդները. ներկա զրույցում ծանոթանանք միայն մի քանիսին։

Պրոպագանդիստի, կոնսուլտանտի հանձնարարած, կամ ինքնուրույն ուսումնասիրողի ընտրած գիրքը ձեռք բերելուց հետո անհրաժեշտ է նախապես ծանոթանալ այդ գրքին։ Նախնական ծանոթությունը կօգնի՝ գաղափար կազմելու ուսումնասիրվող գրքի կառուցվածքի, հիմնական բովանդակության մասին, իմանալու, թե ինչպիսի հարցեր, պրոբլեմներ են քննարկված այնտեղ, գիրքը ինչ բաժիններից, ենթագլուխներից է բաղկացած, դրանք ինչ սիստեմով ու հաջորդությամբ են շարադրված։ Ըստ որում գրքի ներածությունում կամ առաջաբանում հաճախ տրվում են բացատրություններ, խորհուրդներ, թե ինչ հաջորդականությամբ կարդալ գիրքը, ինչ նպատակներ ունի այն և այլն։ Այդ բոլորը օգնում է ինքնուրույն ուսումնասիրողին ակտիվ, ստեղծագործական մոտեցում ունենալ դեպի գիրքը։ Վատ չէր լինի գրքի հետագա ուսումնասիրությունից հետո նորից կարդալ առաջաբանը կամ ներածությունը։ Դա կօգնի ճիշտ ու ամբողջական պատկերացում կազմել տվյալ գրքի հիմնական բովանդակության մասին և յուրօրինակ ամփոփում կատարել. օրինակ, հնարավոր չէ լրջորեն ուսումնասիրել Էնգելսի «Անտի-Դյուրինգ» աշխատությունը, առանց նախապես ծանոթանալու նրա երեք հրատարակությունների առաջաբաններին, «Ներածությանը» և ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստիտուտի կողմից գրքին կցված փոքրիկ առաջաբանին, որտեղ բերված է «Անտի-Դյուրինգ» գրքին տրված Վ. Ի. Լենինի գնահատականը։ Այս գրքում, ասում է Լենինը, «վերլուծված են փիլիսոփայության, բնագիտության և հասարակական գիտությունների բնագավառի մեծագույն հարցերը... Սա զարմանալիորեն բովանդակալից և ուսանելի մի գիրք է»։

Գրքի նախնական ծանոթությունից հետո պետք է սկսել նրա ակտիվ ընթերցումն ու մշակումը։ Գրքի վրա ինքնուրույն աշխատանքի էֆեկտիվության նախապայմաններից մեկը ընթերցանության տեխնիկային տիրապետելն է և կենտրոնացած ուշադրության առկայությունը։ Գիրքն ուսումնասիրելիս միշտ պետք է լինել ուշադիր, ձգտել խոր հասկանալ ու ճշմարտացի վերարտադրել նրա բովանդակությունը, իմաստը և ոչ թե մեխանիկորեն սերտել այն. «Ընթերցել, այդ

դեռ ոչինչ չի նշանակում, ի՞նչ ընթերցել և ինչպե՞ս հասկանալ ընթերցածի իմաստը՝ ահա թե որն է գլխավորը»,— իրավամբ ասել է ականավոր մանկավարժ Կ. Դ. Ուշինսկին:

Գրքի գիտակցական, ստեղծագործական ընթերցանության համար մեթոդական մի շարք պահանջների կատարումը մեծապես կօգնի ավելի լավ ըմբռնելու և վերարտադրելու ուսումնասիրվող նյութը: Այդ պահանջներից են՝ ուշադիր հետևել և խոր ըմբռնել գրքում եղած հասկացությունների, դատողությունների, սահմանումների էությունը, անհրաժեշտության դեպքում դիմելով հանրագիտարաններին, քաղաքական, փիլիսոփայական և այլ բառարաններին, տեղեկատու աղբյուրներին. հատուկ ուշադրություն դարձնել գրքում կամ հոդվածում եղած հիմնական դրույթների, ընդհանրացումների ու եզրակացությունների վրա. հասկանալ և գնահատել այն ապացույցները, փաստարկները, որոնք հաստատում են տվյալ դրույթի կամ եզրակացության ճշտությունը. կարողանալ տարբերել գլխավորը երկրորդականից. քննադատական վերաբերմունք ցուցաբերել ինչպես ամբողջ գրքի, այնպես էլ նրա առանձին բաժինների նկատմամբ և այլն:

Գրքի վրա ինքնուրույն աշխատանքի պրոցեսում պետք է առանձնապես շեշտել տեղեկատու աղբյուրների էֆեկտիվ դերը: Ընթերցողներից ոմանք հանդիպելով անհասկանալի տերմինի կամ հասկացության, հաճախ ուշադրություն չեն դարձնում դրա վրա: Երբեմն էլ տեքստում մյուս բառերի շարակցության մեջ տվյալ անհասկանալի տերմինը «հասկանալի» է թվում, մինչդեռ իրականում պարզ չի լինում նրա իսկական իմաստն ու նշանակությունը: Նման դեպքերում սխալ հասկացած տերմիններն ու հասկացությունները կարող են աղճատել միտքը, խանգարել ճիշտ, ստույգ գիտելիք ստանալուն: Ուստի, անգամ փոքրիկ կասկածի դեպքում պետք է դիմել քաղաքական, փիլիսոփայական բառարաններին, հանրագիտարաններին կամ այլ աղբյուրներին ու ճշտել փաստերը:

Ակտիվ ընթերցանությունը մտավոր բարդ աշխատանք է, այնպես որ գրքի վրա աշխատելու փորձ չունեցողները առաջին իսկ դժվարություններից չպետք է վհատվեն: Նման դեպքերում հարկավոր է կրկնակի ընթերցել գիրքը: Վ. Ի. Լենինը 1919 թվականին Սվերդլովի անվան համալսարանում «Պետության մասին» կարդացած իր հայտնի դասախոսությունների ժամանակ կոմունիստ-ունկնդիրներին նախազգուշացնում էր, որ Մարքսի և Էնգելսի աշխատությունները ընթերցելիս չվախենալ շարադրանքի դժվարությունից: Լենինը նրանց խորհուրդ էր տալիս կրկին ու կրկին անդրադառնալ նույն երկին, նույն պրոբլեմին, տվյալ հարցի վրա խոր մտածել, այն քննարկել տարբեր կողմերից, մինչև հարցի հստակ ու հաստատուն յուրացման հասնելը:

Գրքի վրա ինքնուրույն աշխատանքը միայն այն դեպքում մեծ արժեք կարող է ունենալ, երբ գիտակցաբար է յուրացվում նյութը, և ընթերցողը յուրացրած գիտելիքները կարողանում է գործադրել պրակտիկայում: Ուստի պետք է մտահոգվել ոչ թե գիրքը սոսկ կարդալու, մարքսիստական դրույթները մեխանիկորեն սերտելու, այլ կարդացածը խոր հասկանալու, հիշողության մեջ ամրապնդելու և պրակտիկայում կիրառելու հարցով. «Մեզ պետք չէ սերտել,— ուսուցանում է Վ. Ի. Լենինը,— բայց յուրաքանչյուր սովորողի հիշողությունը պետք է զարգացնել ու կատարելագործել հիմնական փաստերի իմացությամբ, այլապես կոմունիզմը կդառնա դատարկություն, կլինի դատարկ ցուցանակ, կոմունիստը կլինի լոկ մի հասարակ պարծենկոտ, եթե նրա գիտակցության մեջ իր ստացած գիտելիքները չվերամշակվեն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 349): Մ. Ի. Կալինինը իրավացի նշում էր, որ մարքսիզմի կլասիկների երկերի դրույթների անգիր անելը կամ մեխանիկորեն սերտելը քիչ բան կարող է տալ, այդ երկերը պետք է ուսումնասիրել լրջորեն, ակտիվ ձևով, ստեղծագործաբար. «Մեկ բան է՝ մարքսիզմն իմանալ, այլ բան է՝ ամեն օր, ամեն ժամ ամենաբազմազան իրադրության մեջ, այդ մարքսիզմը կիրառել... պետք է կարողանալ ամեն մի հարցի մարքսիստորեն մոտենալ... Թեորիան պետք է ներծծել կյանքով, ամենօրյա աշխատանքը պետք է կապել թեորիայի հետ,— մարքսիստ լինել՝ այդ նշանակում է ստեղծագործող լինել» (Մ. Ի. Կալինին, Երիտասարդության մասին, Երևան, 1951, էջ 46—47—48):

Այս կամ այն գրքի, հոդվածի հիմնական բովանդակությունը խոր հասկանալու, մտապահելու և ստույգ վերարտադրելու համար պետք է անպայման գրառումներ կատարել: Ինքնուրույն ուսումնասիրողներից ոմանք այն կարծիքն ունեն, որ իբր ընթերցածի գրառումը, ասենք, հանձնարարված գրքի կամ հոդվածի կոնսպեկտավորումը յուրացման համար շատ քիչ նշանակություն ունի: Նման ընկերները հաճախ բավարարվում են հանձնարարված գրականությունը մեկ-երկու անգամ մակերեսորեն ընթերցելով, կարծելով, որ նյութն արդեն յուրացրել են: Մինչդեռ իրականում տվյալ նյութը ինքնուրույն վերարտադրել չեն կարողանում:

Մանկավարժական-հոգեբանական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ ուսումնասիրվող նյութի խոր, կայուն յուրացմանն ու



ինքնուրույն վերարտադրմանը մեծապես նպաստում են ընթերցածի մշակումն ու գրառումը: Գրքի վրա ինքնուրույն աշխատանքի նման էֆեկտիվ մեթոդը լայնորեն կիրառում էին մարքսիզմի կլասիկները: Օրինակ, «Վ. Ի. Լենինը ոչ թե պարզապես կարդում էր գրքերը, այլև խոր ու մանրամասնորեն ուսումնասիրում հեղինակներին, գրքերից կատարելով քաղվածքներ ու նշումներ... Գրքի վրա համառ ու սիստեմատիկ աշխատանք կատարելու կարողությունն ու սովորությունը մնաց նրա ողջ կյանքում...» (Д. И. и М. И. Ульяновы «О Ленине», Москва, 1934, стр. 10):

Գիրք կամ հոդված ուսումնասիրողը, նայած թե կոնկրետ ինչ նպատակ է հետապնդում, ըստ այնմ էլ կարդացածի գրառումը նա կարող է կատարել տարբեր ձևերով ու մեթոդներով: Այստեղ կանգ առնենք միայն գրառման այն ձևերի վրա, որոնք գրքի վրա ինքնուրույն աշխատանքի ժամանակ ամենից ավելի են հանդիպում և միջին պատրաստականություն ունեցող ինքնուրույն ուսումնասիրողների համար առավել գործնական նշանակություն ունեն: Դրանցից են՝ կարդացածի պլան կազմելը, գրքի կամ հոդվածի անոտացիան, թեզիսներ կազմելը, մեջբերումներ կատարելը և կոնսպեկտավորելը:

Պլանը կարդացածի բովանդակությունն ամփոփող հիմնական հարցերի թվարկումն է այն կարգով, ինչ կարգով դրանք շարադրված են բնագրում. վերնագրերի ձևով արտահայտված պլանի կետեր-հարցերը պետք է հանդիսանան կարդացածի բովանդակության յուրահատուկ ուղենիշները, նյութի կմախքը: Պլանը կարելի է կազմել և՛ համառոտ, և՛ ընդարձակ: Համառոտ պլանում նշվում են միայն ամենահիմնական կամ գլխավոր հարցերը՝ ենթավերնագրերի ձևով, իսկ ընդարձակ պլանում՝ համառոտ պլանի հարցերը բաժանվում են ավելի մանակի հարցերի: Սեմինար պարապմունքներին զեկուցումներով և ռեֆերատներով հանդես գալու համար պետք է նախապես պլանավորել ամբողջ նյութը՝ ըստ ընդգրկվող հիմնական բաժինների (համառոտ պլան), իսկ այնուհետև դրանք ստորաբաժանել ըստ քննարկվող հարցերի (ընդարձակ պլան): Պլանը մեծապես կօգնի ամբողջ նյութը տրամաբանական կապի մեջ ներկայացնելուն, ռեֆերատը, զեկուցումը որոշակի սիստեմով գրելուն: Բովանդակությամբ հարուստ ու ծավալուն իրենց աշխատությունները գրելու համար մարքսիզմի կլասիկները կազմում էին նախնական պլան և ըստ այդ պլանի էլ շարադրում նյութը: Օրինակ, «Բնության դիալեկտիկա» գրքի համար, որը բաղկացած է 10 գլուխներից, 169 դիտողություններից, ֆրագմենտներից և պլանի 2 ուրվագծերից՝ ընդամենը 181 բաղկացուցիչ մասերից, Էնգելսը կազմել է համառոտ և ընդարձակ պլան:

Գրքի կամ հոդվածի մշակումը կարող է գրավոր արտահայտվել թեզիսների ձևով: Ի տարբերություն պլանի, որտեղ միայն թվարկվում են քննարկվող հարցերը, առանց դրանց բովանդակությունը բացահայտելու, թեզիսներում սեղմ ձևով տրվում են ուսումնասիրվող նյութի հիմնական դրույթները: Թեզիսները կազմելու մեթոդիկան հանգում է հետևյալին: Նախքան թեզիսներ կազմելը պետք է ուսումնասիրվող գիրքը կամ հոդվածը վերլուծել, տարբերակելով՝ ա) տեքստում ի՞նչ է ապացուցվում, այսինքն՝ որոշել հեղինակի հիմնական հաստատումները կամ թեզիսները, բ) ինչպիսի՞ փաստարկներ են բերվում տվյալ թեզիսի ճշտությունը ապացուցելու համար, գ) բերված փաստարկներով ինչպե՞ս են ապացուցվում ու հիմնավորվում հեղինակի ընդունած թեզիսները: Այնուհետև ընթերցած նյութը պետք է բաժանել իմաստային հատվածների, որոնցից ամեն մեկի հիմնական միտքը արտահայտվում է տվյալ թեզիսի մեջ: Ամեն մի թեզիս հանդիսանալով առանձին մի հարցի պատասխան՝ իրենից պետք է ներկայացնի տրամաբանական մի ամբողջություն և իմաստով շաղկապված լինի մյուս թեզիսների հետ: Թեզիսները պետք է ձևակերպել շատ սեղմ, նրանց տալով հաստատուն բնույթ: Յուրաքանչյուր թեզիս ամբողջի տրամաբանական շղթայի մի օղակն է, և բոլոր թեզիսները միասին վերցրած պետք է սպառեն ուսումնասիրվող նյութի բովանդակությունը:

Կարդացածը թեզիսների ձևով գրառելուն պետք է դիմել հատկապես այս կամ այն թեմայի շուրջը սեմինար պարապմունքներում ելույթներ ունենալու, ինչպես և զեկուցումներով և ռեֆերատներով հանդես գալու ժամանակ: Թեզիսներ կազմելը կօգնի ավելի խոր հասկանալու ուսումնասիրվող նյութը, նրա բովանդակությունը: Թեզիսների լավագույն օրինակ են ծառայում Մարքսի հայտնի թեզիսները Ֆոյերբախի մասին, Վ. Ի. Լենինի պատմական Ապրիլյան թեզիսները՝ «Պրոլետարիատի խնդիրների մասին տվյալ ռևոլյուցիայում», «ՍՄԿՊ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի և ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի քառասնամյակի առթիվ» թեզիսները և այլն:

Հաճախ անհրաժեշտ է լինում կազմել անոտացիա, որի մեջ շատ համառոտ ձևով, երբեմն մի քանի տողով, տրվում է ուսումնասիրվող գրքի կամ հոդվածի հիմնական բովանդակությունը, նրա գնահատականը: Շատ օգտակար է օգտվել արդեն կազմված անոտացիաներից,

1955 թվականին Մ. Նղիազարյանի բրիգադան հեկտարից ստացել է 31,4, իսկ Ս. Գրիգորյանի բրիգադն՝ 35,1 ցենտներ բամբակ, կոլտնտեսությունում հեկտարից միջին բերքը կազմել է 28,6 ցենտներ։ Այս ամենը հեղինակին հիմք են տալիս ասելու, որ կոլտնտեսությունն ունի հնարավորություններ 1960 թվականին բամբակենու բերքը հեկտարից հասցնելու 32—35 ցենտների։ Այդ դեպքում 600 հեկտար ցանքից բամբակի համախառն բերքը կկազմի 1900—2100 տոննա՝ նախատեսված 1650 տոննայի դիմաց։

Գրքույկում համեմատաբար թույլ է լուսաբանված անասնաբուծության էկոնոմիկայի, նրա հետագա զարգացման հարցերը։ Առաջ քաշելով մերձֆերմային ցանքաշրջանառությունների ներդրման հարցը, հեղինակը, սակայն, չի տվել դրանց սխեման։ Մշակելով կերի արտադրության հարցերը և հաշվարկելով կոլտնտեսության ունեցած պահանջը, Ռ. Դանիելյանը անհրաժեշտ վերլուծման չի ենթարկել 1960—1961 թթ. կերի բալանսը՝ ըստ տեսակների։ Այսպես, հեղինակի կողմից մեջբերված տվյալներից երևում է, որ 1960 թվականին չի նախատեսվում կանաչ խոտի արտադրությունը՝ ամառային արոտային շրջանում անասուններին կերակրելու համար, որը մեր կարծիքով ճիշտ չէ և ափսոս, որ այդ հանգամանքը վրիպել է հեղինակի ուշադրությունից։

Կոլտնտեսության պլանով նախատեսված է 1960 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնել 2000 լիտրի կամ տալ 43 տոկոս աճ, սակայն 1960 թվականի համար պլանավորվող կերը (42,7 ցենտներ կերային միավոր մսուրային ժամանակաշրջանի համար) կոլտնտեսությանը լիակատար հնարավորություն է տալիս մեկ ֆուրաժային կովից ստանալ ոչ պակաս, քան 2800—3000 լիտր կաթ։ Անդրադառնալով այդ հարցին՝ հեղինակը իրավացիորեն գտնում է, որ հարկավոր է ճշգրտել 1960 թվականի պլանը, խելացիորեն օգտագործել եղած հնարավորությունները։

Ցույց չի տրված խոզի մսի համախառն արտադրանքը 1960 թվականին։ Լավ կլիներ, եթե համապատասխան աղյուսակում հեղինակը ցույց տար նաև մսի արտադրանքի պլանային ցուցանիշները՝ ըստ նրա տեսակների։

Գրքույկն ունի նաև այլ թերություններ։ Հաշվառման թվերի նկատմամբ բավականաչափ քննադատաբար չվերաբերվելու կամ պարզապես հեղինակի ու խմբագրի անուշադրության հետևանքով գրքում բերված թվերի մեջ տեղ են գտել անախորժ վրիպակներ և անճշտություններ, ինչպես և հակասություններ։ Այսպես, 3-րդ էջում կոլտնտեսության ամբողջ ցանքատարածությունը՝ 1637 հեկտարի փոխարեն տրված է 1737 հեկտար, իսկ 79-րդ էջում՝ 1575,7 հեկտար, 53-րդ էջի աղյուսակի առաջին սյունակում բանջարա-բոստանային և գարնանացան այլ կուլտուրաների տարածությունը 365 հեկտարի փոխարեն տրված է 215 հեկտար։ Գրքույկի 4-րդ և 13-րդ էջերում իրարամերժ են 100 հեկտար հողի դիմաց արտադրված մթերքների ցուցանիշները։

Հեղինակի կողմից չի լուսաբանված արտադրանքի մեկ միավորի արտադրության ինքնարժեքի հարցը, որը հնարավորություն կտար որոշելու տնտեսության այս կամ այն ճյուղի շահութաբերությունը։ Աշխատության 99-րդ էջում կարդում ենք. «1950—1951 թթ.՝ անասնապահության վրա տարեկան ծախսվել է 30,2-ից մինչև 32,5 հազար աշխօր, 1954—1955 թթ.՝ յուրաքանչյուր տարի 62,9 հազար աշխօր»։ Ինչպես կարելի է նկատել, ծախսված աշխօրերի քանակը 4—5 տարվա ընթացքում համարյա թե կրկնապատկվել է, իսկ անասունների գլխաքանակի աճման տեմպը չի համապատասխանում աշխօրերի աճմանը։ Այդ ժամանակամիջոցում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակի աճը կազմել է 18 տոկոս, խոզերինը՝ 29 տոկոս, ոչխարներինը՝ 21 տոկոս, թռչուններինը՝ 30 տոկոս և այլն։ Մինչդեռ հեղինակը սխալ է իր պնդման մեջ, երբ թե անասնապահության վրա ծախսվող աշխօրերի աճը համընկնում է բոլոր տեսակի անասունների գլխաքանակի աճին։

Գրքույկում կան լեզվական և ոճական շատ անհարթություններ. շարադրանքը, աղյուսակներն ու գրաֆիկները ընթերցողին հրամցվում են ոչ մատչելի ձևով։

Լավ կլիներ, եթե հեղինակը տար նաև կոլտնտեսության 1956 թվի հիմնական ցուցանիշների անալիզը։

Չնայած եղած թերություններին, գրախոսվող աշխատությունը մեծ հետաքրքրությամբ կկարդան ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները, կոլտնտեսային ակտիվը։ Այն, անշուշտ, կօգնի ավելի լավ հասկանալու կոլտնտեսային արտադրության էկոնոմիկայի հարցերը, ճիշտ կազմակերպելու և պլանավորելու գյուղատնտեսական արտադրությունը։

Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ



## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Վերջերս հայերեն և ռուսերեն լեզուներով լույս տեսավ ընկ. Ս. Հ. Թովմասյանի «Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է» գրքույկը։ Ընթերցող լայն զանգվածների համար գրված այս գրքույկը սպառիչ պարզությամբ գաղափար է տալիս հայ ժողովրդի դարավոր պայքարի ու ազատագրական ոգորումների, նրա կրած անլուր տառապանքների և ազատարաղձ մարտերի վերաբերյալ։ Առաջնորդելով իր ընթերցողին «պատմության դարերի միջով», հեղինակն իր հակիրճ շարադրանքում ըստ արժանվույն գրվատում է պատմության մեջ հայ աշխատավորության խաղացած վճռական դերը, մեծարում է հայ ժողովրդի առաջավոր գործիչներին, հատկապես շեշտելով, որ հայ ժողովրդի ազատագրական դարավոր իղձերը իրականացան միայն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթության շնորհիվ։

Կոնկրետ վերլուծությամբ և արժեքավոր փաստերով հեղինակը իմաստավորել է հայ իրականության մեջ ծայր առած ռևոլյուցիոն շարժման վերելքը և մանավանդ բոլշևիկների լենինյան սերնդի փառավոր գործունեությունը՝ հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։

Ճիշտ է վարվել հեղինակը, երբ անդրադարձել է անցյալ դարի վերջին ծագած հայ հասարակական հոսանքների ձևավորմանն ու նրանց ունեցած սոցիալական դերին։ Հայ ազատագրական մտքի և դասակարգային գոյամարտերի տարբեր դրսևորումների մասին ընթերցողները բավականին հարուստ նյութ կգտնեն գրքույկի առաջին գլխում։

Բրոշյուրի երկրորդ գլխում հեղինակը մատչելի ձևով վերլուծում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթության հետևանքով առաջացած պատմական փոփոխություններն առհասարակ և նրա վճռական ներգործությունը հայ ժողովրդի ճակատագրի վրա՝ առանձնապես։ Հետևողականորեն շարադրելով ռևոլյուցիոն շարժման ուռճացումը մեր երկրում, և Լենինի ու Ռուսաստանի նորաստեղծ Սովետական իշխանության բացառիկ հոգատարությունը հայ ժողովրդին իմպերիալիզմի ճիրաններից փրկելու ուղղությամբ՝ հեղինակն իր ցասումնալից տողերով ու պատմական հարուստ վավերաթղթերով մերկացնում է հակառևոլյուցիոն դաշնակցության և ազգայնական մյուս պարտիաների ազգակործան ու նողկալի դերը մեր ժողովրդի ծանր տարիներին։ «Դաշնակների օրոք Հայաստանը վերածվեց որբերի երկրի, արցունքի երկրի, աղքատության և վայրենի կամայականության երկրի»,— գրում է հեղինակը։ Եվ ահա «Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Կարմիր Բանակի եղբայրական օգնությամբ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին տապալեցին դաշնակների ատելի լուծը և հաստատեցին Սովետական իշխանություն։ Արշալույսը բացվեց հայ ժողովրդի բազմադարյան պատմության մեջ, նոր, պայծառ էջ բացվեց նրա կյանքում։ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման շնորհիվ հայ ժողովուրդն ստացավ ազատություն, խաղաղություն, ազգային վերածնության հնարավորություն, ստեղծեց իր պետականությունը, սկիզբ դրեց հայ ժողովրդի վերամիավորմանն իր հայրենիքում» (էջ 63)։

Բռնելով սոցիալիզմի ուղին, ազգությունների լենինյան եղբայրացման ուղին, հայ ժողովուրդը շատ կարճ ժամանակամիջոցում սկսեց վեր հառնել իբրև փյունիկ և դառնալ Սովետական Մեծ Միության հավասարազոր անդամը։

«Սովետական իշխանության տարիներին արմատական փոփոխություններ տեղի ունեցան Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի մեջ, որոնք հայ ժողովրդի իսկական վերածնունդն ու ծաղկումն են նշանավորում ամենաառաջավոր հասարակարգի՝ սոցիալիզմի գրանիտե հիմքի վրա» (էջ 77)։

Այնուհետև հեղինակը հանգամանորեն վերլուծում է Սովետական իշխանության 37 տարիներին հայ ժողովրդի ձեռք բերած մեծագույն նվաճումները արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի բնագավառներում։

Ընդամենը 15 էջում, օգտագործելով սակավ, բայց խիստ բնորոշ թվական տվյալներ, հեղինակը համոզիչ շարադրանքով վեր է հանում մեր ռեսպուբլիկայի ինդուստրացման երեսունյոթամյա պայծառ պատկերը, արժեքավորում է լենինյան պլանի կենսագործումը Հայաստանում։

Հեղինակը հատուկ ենթագլուխ է նվիրել սոցիալիստական գյուղատնտեսության վերելքին։ Այստեղ, ինչպես և արդյունաբերության զարգացման հարցը լուսաբանելիս, հեղինակը հիշատակել է նաև մեր ռեսպուբլիկայի նորարարներին։

Ընթերցողները ոգևորությամբ կկարդան գրքույկի 103—120 էջերը, ուր խնամքով համակարգված և լուսաբանված են մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հեռանկարները մոտակա տարիներում։ Մեր զարգացման այդ հոյակապ հեռանկարները նոր լիցք կհաղորդեն հայրենասեր զանգվածներին, որոնք ջանք չեն խնայի առաջ մղելու մեր երկրում կոմունիզմի կառուցման գործը։

Գրքույկի հեղինակը բավական թվով էջեր է նվիրել Հայաստանի աշխատավորության նյութական բարգավաճման կարևոր հարցին, ինչպես և հայրենադարձների բարեկեցիկ կյանքին։

«Պանդխտության մեջ երկար տարիների թափառումներից հետո, շատ տառապանքներից ու թշվառություններից հետո տասնյակ հազարավոր հայեր հայրենիք, ազատություն, երջանկություն գտան Սովետական Հայաստանում։ Նրանք ձուլվեցին իրենց եղբայրների ու քույրերի համերաշխ ընտանիքում և մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդների հետ միասին անձնվեր աշխատանքով ակտիվորեն մասնակցում են կոմունիստական շինարարությանը» (էջ 144)։

Գրքույկի չորրորդ գլուխը նվիրված է այն մեծ հաջողություններին, որոնք ձեռք են բերված կուլտուրական շինարարության բազմաբովանդակ բնագավառներում։ Այստեղ ճշմարտացի և անվիճելի փաստերով տալով հայ ժողովրդի կուլտուրական մեծ վերելքը, հեղինակը եզրակացնում է. «Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում երկրի բոլոր ժողովուրդներին դուրս է բերել տնտեսական ու կուլտուրական վերածնության և ծաղկման լայն ճանապարհ։ Երկրի ինդուստրացման բազայի վրա սոցիալիստական տնտեսության ծնունդն ու զարգացումը հանգեցրել են ամբողջ երկրի համար միասնական տնտեսական բազայի ստեղծմանը, բոլոր ժողովուրդների համար կյանքի ընդհանուր պայմանների ստեղծմանը։ ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական հիմունքների միասնությունը պայմանավորում է ոչ միայն ազգային կուլտուրաների սերտ փոխադարձ կապը, այլև նրանց սոցիալիստական բովանդակության ընդհանրությունը։ Այդ հիման վրա, ազգերի լիակատար իրավահավասարության և փաստական հավասարության պայմաններում, տեղի է ունենում Սովետական Միության բոլոր ժողովուրդների ազգային կուլտուրաների, այդ թվում գրականության ու արվեստի զարգացումը։ Յուրաքանչյուր ազգային կուլտուրա ունի սոցիալիստական բովանդակության արտացոլման սպեցիֆիկ ձևերը, որոնք գոյացել են պատմականորեն և կազմում են կուլտուրայի ինքնատիպությունը, նրա ազգային առանձնահատկությունը» (էջ 189—190)։

Հոկտեմբերյան ռևոլյուցիան վերածնեց հայ ժողովրդին, նրան «դարձրեց բոլորովին երիտասարդ, ստեղծագործական խոյանքներով լի երջանիկ կյանքի», կոմունիզմի կերտման անխոնջ մարտիկ։

«Հայ ժողովուրդը պարծենում է այն բանով, որ ինքն առաջիններից մեկը համարձակ ու աներեր ընթացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բացած ճանապարհով, բոլոր ժամանակների մեծագույն մարդու, ամբողջ աշխատավոր մարդկության բարեկամի և ուսուցչի՝ Վ. Ի. Լենինի ճանապարհով և այժմ ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակ ընտանիքում հաստատ քայլում է դեպի առաջ, դեպի կոմունիզմ» (էջ 210)։

Ընկ. Ս. Հ. Թովմասյանի այս գրքույկը, որպես մեր նվաճումների լուրջ ամփոփագիր, հույժ օգտակար կլինի ընթերցող լայն մասսաներին։

---

# ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ

*ՀԱՐՑ*

Խնդրում ենք պարզաբանել հետևյալը.

Պարտիայի անդամը որևէ մեկին երաշխավորել է ՍՄԿՊ շարքերը որպես թեկնածու ընդունվելու. ընդունելության գործը սկզբնական պարտիական կազմակերպության և շրջկոմի կողմից հաստատվել է։ Դրանից 6—7 ամիս հետո տվյալ պարտ թեկնածուն թույլ է տալիս անվայել արարք, որի համար էլ նրան երաշխավորող կոմունիստը դիմում է սկզբնական պարտիական կազմակերպությանը և ետ պահանջում իր երաշխավորությունը։ Այդպիսի դեպքում ինչպե՞ս կարելի է վարվել։

Ս. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ
ՀԿՊ Գորիսի շրջկոմի հրահանգիչ

*ՊԱՏԱՍԽԱՆ*

Պարտիայի շարքերն ընդունվողներին երաշխավորող կոմունիստները ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն պատասխանատվություն են կրում իրենց երաշխավորությունների լավորակության համար։ Նախքան երաշխավորություն տալը կոմունիստը պետք է լավ ուսումնասիրի իր երաշխավորյալին, ոչ պակաս, քան մեկ տարի համատեղ աշխատանքում ճանաչի նրան և եթե հաստատ համոզվի, որ նա արժանի է պարտիայի շարքերն ընդունվելու, նոր երաշխավորություն տա։

Երաշխավորություն տալուց հետո, նախքան տվյալ ընդունելության գործը սկզբնական պարտկազմակերպության ժողովում քննարկելը, կոմունիստը կալող է ետ վերցնել իր երաշխավորությունը, եթե զգում է, որ ինքը սխալվել է և իր երաշխավորյալը արժանի չէ պարտիայի շարքերն ընդունվելու։ Նա այդ առթիվ իր պատճառաբանությունները պետք է ներկայացնի սկզբնական պարտիական կազմակերպությանը ու նրան օգնի ճիշտ որոշում կայացնելու։

Ընդունելությունից հետո թեկնածուի համար արդեն պատասխանատվություն է կրում ոչ միայն երաշխավորողը, այլև պարտիական կազմակերպությունը։ Այստեղից էլ պարզ է, որ ընդունելությունից հետո, երբ արդեն անցել է 6—7 ամիս, երբ պարտիայի անդամության թեկնածուն անվայել արարք է կատարել, նրա հարցով պետք է զբաղվի պարտիական կազմակերպությունը։ Տվյալ դեպքում երաշխավորությունը ետ չի տրվում, և սկզբնական պարտիական կազմակերպությունն ըստ էության քննության է առնում թեկնածուի հարցը։ Այդպիսի հարցին պետք է մոտենալ կոնկրետ կերպով և պարզել, թե թեկնածուն ինչպիսի արարք է կատարել։ Հարցի բազմակողմանի, հոգատար և առավելագույն զգույշ ուսումնասիրությունից հետո պարտիական կազմակերպությունը անվայել արարք կատարող թեկնածուի նկատմամբ կարող է կիրառել պարտիական դաստիարակության ու ներգործության միջոցներ կամ նրան հեռացնել պարտիայի անդամության թեկնածությունից։ Վերջին միջոցին պետք

*է դիմել միայն այն դեպքում, երբ թեկնածուն կատարել է այնպիսի արարք, որը անհամատեղելի է պարտիայի շարքերում գտնվելու հետ։*

*ՀԱՐՑ*

*«Պարտիայի անդամների և թեկնածուների անդամավճարների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգի երրորդ կետի համաձայն այն կոմունիստ կոլտնտեսականները և տրակտորիստները, որոնք աշխօրերի դիմաց ստացած եկամտի հետ միասին ստանում են նաև լրացուցիչ դրամական վճար, բացի 50 կոպեկից, անդամավճար են մուծում նաև իրենց ստացած լրացուցիչ դրամական վճարից։*

*Խնդրում ենք պարզաբանել, թե այդ կարգի ընկերներից գանձվող անդամավճարները ինչպե՞ս գրանցել պարտիական տոմսերում և անդամավճարների մուծման տեղեկագրերում։*

*Գ. ԲԱՂՐԱՄՅԱՆ*
*Սպիտակի ՄՏ կայանի պարտկազմակերպության քարտուղար*

*ՊԱՏԱՍԽԱՆ*

*Կոլտնտեսական կոմունիստները ամենամսյա անդամավճար են մուծում 50 կոպեկի չափով, իսկ այն կոլտնտեսական կոմունիստները (կոլտնտեսությունների նախագահները, նրանց տեղակալները, հաշվապահները, հաշվետարները, կոլտնտեսությունների մյուս աշխատողները և տրակտորիստները), որոնք աշխօրերի դիմաց ստացած եկամտից բացի ստանում են դրամական լրացուցիչ վճար, 50 կոպեկից բացի անդամավճար են մուծում նաև իրենց ստացած դրամական լրացուցիչ վճարից։ Այդ մուծումը կատարվում է «Պարտիայի անդամների ու թեկնածուների անդամավճարների մասին» ՍՄԿՊ Կենտկոմի հրահանգի 1-ին և 2-րդ կետերին համապատասխան և ըստ այնմ էլ գրանցվում պարտիական տոմսում և անդամավճարների մուծման տեղեկագրերում։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



*ՎՖ 01881* — *Պատվեր 431* — *Տիրաժ 6320*
Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ։ — *Ստորագրված է տպագրության 15/II 1958 թ.։*
*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։*